ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1960 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՑՑԸ

Ընդամենը հինգ ամիս էր անցել Սովետական Միության Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի՝ ԱՄՆ կատարած պատմական այցից, և ամենուրեք դեռ շարունակվում էին մեկնաբանությունները այդ այցի մեծագույն հետևանքների շուրջը, երբ Մոսկվայից կրկին օդ բարձրացավ «Իլ—18» ինքնաթիռը, որով Սովետական կառավարության ղեկավարը բարեկամական այցով ուղևորվեց այս անգամ արդեն Հարավ-արևելյան Ասիայի երկրները:

Ինդոնեզիայի Ռեսպուբլիկայի պրեզիդենտ և պրեմիեր-մինիստր, դոկտոր Սուկառնոյի հրավերով ուղևորվելով Ինդոնեզիա, Ն. Ս. Խրուշչովը, Հնդկաստանի և Բիրմայի կառավարությունների հրավերով, կանգ առավ նաև այդ երկրներում: Կտրելով հասարակածը, Ն. Ս. Խրուշչովին տանող ինքնաթիռը ուղղություն վերցրեց դեպի «Երեք հազար կղզիների երկիրը», ինչպես անվանում են Ինդոնեզիան: Այնուհետև Ն. Ս. Խրուշչովը կրկին վերադարձավ Հնդկաստան և այնտեղից մեկնեց Աֆղանստան:

Ն. Ս. Խրուշչովի բարեկամական այցը Ասիայի երկրները, Սովետական Միության մի նոր, խոշոր ներդրում է ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման, ժողովուրդների բարեկամական համագործակցության ապահովման գործում: Այդ ստիպված է խոստովանել նույնիսկ արևմտյան մամուլը: Դեռևս հունվարին, «Նյու-Յորք թայմս» թերթը գրեց, որ «Խրուշչովի որոշումը այցելել Ինդոնեզիա և Հնդկաստան... անկասկած, հանդիսանում է մեծագույն կարևորության քաղաքական իրադարձություն»:

Սովետական կառավարության ղեկավարի՝ Արևելքի մի շարք երկրներ այցելելու լուրը ամենակենդանի արձագանք գտավ ոչ միայն այդ երկրների ժողովուրդների, այլև բոլոր խաղաղասեր մարդկանց սրտերում: Հողագնդի տարբեր մասերում ապրող բարի կամքի միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց քաջ հայտնի է այն անդուլ պայքարը, որ Սովետական Միությունը մղում է հանուն միջազգային լարվածության թուլացման, հանուն ժողովուրդների բարեկամության ամրապնդման և պետությունների խաղաղ գոյակցության ապահովման:

Հայտնի է, որ Ն. Ս. Խրուշչովի՝ աշխարհի «անխոնջ և շատ ճանապարհորդող խոշոր քաղաքական գործչի» այցելությունը կապիտալիստական աշխարհի առաջատար երկիրը՝ ԱՄՆ, նպատակ ուներ ջարդել «սառը պատերազմի» սառույցը ու Ամերիկային երես առ երես ցուցադրել բոլոր ժողովուրդների հետ խաղաղ ապրելու, սոցիալ-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող երկրների միջև գոյակցություն ու համագործակցություն ապահովելու Սովետական Միության անհողդողդ ձգտումն ու կամքը:

Ն. Ս. Խրուշչովի խաղաղասիրական մեծ միսիայի գագաթնակետը հանդիսացավ Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայում Սովետական կառավարության անունից նրա արած առաջարկը՝ ընդհանուր և

լրիվ զինաթափման մասին: Դա մեծագույն պատմական պահ էր ամբողջ
մարդկության կյանքում: Աշխարհի բոլոր ժողովուրդներն անհուն երախտա-
գիտությամբ ընդունեցին Սովետական Միության մեծագույն մարդասիրական
քայլը: Եվ պատահական չէր, որ այդ ժամանակ սկսեցին ասել, որ Ն. Ս.
Խրուշչովի այցը Ա.Մ.Ն՝ «դա ինքը պատմությունն է»:

Եվ ահա Ն. Ս. Խրուշչովը Ասիայում է: Սովետական կառավարության
ղեկավարի բարեկամական այցելությունը Հնդկաստան, Բիրմա, Ինդոնեզիա և
Աֆղանստան տեղի էր ունենում այնպիսի իրադրության պայմաններում, որ
ամբողջ աշխարհում առաջ է բերել ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը՝ Սո-
վետական Զինված Ուժերի նոր խոշոր կրճատում կատարելու մասին:

Անդրադառնալով մեր երկրի ղեկավարի այդ ուղևորությանը, հնդկական
«Նավ ջիվան» թերթը գրում է. «Բոլոր խաղաղասեր քաղաքական գործիչները,
որոնք կաշկանդված չեն նեղ շահերով ու դիվանագիտական մաշված կոնցեպ-
ցիաներով, խոստովանում են, որ Սովետական Միությունը Խրուշչովի ղեկա-
վարությամբ ձգտում է արմատախիլ անել սառը պատերազմը և ամրապնդել
խաղաղությունն ամբողջ աշխարհում»:

Ն. Ս. Խրուշչովի այցելած երկրների բնակչությունն ամենուրեք նրան դի-
մավորում էր մեծագույն ցնծությամբ ու ջերմությամբ, դրանով արժանին մա-
տուցելով խաղաղության ամրապնդման ասպարեզում Սովետական Միության
անդուլ ջանքերին: «Խաղաղություն և բարեկամություն»—այս արքազան խոս-
քերը թևածում էին Սովետական կառավարության ղեկավարի ուղևորության
ամբողջ ընթացքում:

Ասիայի՝ իրենց ազատությունն ու անկախությունը նվաճած երկրների
ժողովուրդները շատ լավ գիտեն, որ սոցիալիզմի մեծ Հայրենիքը՝ Սովետական
Միությունը միշտ եղել է իրենց անկեղծ բարեկամը: Հոկտեմբերյան Սոցիա-
լիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթական համազարկերը հիմքից ցնցեցին
կապիտալիզմի գաղութային սիստեմը: Իմպերիալիստական տերությունների
կողմից ստրկացված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը
հզոր լիցք ստացավ: Նրանց ոգեշնչում էր Ռուսաստանի բանվոր դասակարգի
և աշխատավոր գյուղացիության մեծ օրինակը, որը կարծես ասում էր՝ հե-
տևեցե՛ք մեզ և դուք կկարողանաք հասնել այն ամենին, ինչին հասել ենք
մենք:

Երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի և
ճապոնական միլիտարիզմի ջախջախման շնորհիվ մի շարք գաղութային եր-
կրներ նվաճեցին իրենց ազգային անկախության և սուվերեն պետականու-
թյան իրավունքը: Ինդոնեզիայի, Հնդկաստանի, Բիրմայի ժողովուրդները ևս
փշրելով գաղութային ստրկության շղթաները, ոտք դրին ազատ ու անկախ
զարգացման ուղին:

Սովետական Միությունը, որ ջերմորեն համակրում և բարոյական ակտիվ
աջակցություն է ցույց տալիս իրենց ազատության համար մարտնչող ժողո-
վուրդներին, առաջիններից մեկը ճանաչեց այդ երկրների պետական անկա-
խությունը և եղբայրական անշահախնդիր օգնության ձեռք մեկնեց նրանց:
Սովետական Միության հարաբերությունները Հնդկաստանի, Ինդոնեզիայի,
Բիրմայի և Աֆղանստանի հետ կարող են ծառայել որպես խաղաղ գոյակցու-
թյան և սոցիալ-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների
սերտ համագործակցության վառ օրինակ:



Այն փաստը, որ Սովետական Միությունը կարճ ժամանակամիջոցում
կարողացավ վերջ տալ իր տնտեսական հետամնացությանը և դառնալ ժամա-
նակակից արդյունաբերության, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության,
առաջավոր կուլտուրայի և գիտության հզոր երկիր, շատ ասպարեզներում իրե-
նից ետ թողնելով կապիտալիստական ամենազարգացած պետություններին,
ոգևորում է այն երկրներին, որոնք պայքարում են իրենց ազգային էկոնոմի-
կայի զարգացման համար: Այդ երկրները ձգտում են բազմակողմանի համա-
գործակցության ՍՍՌՄ-ի հետ, ընդօրինակում են նրա փորձը, սիրով ընդու-
նում սովետական մասնագետների օգնությունն ու օժանդակությունը:

Անշեղորեն կենսագործելով բոլոր երկրների ու ժողովուրդների հետ խա-
ղաղ գոյակցության ու ժողովուրդների համագործակցության լենինյան սկզբ-
բունքները, Սովետական Միությունը տարեցտարի ընդլայնում է տնտեսական
ու տեխնիկական անշահախնդիր օգնությունը քույր զարգացած երկրներին:

Միայն 1960 թվականին, Սովետական Միության օգնությամբ աշխարհի
22 երկրներում կկառուցվեն 383 տարբեր արդյունաբերական ու գյուղատնտե-
սական ձեռնարկություններ և օբյեկտներ: Դրանցից 250-ը ստեղծվում են
Ասիայի և Աֆրիկայի երկրներում:

Սովետական Միության տնտեսական և տեխնիկական օգնությամբ Հնդ-
կաստանում կառուցվել և արդեն շարք է մտել Բհիլայիի խոշոր մետալուր-
գիական կոմբինատը, որ իրավամբ համարվում է սովետական և հնդիկ ժո-
ղովուրդների բարեկամության խորհրդանիշը: Սովետական Միության օգնու-
թյամբ Հնդկաստանում կառուցվում են մեքենաշինական, լեռնահանքային, դե-
ղագործական, նավթային և օպտիկական ձեռնարկություններ, էլեկտրակա-
յաններ, ստեղծվում է տեխնոլոգիական ինստիտուտ Բոմբեյում և այլն:

Ինդոնեզիայում սովետական կազմակերպությունների համագործակցու-
թյամբ կառուցվում են մետալուրգիական գործարան, հարյուրավոր կիլոմետ-
րերով ավտոմոբիլային ճանապարհներ, 100 հազար տեղանոց ստադիոն Ջա-
կարտայում, ստեղծվում են բրնձի մշակության մեքենայացված տնտեսու-
թյուններ, տեխնոլոգիական ինստիտուտ Ամբոն քաղաքում և այլն:

Ավելի հին պատմություն ունի ՍՍՌՄ-ի և նրա հարավային հարևան
Աֆղանստանի տնտեսական համագործակցությունը: Սովետական Միության
օգնությամբ արդեն կառուցվել են Աֆղանստանի էկոնոմիկայի համար մեծ
կարևորություն ունեցող 15 տարբեր օբյեկտներ: Կառուցվում է ավտովերա-
նորոգման գործարան, որը կլինի Աֆղանստանի նոր ծնվող արդյունաբերու-
թյան սիրտը: Սովետական Միության օգնությամբ կկառուցվի ոռոգիչ մեծ
ջրանցք, որը հնարավորություն կտա լրացուցիչ ոռոգելու տասնյակ հազար
հեկտար նոր հողեր:

Բիրմայում ևս Սովետական Միության տնտեսական ու տեխնիկական
օգնությամբ ստեղծվում են արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ:

Ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչովը Ինդոնեզիայի պառլամենտի արտակարգ
նիստում ունեցած իր ելույթում, «Մեր օգնությունը, որպես կանոն, ցույց է
տրվում ոչ սպառողական ապրանքների ձևով, ինչպես դա անում են արևմտ-
յան երկրները: Չէ՞ որ միանգամայն ակնհայտ է, որ սպառողական ապրանք-
ները արագ օգտագործվում են, և շուտով հարկ է լինում նորից խնդրել նույն-
պիսի ապրանքներ: Կարծես թե օգնություն ցույց տրվում է, բայց քույր զար-
գացած երկրների էկոնոմիկայի վիճակը չի փոխվում դեպի լավը:

Սովետական Միությունն իր օգնությունն ուղղում է առաջին հերթին այն նպատակին, որ օգնություն ստացող երկրները կարողանան ինչպես հարկն է ստեղծել իրենց արդյունաբերությունը, որն արտադրի ոչ միայն սպառողական ապրանքներ, այլև ամենից առաջ արտադրության միջոցներ, որը կամրապնդի այդ երկրների քաղաքական ու տնտեսական անկախությունը»:

Սովետական Միության անշահախնդիր օգնությունը, նրա իրավահավասար հարաբերությունները տնտեսապես թույլ զարգացած երկրների հետ տագնապ է առաջացնում կապիտալիստական աշխարհում: ԱՄՆ-ում և այլուր լուրջ անհանգստություն են հայտնում, որ իրենց ազատությունն ու անկախությունը նվաճած երկրների ժողովուրդները մերժելով կապիտալիզմի ուղին, կընթանան սոցիալիզմի ուղիով:

Սովետական Միությունը եղել է և մնում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների մեծ ու անշահախնդիր բարեկամը: Դրա մի նոր վկայությունն է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ Մոսկվայում ժողովուրդների բարեկամության համալսարան կազմակերպելու մասին, որի նպատակն է օգնել Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներին ազգային սեփական կադրեր պատրաստելու գործում:

Միջազգային ասպարեզում Սովետական Միությունը եռանդագին պաշտպանում է իրենց անկախությունը նոր նվաճած երկրներին, ամեն կերպ աջակցում է նրանց՝ գաղութատիրությունը երկրագնդի երեսից իսպառ վերացնելուն: Դրա նոր դրսևորումն է սովետա-ինդոնեզական համատեղ հայտարարությունը, որտեղ նշվում է, որ գաղութատիրության բոլոր դրսևորումները պետք է վերացվեն և որ դրանց վերացումը համապատասխանում է ամբողջ աշխարհի խաղաղության շահերին: Այս կապակցությամբ Սովետական Միության կառավարությունը լիովին պաշտպանեց Ինդոնեզիայի Ռեսպուբլիկայի իրավունքն ու պահանջը Արևմտյան Իրիանի նկատմամբ: Երկու կառավարությունները լիովին պաշտպանում են գաղութատիրության դեմ ուղղված պայքարը, որն այժմ առանձնապես ակտիվորեն ծավալվում է աֆրիկյան աշխարհամասում: Երկու կառավարությունները հույս են հայտնում, որ բոլոր ժողովուրդները շուտով լիակատար ազգային անկախություն ձեռք կբերեն, քանի որ ազգային անկախությունը կարևոր ներդրում է ժողովուրդների խաղաղության գործում:

Պաշտպանելով Սովետական Միության առաջարկը ընդհանուր և լրիվ զինաթափման մասին, Հնդկաստանը, Ինդոնեզիան, Աֆղանստանը և Բիրման հանդես են գալիս միջազգային լարվածությունը թուլացնելու, «սառը պատերազմին» լիովին վերջ տալու օգտին: Այս երկրները, որոնց բնակչությունը միասին վերցրած կազմում է ավելի քան 500 միլիոն մարդ, վարում են ռազմական բլոկներին չմասնակցելու, բոլոր երկրների հետ խաղաղ ապրելու ու համագործակցելու քաղաքականություն, որ արժանանում է ամբողջ խաղաղասեր մարդկության ջերմ հավանությանը:

Այդ երկրների կառավարությունների ղեկավարները ևս գտնում են, որ պետական գործիչների անձնական կոնտակտները հսկայական դեր են խաղում միջազգային իրադրությունը բարելավելու, ժողովուրդների միջև փոխըմբռնում և համագործակցություն հաստատելու, ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու գործում: Խոսելով այդ մասին, Ն. Ս. Խրուշչովը նշել է. «Մենք և դուք պատկանում ենք այն մեծ բանակին, որը վճռական պայքար է մղում հանուն խաղաղության և խաղաղ գոյակցության»:



Ն. Ս. Խրուշչովի այցելության շնորհիվ, Հնդկաստանի, Բիրմայի, Ինդոնեզիայի և Աֆղանստանի ժողովուրդները մեկ անգամ ևս համոզվեցին, որ ի դեմս Սովետական Միության իրենք ունեն հուսալի ու հավատարիմ բարեկամ: Հնդկաստանի պառլամենտի երկու պալատների համատեղ նիստում Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառի կապակցությամբ Հնդկաստանի վիցե-պրեզիդենտ Ռադհակրիշնանը «Իզվեստիա»-ի թղթակիցներին հայտարարեց. «Ձեր պրեմիեր-մինիստրը կարողացավ աշխարհում այնպիսի կլիմա ստեղծել, որը տանում է դեպի սպառազինությունների կրճատում, լարվածության թուլացում, ժողովուրդների մերձեցում...»:

Ն. Ս. Խրուշչովն իր այցելած երկրներում ամենուրեք խանդավառ ընդունելության արժանացավ: Միլիոնավոր մարդիկ կոմունիզմ կերտող երկրի ղեկավարին դիմավորում էին ջերմորեն, մեծ ուշադրությամբ լսում խաղաղության ու բարեկամության մասին նրա համոզիչ ու պատկերավոր խոսքերը:

Ասիայի ժողովուրդների համար անսահման ոգեշնչման աղբյուր հանդիսացան Ն. Ս. Խրուշչովի այն խոսքերը, թե «Ինչպես իր շղթաները խորտակած Պրոմեթևս, Ասիայի ժողովուրդները ուղղում են իրենց հզոր ուսերը, ձեռնամուխ լինելով նոր կյանքի կառուցմանը»:

Ասիայի երկրներում Ն. Ս. Խրուշչովի միսիային հիանալի գնահատական տվեց Ինդոնեզիայի պրեզիդենտ Սուկառնոն.— Ինդոնեզական ժողովրդի աչքում, ասաց նա, մեր բարձր հյուրը հանդիսանում է ժողովուրդների բարեկամության խորհրդանիշ, գաղութակալության և իմպերիալիզմի դեմ պայքարի խորհրդանիշ, արդարացի ու երջանիկ հասարակության խորհրդանիշ, անվտանգության, խաղաղության ու բարեկամության պայմաններում ապրելու՝ մարդկության ձգտումների խորհրդանիշ:

Հնդկաստանի, Բիրմայի, Ինդոնեզիայի և Աֆղանստանի ղեկավարների և Ն. Ս. Խրուշչովի միջև՝ անկեղծության, բարեկամության և փոխադարձ ըմբռնման պայմաններում տեղի ունեցած բանակցությունների շնորհիվ այդ երկրների և ՍՍՌՄ-ի միջև կնքված տնտեսական, կուլտուրական և մյուս համաձայնագրերը, սովետա-հնդկական, սովետա-բիրմական, սովետա-աֆղանական համատեղ կոմյունիկեները և սովետա-ինդոնեզական համատեղ հայտարարությունը մեծագույն պատմական նշանակություն ունեցող փաստաթղթեր են, որոնք նշանավորում են նոր էտապ ՍՍՌՄ-ի և այդ պետությունների հարաբերություններում ու ամբողջ միջազգային կյանքում:

Սովետական ժողովուրդը, ամբողջ առաջավոր մարդկությունը վստահ են, որ խաղաղության ու ժողովուրդների բարեկամության մեծ մարտիկ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի բարեկամական այցը Հնդկաստան, Բիրմա, Ինդոնեզիա և Աֆղանստան կծառայի այդ երկրների հետ Սովետական Միության բարեկամական կապերի հետագա ընդլայնմանը և մի նոր, նշանավոր ավանդ կլինի աշխարհում խաղաղության ամրապնդման, բոլոր ժողովուրդների խաղաղ գոյակցության և համագործակցության համար մղվող վեհ պայքարում:

Անսպառ է Վ. Ի. Լենինի «ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՏԵՏՐԵՐ»-ի գաղափարական-տեսական բովանդակությունը: Լենինյան հանճարեղ միտքն ընթանում է այստեղ երեք հիմնական ուղղություններով՝ 1) մատերիալիստական դիալեկտիկայի, 2) փիլիսոփայության ու գիտության պատմության, 3) բնագիտության հարցերի փիլիսոփայական լուսաբանման:

«Փիլիսոփայական տետրեր»-ում Վ. Ի. Լենինը դիալեկտիկան դիտում է որպես գիտություն արտաքին աշխարհի և մարդկային մտածողության զարգացման առավել ընդհանուր օրենքների մասին, որպես աշխարհը գիտականորեն իմանալու և ռևոլյուցիոն կերպով վերափոխելու հատու մի զենք: Բնութագրելով ու մշակելով մատերիալիստական դիալեկտիկայի օրենքները, տարրերը, կատեգորիաները, դրանց կապն ու փոխադարձ անցումները, շեշտելով, որ դիալեկտիկայի միջուկը հակադրությունների միասնության ու պայքարի օրենքն է,— Վ. Ի. Լենինը միաժամանակ ուրվագծում է այդ գիտության հետագա զարգացման ուղենիշները:

«Փիլիսոփայական տետրեր»-ը, որ կազմում են Վ. Ի. Լենինի Երկերի 38-րդ հատորը, արդեն թարգմանված են հայերեն և լույս կտեսնեն այս տարի: Ստորև դրանցից տպագրում ենք մի քանի ֆրագմենտներ [1]։

# ՖՐԱԳՄԵՆՏՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ «ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՏԵՏՐԵՐ»-ԻՑ

★ *Ըստ իս փաստարկի էությունն այս է՝ (1) Կանտի մոտ իմացությունն անջրպետում (բաժանում) է բնությունն ու մարդուն. իրականում այն միացնում է դրանց. (2) Կանտի մոտ ինքնին իրի* «դատարկ աբստրակցիան» *է՝ փոխանակ իրերի մասին մեր ավելի ու ավելի խորացող գիտելիքի կենդանի ընթացքի, շարժման։*

★ *Տրամաբանությունն ուսմունք է ո՛չ թե մտածողության արտաքին ձևերի մասին, այլ «բոլոր նյութական, բնական և հոգևոր իրերի» զարգացման, այսինքն՝ աշխարհի և նրա իմացության ամբողջ կոնկրետ բովանդակության զարգացման օրենքների մասին, այսինքն՝ աշխարհի իմացության* պատմության *հանրագումարն է, միագումարը, հետևությունը։*

★ *Մարդն իր առաջ ունի բնության երևույթների մի* ցանց: *Բնազդային մարդը, վայրենին իրեն չի զատում բնությունից։ Գիտակից մարդը զատում է.*

[1] *Վ. Ի. Լենինի «Փիլիսոփայական տետրեր»-ի մասին տե՛ս մեր ամսագրի № 4, 1959 թ.։*



*կատեգորիաները զատման, այսինքն՝ աշխարհի իմացության աստիճաններ են, ցանցի հանգուցակետեր, որոնք օգնում են իմանալու այդ ցանցը և տիրանալու դրան։*

★ Դիալեկտիկան *ուսմունք է այն մասին, թե* հակադրությունները *ինչպես կարող են լինել և ինչպես են լինում (ինչպես են դառնում)* նույնական,— *ինչ պայմաններում են դրանք լինում նույնական, փոխարկվելով մեկը մյուսին,— ինչու մարդու միտքը չպետք է վերցնի այդ հակադրությունները որպես մեռյալ, ընդարմացած, այլ պետք է վերցնի որպես կենդանի, պայմանական, շարժուն, մեկը մյուսին փոխարկվող հակադրություններ։*

★ *Սրամիտ է և խելո՛ք։ Սովորաբար մեռյալ թվացող հասկացությունները Հեգելը վերլուծում և ցույց է տալիս, որ դրանցում շարժում* կա: *Վերջակա՞ն։ Նշանակում է դեպի վերջը շարժվող: Այս-ի՞նչ — նշանակում է,* այն չէ, *ինչ ուրիշը։ Գոյ ընդհանրապե՞ս — նշանակում է այնպիսի անորոշություն, որ գոյը = է չգոյի։ Հասկացությունների համակողմանի, ունիվերսալ ճկունություն, մի ճկունություն, որ հասնում է հակադրությունների նույնության,— ահա ո՛րն է էությունը։ Այդ ճկունությունը՝ կիրառված սուբյեկտիվորեն = է էկլեկտիկայի և սոփեստության։* Օբյեկտիվորեն *կիրառված ճկունությունը, այսինքն՝ նյութական պրոցեսի բազմակողմանիությունը և նրա միասնությունը արտացոլող ճկունությունը, դիալեկտիկա է, աշխարհի հավիտենական զարգացման ճիշտ արտացոլում։*

★ *Եթե չեմ սխալվում, այստեղ շատ միստիցիզմ և դատարկ պեդանտիզմ կա Հեգելի այս եզրակացություններում, բայց հիմնական իդեան հանճարեղ է՝ ամեն ինչի հետ ամեն ինչի տիեզերական, համակողմանի,* կենդանի *կապը և այդ կապի արտացոլումը—մատերիալիստորեն գլխիվայր դրված Հեգել— մարդու հասկացությունների մեջ, որոնք նույնպես պետք է լինեն տաշված, հղկված, ճկուն, շարժուն, ռելյատիվ, փոխկապակցված, հակադրությունների մեջ միասնական, որպեսզի ընդգրկեն աշխարհը։ Հեգելի և Մարքսի գործի շարունակությունը պետք է լինի՝ մարդկային մտքի, գիտության ու տեխնիկայի պատմության* դիալեկտիկական *մշակումը։*

*Իսկ «զուտ տրամաբանական» մշակո՞ւմը։ Դա համընկնում է։ Դա* պետք է *համընկնի, ինչպես ինդուկցիան ու դեդուկցիան «Կապիտալ»-ի մեջ։*

★ *Գետը և* կաթիլները *այդ գետում։ Յուրաքանչյուր կաթիլի դիրքը, նրա հարաբերությունը մյուսների նկատմամբ, նրա կապը մյուսների հետ. նրա շարժման ուղղությունը. արագությունը. շարժման գիծը՝ ուղիղ, կոր, կլոր և այլն.— վերև, ներքև։ Շարժման գումարը։ Հասկացությունները որպես շարժման առանձին կողմերի, առանձին կաթիլների (= է «իրերի»), առանձին «շիթերի» և այլն* հաշվառումներ: *Ահա մոտավորապես աշխարհի պատկերը ըստ Հեգելի Տրամաբանության,— իհարկե մինուս աստվածիկը և աբսոլյուտը։*

★ Մի կողմից, պետք է խորացնել մատերիայի իմացությունը մինչև սուբստանցիայի իմացություն (մինչև հասկացություն)՝ գտնելու համար երևույթների պատճառները։ Մյուս կողմից, պատճառի իսկական իմացությունը իմացության խորացումն է երևույթների արտաքինից դեպի սուբստանցիան։ Երկու կարգի օրինակներ պետք է որ բացատրեն այդ. 1) բնագիտության պատմությունից և 2) փիլիսոփայության պատմությունից։ Ավելի ճիշտ՝ այստեղ ո՛չ թե «օրինակներ» պետք է լինեն — համեմատությունը ապացույց չէ,— այլ թե՛ մեկ, և թե մյուս պատմության+տեխնիկայի պատմության քվինտէսենցիան։ Հետևապես, պատճառն ու հետևանքը դեպքերի տիեզերական փոխադարձ կախման, (ունիվերսալ) կապի, փոխշղթայակցման լոկ մոմենտներ են, մատերիայի զարգացման շղթայի լոկ օղակներ։

★ Հեգելը Կանտի դեմ ըստ էության միանգամայն իրավացի է։ Մտածողությունը վերընթանալով կոնկրետից դեպի աբստրակտը, չի հեռանում — եթե այն ճիշտ է (լավ նկատի՛ր) (իսկ Կանտը, ինչպես և բոլոր փիլիսոփաները, խոսում է ճիշտ մտածողության մասին) — ճշմարտությունից, այլ մոտենում է դրան։ Մատերիայի, բնության օրենքի աբստրակցիան, արժեքի աբստրակցիան և այլն, մի խոսքով՝ բոլոր գիտական (ճիշտ, լուրջ, ոչ-անհեթեթ) աբստրակցիաները բնությունն ավելի խորն են արտացոլում, ավելի ճիշտ, ավելի լրիվ։ Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողություն և դրանից դեպի պրակտիկան՝ այս է ճշմարտության իմացման, օբյեկտիվ ռեալության իմացման դիալեկտիկական ուղին։ Կանտը նսեմացնում է գիտելիքը, որպեսզի տեղ մաքրի հավատի համար։ Հեգելը մեծարում է գիտելիքը, հավատացնելով, թե գիտելիքը գիտելիք է աստծո մասին։ Մատերիալիստը մեծարում է մատերիայի, բնության գիտելիքը, աղբակույտ նետելով աստծուն և նրան պաշտպանող փիլիսոփայական սրիկաներին։

## ՀԵԳԵԼԻ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԲՈՒՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

★ (Աբստրակտ) հասկացությունների գոյացումը և դրանց գործառնումն իրենց մեջ արդեն ներառնում են աշխարհի օբյեկտիվ կապի օրինաչափության պատկերացում, համոզմունք, գիտակցում։ Պատճառականությունն այդ կապից առանձնացնել անհեթեթություն է։ Հասկացությունների օբյեկտիվությունը, առանձնականի և հատկականի մեջ ընդհանուրի գոյության օբյեկտիվությունը ժխտել անհնար է։ Հետևաբար, Հեգելը հետամտելով հասկացությունների շարժման մեջ օբյեկտիվ աշխարհի շարժման արտացոլման ընթացքը, ավելի խորն է, քան Կանտը և մյուսները։ Ինչպես որ արժեքի պարզ ձևը՝ ուրիշ ապրանքի հետ տվյալ մեկ ապրանքի փոխանակման ակտը իր մեջ չծավալված ձևով արդեն պարունակում է կապիտալիզմի բոլոր գլխավոր հակասությունները,— այդպես էլ՝ արդեն ամենապարզ ընդհանրացումը, հասկացությունների (դատողությունների, մտահանգումների և այլն) առաջին և ամենապարզ գոյացումը նշանակում է աշխարհի ավելի ու ավելի խոր, օբյեկտիվ կապի իմացումը մարդու կողմից։ Այստե՛ղ պետք է որոնել հեգելյան Տրամաբանության բուն իմաստը, նշանակությունն ու դերը։ Սա լա՛վ նկատիր։



Հեգելին պետք է անդրադառնալ կանտականի և նմանների մի որևէ շրջիկ տրամաբանությունը և իմացաբանությունը քայլ առ քայլ տնտղելու համար։

Մարքսը կիրառել է Հեգելի դիալեկտիկան դրա ռացիոնալ ձևով քաղաքատնտեսության նկատմամբ։

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԱՆՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ, ՄԱԽԻԶՄԻ ԵՎ ՆՄԱՆՆԵՐԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

★ Երկու աֆորիզմ։

1. Պլեխանովը քննադատում է կանտականությունը (և ագնոստիցիզմն ընդհանրապես) ավելի շատ վուլգար մատերիալիստական, քան դիալեկտիկա-մատերիալիստական տեսակետից, որքանով որ նա սոսկ շեմքից է մերժում նրանց դատողությունները և ոչ թե ուղղում է (ինչպես Հեգելն էր ուղղում Կանտին) այդ դատողությունները, խորացնելով, ընդհանրացնելով, ընդարձակելով դրանք, ցույց տալով բոլոր և ամեն տեսակ հասկացությունների կապն ու անցումները։

2. Մարքսիստները քննադատում էին (XX դարի սկզբին) կանտականներին և յումիստներին ավելի ֆոյերբախաբար (և բյուխներաբար), քան հեգելաբար։

## ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

★ «Բնությունը, այդ անմիջական ամբողջականությունը, ծավալվում-վերածվում է տրամաբանական իդեայի և ոգու»։ Տրամաբանությունը ուսմունք է իմացության մասին։ Իմացաբանություն է։ Իմացությունը բնության արտացոլումն է մարդու կողմից։ Բայց դա պարզ, անմիջական, ամբողջական արտացոլում չէ, այլ մի շարք աբստրակցիաների, հասկացությունների, օրենքների և այլն ձևավորման, գոյացման պրոցես, որպիսի հասկացությունները, օրենքները և այլն (մտածողությունը, գիտությունը=«տրամաբանական իդեա») պայմանականորեն, մոտավորապես է ընդգրկում հավերժ շարժվող և զարգացող բնության ունիվերսալ օրինաչափությունը։ Այստեղ իրական, օբյեկտիվ երեք անդամ կա՝ 1) բնությունը, 2) մարդու իմացությունը, =մարդու ուղեղը (որպես նույն բնության բարձրագույն արդյունք) և 3) մարդու իմացության մեջ բնության արտացոլման ձևը, այդ ձևն էլ հենց հասկացություններն են, օրենքները, կատեգորիաները և այլն։ Մարդը չի կարող ընդգրկել = արտացոլել = արտապատկերել բնությունն ամբողջությամբ, լրիվ, դրա «անմիջական ամբողջականությունը», նա կարող է միայն անվերջ մոտենալ դրան, ստեղծելով աբստրակցիաներ, հասկացություններ, օրենքներ, աշխարհի գիտական պատկերը և այլն և այլն։

Հեգելը «միայն» աստվածացնում է այդ «տրամաբանական իդեան», օրինաչափությունը, համընդհանրությունը։

## ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱ

★ Արտաքին աշխարհի, բնության օրենքները, որոնք ստորաբաժանվում են մեխանիկականի և քիմիականի (սա շատ կարևոր է), մարդու նպատակահարմար գործունեության հիմքերն են։

Իր պրակտիկ գործունեության մեջ մարդն իր առջև ունի օբյեկտիվ աշխարհը, կախում ունի նրանից, նրանով է որոշում իր գործունեությունը։

Այս կողմից դիտած, մարդու պրակտիկ (նպատակադիր) գործունեության կողմից դիտած աշխարհի (բնության) մեխանիկական (և քիմիական) պատճառականությունը հանդես է գալիս կարծես թե որպես մի ինչ-որ արտաքին բան, կարծես թե մի երկրորդական, քողարկված բան։

Օբյեկտիվ պրոցեսի 2 ձև՝ բնությունը (մեխանիկական և քիմիական) և մարդու նպատակադիր գործունեությունը։ Այդ ձևերի հարաբերակցությունը։ Մարդու նպատակները սկզբում բնության նկատմամբ թվում են օտար («այլ»)։ Մարդու գիտակցությունը, գիտությունը («հասկացությունը») արտացոլում է բնության էությունը, սուբստանցիան, բայց միևնույն ժամանակ բնության նկատմամբ այդ գիտակցությունը արտաքին է (որը նրա հետ համընկնում է ո՛չ անմիջաբար, ո՛չ պարզապես)։

ՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ԵՎ ՔԻՄԻԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ հենց այն պատճառով էլ ծառայում է մարդու նպատակներին, որ դրա բնույթը (էությունը) որոշվում է արտաքին պայմաններով (բնության օրենքներով)։

★ Տրամաբանական հասկացությունները սուբյեկտիվ են, քանի մնում են «աբստրակտ», իրենց աբստրակտ ձևով, բայց միևնույն ժամանակ արտահայտում են նաև ինքնին իրերը։ Բնությունը և՛ կոնկրետ է, և՛ աբստրակտ, և՛ երևույթ է, և՛ էություն, և՛ ակնթարթ է, և՛ հարաբերություն։ Մարդկային հասկացությունները սուբյեկտիվ են իրենց վերացականության, անջատվածության մեջ, բայց օբյեկտիվ են ամբողջականության մեջ, պրոցեսում, հանրագումարի մեջ, իրենց տենդենցի մեջ, ակունքում։

★ Պրակտիկան բարձր է (տեսական) իմացությունից, որովհետև այն ունի ո՛չ միայն համընդհանրության, այլև անմիջական իրականության արժեք։

## ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ՏԱՐՐԵՐԸ

1) Քննարկման օբյեկտիվությունը (ոչ թե օրինակներ, ոչ թե շեղումներ, այլ իրն ինքնին)։

2) Այդ իրի բազմազան հարաբերությունների ամբողջությունը ուրիշ իրերի նկատմամբ։

3) Այդ իրի (համապատասխանորեն երևույթի) զարգացումը, նրա բուն շարժումը, նրա բուն կյանքը։

4) Ներքուստ հակասական տենդենցներ (և կողմեր) այդ իրի մեջ։

5) Իրը (երևույթը և այլն) որպես հակադրությունների գումար և միասնություն։

6) Այդ հակադրությունների, հակասական ձգտումների և այլն պայքարը, համապատասխանորեն ծավալումը։

7) Անալիզի և սինթեզի միացումը, առանձին մասերի մասնատումը և այդ մասերի ամբողջությունը, միագումարումը։



8) Յուրաքանչյուր իրի (երևույթի և այլն) հարաբերությունները ո՛չ միայն բազմազան են, այլև համընդհանուր, ունիվերսալ։ Յուրաքանչյուր իր (երևույթ, պրոցես և այլն) կապված է յուրաքանչյուրի հետ։

9) Ո՛չ միայն հակադրությունների միասնություն, այլև յուրաքանչյուր որոշակիության, որակի, գծի, կողմի, հատկության անցումներ յուրաքանչյուր ուրիշին (իր հակադրությա՞նը)։

10) Նոր կողմերի, հարաբերությունների և այլն բացահայտման անվերջական պրոցես։

11) Մարդու կողմից իրի, երևույթների, պրոցեսների և այլն իմացության խորացման անվերջական պրոցես՝ երևույթներից դեպի էությունը և նվազ խոր էությունից դեպի ավելի խոր էությունը։

12) Գոյակցությունից դեպի պատճառականությունը և կապի ու փոխադարձ կախման մի ձևից դեպի մեկ ուրիշ ավելի խոր, ավելի ընդհանուր ձևը։

13) Ստորին ստադիայի որոշ գծերի, հատկությունների և այլն կրկնությունը բարձր ստադիայում և

14) Վերադարձ իբր թե դեպի հինը (բացասման բացասում).

15) Բովանդակության պայքարը ձևի հետ և հակառակը։ Ձևի դեն նետումը, բովանդակության վերակառուցումը։

16) Քանակի անցումը որակին և ընդհակառակը ((15-ը և 16-ը 9-ի օրինակներ են))։

★ Դիալեկտիկան հակիրճ կարելի է սահմանել որպես ուսմունք հակադրությունների միասնության մասին։ Դրանով ըմբռնված կլինի դիալեկտիկայի միջուկը, բայց դա պահանջում է պարզաբանումներ և զարգացում։

## ԴԻԱԼԵԿՏԻԿԱ ԵՎ ԻՄԱՑԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

★ «Գիտակցության հանդեպ հանդես է գալիս առանց փոխադարձ հարակցության» (առարկան) — ահա անտիդիալեկտիկայի էությունը։ Միայն այստեղ Հեգելը կարծես թե դուրս հանեց իդեալիզմի ավանդային ականջները, — ժամանակն ու տարածությունը (մտապատկերման կապակցությամբ) ներկայացնելով մտածողության նկատմամբ որպես ինչ-որ ցածր բան։ Ասենք, որոշ իմաստով, մտապատկերումը, իհարկե, ցածր է։ Էությունն այն է, որ մտածողությունը պետք է ընդգրկի ամբողջ «մտապատկերումը» իր շարժման մեջ, իսկ դրա համար մտածողությունը պետք է լինի դիալեկտիկական։ Մտապատկերումն ավելի մոտ է ռեալությանը, քան մտածողությո՞ւնը։ Ե՛վ այո՛, և՛ ո՛չ։ Մտապատկերումը չի կարող ընդգրկել շարժումն ամբողջությամբ, օրինակ չի ընդգրկում 1 վայրկյանում 300000 կմ. արագության շարժում, իսկ մտածողությունը ընդգրկում է և պետք է ընդգրկի։ Մտապատկերումից քաղված մտածողությունը նույնպես արտացոլում է ռեալությունը։ Ժամանակը օբյեկտիվ ռեալության գոյաձևն է։ Այստեղ, ժամանակի հասկացության մեջ (և ո՛չ թե մտապատկերման ու մտածողության հարաբերության մեջ) է Հեգելի իդեալիզմը։

Դիալեկտիկայի կողմնակիցը, Հեգելը, չկարողացավ հասկանալ դիալեկտիկական անցումը մատերիայից դ ե պ ի շարժումը, մատերիայից դեպի գիտակցությունը — երկրորդը՝ հատկապես։ Մարքսը ուղղեց միստիկի սխալը (թե՞ թույլ կողմը)։

Դիալեկտիկական է ո՛չ միայն անցումը մատերիայից դեպի գիտակցություն, այլև զգայությունից դեպի մտածողություն և այլն։

★ Ինչո՞վ է տարբերվում դիալեկտիկական անցումը ոչ-դիալեկտիկականից։ Թռիչքով։ Հակասականությամբ։ Աստիճանականության ընդհատմամբ։ Գոյի և չգոյի միասնությամբ (նույնությամբ)։

★ Պլատոնի «իդեաների» քննադատությունը Արիստոտելի կողմից իդեալիզմի, ո ր պ ե ս ա ռ ճ ա ս ա ր ա կ ի դ ե ա լ ի զ մ ի քննադատություն է. քանի որ՝ որտեղից որ վերցվում են հասկացությունները, աբստրակցիաները, հենց այդտեղից էլ գալիս է և՛ «օրենքը», և՛ «անհրաժեշտությունը» և այլն։ Իդեալիստ Հեգելը վախկոտաբար շրջանցել է իդեալիզմի հիմքերի քայքայումը Արիստոտելի կողմից (Պլատոնի իդեաների նրա քննադատության մեջ)։

★ Հասկացությունը (իմացությունը) գոյի մեջ (անմիջական երևույթների մեջ) բացահայտում է էությունը (աստիճանի օրենքը, նույնությունը, տարբերությունը և այլն)— այս է իրոք ամբողջ մարդկային իմացության (ամբողջ գիտության) ը ն դ հ ա ն ո ւ ր ը ն թ ա ց ք ն առհասարակ։ Այս է և՛ բնագիտության, և՛ քաղաքատնտեսության (և պատմության) ընթացքը։ Հեգելի դիալեկտիկան, ա յ ս չ ա փ ո վ, մտքի պատմության ընդհանրացումն է։ Չափազանց շնորհակալ խնդիր է թվում հետամտել սույնը ավելի կոնկրետ, ավելի մանրամասն՝ առանձին գիտությունների պատմության մեջ։ Տրամաբանության մեջ մտքի պատմությունը, ընդհանուր առմամբ և ամբողջությամբ վերցրած, պետք է համընկնի մտածողության օրենքների հետ։

★ Եթե Մարքսը չի թողել (մեծատառ) «Տրամաբանություն», ապա նա թողել է «Կապիտալ»-ի տրամաբանությունը, և հարկ է տվյալ հարցում այս ըստ ամենայնի օգտագործել։ «Կապիտալ»-ի մեջ մեկ գիտության նկատմամբ կիրառված է մատերիալիզմի տրամաբանությունը, դիալեկտիկան և իմացաբանությունը (3 բառ հարկավոր չէ՝ դա միևնույն բանն է), վերցնելով Հեգելի մոտ եղած ողջ արժեքավորը և սույն արժեքավորը շարժելով առաջ։

## ԻԴԵԱԼԻԶՄԻ ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ ԱՐՄԱՏՆԵՐԻ ՄԱՍԻՆ

★ Նախնադարյան իդեալիզմ՝ ընդհանուրը (հասկացությունը, իդեան) առանձին էակ է։ Սա թվում է վայրենի, հրեշավորեն (ավելի ճիշտ՝ մանկամտորեն) անհեթեթ։ Բայց մի՞թե ճիշտ նույն տեսակի չէ (միանգամայն նույն տեսակի է) ժամանակակից իդեալիզմը, Կանտը, Հեգելը, աստծո իդեան։ Սեղաններ, աթոռներ և սեղանի ու աթոռի իդեաները, աշխարհը և աշխարհի իդեան (աստված). իրը և «նումենը», անիմանալի «ինքնին իրը». երկրի ու արևի, առհասարակ բնության կապը — և օրենքը, լոգոսը (բանը)—աստվածը։ Մարդու իմացության երկատումը և իդեալիզմի (= կրոնի) հնարավորությունը տրված են արդեն ԱՌԱՋԻՆ ԷԼԵՄԵՆՏԱՐ աբստրակցիայի մեջ։

«Տուն» ընդհանրապես և առանձին տները։

Մտքի (մարդու) մոտեցումը առանձին իրին, դրա կաղապարի (= հասկացության) հանումը պարզ, անմիջական, հայելակերպ-մեռյալ ակտ չէ, այլ բարդ, երկատված, զիգզագաձև ակտ, որն իր մեջ պարունակում է կյանքից ֆանտազիայի անջատվելու, հեռանալու հնարավորություն. ավելին՝ աբստրակտ հասկացությունը, իդեան ֆանտազիայի (վերջին հաշվով = աստծո) փոխարկվելու (և այն էլ աննկատելի, մարդու կողմից չգիտակցվող փոխարկվելու) հնարավորություն։ Քանի որ ամենահասարակ ընդհանրացման, ամենաէլեմենտար ընդհանուր իդեայի («սեղան» ընդհանրապես) մեջ էլ կա ՖԱՆՏԱԶԻԱՅԻ որոշ պատառիկ։ (Ընդհակառակը՝ անմտություն է ժխտել ֆանտազիայի դերն անգամ ամենաճշգրիտ գիտության մեջ. հմմտ. Պիսարև՝ օգտակար երազանքի, որպես աշխատանքի խթանի և դատարկ երազկոտության մասին)։

★ Ուշագրավ է, որ «բացարձակ իդեային» վերաբերող ամբողջ գլուխը մի բառ անգամ չի ասում աստծո մասին, (մի անգամ հազիվ պատահաբար թռել է «աստվածային» «հասկացություն» արտահայտությունը), և բացի դրանից—սա լա՛վ նկատիր—համարյա թե չի պարունակում սպեցիֆիկ կերպով իդեալիզմ, այլ իր գլխավոր առարկան ունի դ ի ա լ ե կ տ ի կ ա կ ա ն մ ե թ ո դ ը։ Հեգելի Տրամաբանության հանրագումարն ու ամփոփումը, վերջին խոսքն ու էությունը դ ի ա լ ե կ տ ի կ ա կ ա ն մ ե թ ո դ ն է — սա խիստ ուշագրավ է։ Մի բան ևս՝ Հեգելի այս ա մ ե ն ա ի դ ե ա լ ի ս տ ա կ ա ն երկում ա մ ե ն ի ց ք ի չ իդեալիզմ կա, ա մ ե ն ի ց շ ա տ մատերիալիզմ։ «Հակասական» է, բայց փաստ է։

★ Անհեթեթություն, բացարձակի մասին։

Ես առհասարակ աշխատում եմ Հեգելին կարդալ մատերիալիստորեն. Հեգելը գլխիվայր շուռ տված մատերիալիզմ է (ըստ Էնգելսի)— այսինքն ես մեծ մասամբ դուրս եմ նետում աստվածիկը, բացարձակը, մաքուր իդեան և այլն։

★ Ուշագրավ է՝ «իդեային» որպես հասկացության համընկմանը օբյեկտի հետ, իդեային որպես ճ շ մ ա ր տ ո ւ թ յ ա ն Հեգելը մոտենում է մարդու պրակտիկ (նպատակահարմար) գործունեության միջոցով։ Ընդհուպ մոտեցում այն բանին, որ իր պրակտիկայով է մարդն ապացուցում իր իդեաների, հասկացությունների, գիտելիքների, գիտության օբյեկտիվ ճշտությունը։

# ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ*

## Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ

*Քառասուն տարի սրանից առաջ, 1894 թվականին Լենինը անլեգալ կերպով լույս ընծայեց «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները»...» գրքույկը։ Այդ գրքույկում նա գրում էր այն մասին, որ ռուսական պրոլետարիատը մյուս երկրների պրոլետարիատի հետ միասին բացահայտ քաղաքական պայքարի միջոցով կընթանա կոմունիստական ռևոլյուցիայի ուղիով և իր հետևից կտանի բոլոր աշխատավորներին...*

*Լենինի այդ գրքույկն այն ժամանակ մեզ բոլորիս համար հսկայական նշանակություն ունեցավ։ Սակայն այդ հարցը, կոմունիստական ռևոլյուցիայի հարցը այն ժամանակ մեզ համար այնքան հեռավոր մի բան էր, որի վրա չէր կենտրոնացված մեր ուշադրությունը։ Այն ժամանակ Ռուսաստանի բանվոր դասակարգը դեռևս չափազանց թույլ էր. այն պահին նոր էր միայն սկսվել բանվորական շարժումը. ռևոլյուցիոն մարքսիստների միայն առանձին փոքրիկ խմբակներ կային, որ հասկանում էին, թե հարկավոր է դասակարգային պայքար։ Այն ժամանակ ուշադրության կենտրոնում էր այն հարցը, թե ինչպես կազմակերպել այդ դասակարգային պայքարի առաջին քայլերը, ինչպես բարձրացնել բանվորների գիտակցականությունը, իսկ այն ժամանակ դեռևս քչերն էին մտածում կոմունիստական ռևոլյուցիայի մասին։ Բայց Լենինը, այն վաղ պահից սկսած, անընդհատ նկատի ուներ այդ նպատակը։*

*1905 թվականն է։ Դուք գիտեք, որ մեկ տասնամյակի ընթացքում, որ անցել էր «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները»...» գրքույկի երևան գալու պահից, մինչև 1905 թվականը բանվորական շարժումը մեր երկրում հսկայական հաջողություններ ունեցավ։ Արդեն պայքարում էին լայն մասսաները։ Դուք գիտեք, որ բոլշևիկները ուժգին կերպով պատրաստվում էին 1905 թվականի ռևոլյուցիային, ձգտում էին զինել մասսաներին, բայց այն ժամանակ ուժերը դեռևս շատ աննշան էին, և 1905 թվականի ռևոլյուցիան պարտություն կրեց։ Սակայն այդ ռևոլյուցիայի փորձը հսկայական դեր խաղաց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման գործում։*

*Երբ հասան ռեակցիայի տարիները, և սկսվեց ռևոլյուցիոններների նկատմամբ կառավարության դատաստանը, մենշևիկներն սկսեցին բոլշևիկներին մեղադրել այն բանի համար, որ նրանք սաստիկ համարձակ էին, որ նրանք պայքարում էին զենքը ձեռքներին։ Լենինը, որին ամենուրեք փնտրում էին և որը հարկադրված եղավ մեկնել արտասահման, բոլորովին էլ չհուսալքվեց, որ պարտություն էինք կրել. նա այդ ժամանակ մտածում էր գալիք կոմունիստական ռևոլյուցիայի մասին։ Այդ մասին շատ լավ հիշողություններ ունի ընկ. Ադորատսկին, որն աշխատում է Լենինի ինստիտուտում։ Նա վերհիշում է Լենինի խոսքերն այն մասին, թե ինչե՞ր կլինեն, երբ բոլշևիկների պարտիան, երբ բանվորներն իշխանությունը վերցնեն։ Էմիգրացիայի տարիները Լենինը օգտագործեց ուսումնասիրելու համար 1905 թվականի ռևոլյուցիայի ամբողջ փորձը, ուսումնասիրելու այն բոլոր ուժերը, որոնք մասնակցություն էին ունեցել այդ ռևոլյուցիայում, պարզելու, թե ինչու ռևոլյուցիան պարտություն կրեց։ Դրա հետ միաժամանակ նա մանրակրկիտ կերպով ուսումնասիրում էր Փարիզյան Կոմունայի փորձը, անցած բոլոր ռևոլյուցիաների փորձը, այն, ինչ ասել են Մարքսը, Էնգելսը ռևոլյուցիայի մասին...*

---

* *Արտատպում ենք Ն. Կ. Կրուպսկայայի՝ «Известия» թերթի ս. թ. հունվարի 20-ի համարում զետեղված ճառը, որը նա արտասանել է 1934 թվականի նոյեմբերի 11-ին, Արևելքի աշխատավորների Կոմունիստական համալսարանի ուսանողների և դասախոսների ժողովում։ Ճառի վերնագիրն ու ենթավերնագրերը պատկանում են թերթի խմբագրությանը։ Ճառի տեքստը տպագրվում է աննշան հապավումներով։*



### ՇՎԵՅՑԱՐԻԱՅՈՒՄ

*Այժմ ես անցնում եմ հիշողություններին։ 1917 թվականի հունվարին Ցյուրիխում (Շվեյցարիա) զանազան երկրներից կային մեծ թվով ռևոլյուցիոն երիտասարդներ, որոնք հասկանում էին, որ տեղի ունեցող պատերազմը կողոպտչական, իմպերիալիստական պատերազմ է։ Պատերազմի հենց սկզբից Լենինը ջանում էր հնարավորին չափ ցայտուն կերպով բացահայտել պատերազմի այդ կողոպտչական բնույթը, ցույց տալ, թե ինչի հետևանք է պատերազմը։ Նա մի գրքույկ գրեց իմպերիալիզմի մասին, հավաքեց տվյալներ, որոնք առանձնահատուկ կերպով բացահայտում էին կապիտալիստական երկրների գաղութային քաղաքականության էությունը, և պատերազմը բռնկվելու պահից սկսած նա մշտապես ասում էր այդ իմպերիալիստական պատերազմի դեմ պայքարի դրոշ բարձրացնելու անհրաժեշտության մասին։ Ես հիշում եմ, թե Շվեյցարիայում ինչպես լինք մենք ապրում պատերազմի բռնկումից հետո։ Ապրում էինք որպես էմիգրանտներ։ Սենյակ էինք վարձել մի կոշկակարի տանը. դա մի փոքրիկ սենյակ էր, որի լուսամուտները նայում էին դեպի բակը, որին նայում էին նաև երշիկանոցի պատուհանները։ Բոլորովին հնարավոր չէր բանալ լուսամուտները։ Ես վախենում էի, թե Իլյիչը կհիվանդանա։ Տանտերերը շատ լավ մարդիկ էին։ Նրանք սենյակներ էին վարձով տալիս։ Նրանց բնակարանում տարբեր ազգի մարդիկ էին ապրում։ Այնտեղ ապրում էին և՛ գերմանացիներ, և՛ ֆրանսիացիներ, ապրում էինք նաև մենք՝ ռուսներս։ Իհարկե, բնակարանն էլ աղքատիկ էր, մենք էլ աղքատիկ էինք ապրում։ Հարկ էր լինում եփել-թափել։ Բոլորս հավաքվում էինք խոհանոցում։ Այնտեղ գազի պլիտա կար, և այդ գազի պլիտայի շուրջը մենք՝ կանայքս, սովորաբար քննարկում էինք բոլոր միջազգային հարցերը։ Տանտիրուհին՝ կոշկակարի կինը, սաստիկ զայրույթով էր նայում այդ պատերազմի վրա և մի անգամ ասաց.*

*— Հարկավոր է, որպեսզի զինվորները զենքը դարձնեն իրենց կառավարությունների դեմ։*

*Ես այդ մասին պատմեցի Վլադիմիր Իլյիչին, և այդ նրան այնքան դուր եկավ, որ դրանից հետո նա ոչ մի կերպ չէր ուզում թողնել այդ բնակարանը։ Ամբողջ ժամանակ, քանի դեռ մենք ապրում էինք Շվեյցարիայում, Լենինը հարկադրված էր անչափ շատ աշխատել... Հարկ էր լինում խոսել այլ երկրներից*

եկած ընկերների հետ և ապացուցել, որ հասել է այն մոմենտը, երբ պրոլետարիատը պետք է ոտքի ելնի։ Եվ ահա Ցյուրիխում, որտեղ մենք ապրում էինք, 1917 թվականի հունվարին կայացավ երիտասարդության, տարբեր երկրների երիտասարդության ժողով։ Հանդես գալով այդ ժողովում, Լենինն ասում էր.— Այժմ ժամանակն այնպիսին է, որ մոտեցել է այն պահը, երբ մի ամբողջ շարք երկրներում սոցիալիստական ռևոլյուցիա է լինելու, երբ պրոլետարիատն իր ձեռքն է վերցնելու իշխանությունը, բայց դժվար է մոմենտը որոշել։ Եվ փոքր-ինչ թախծոտ ավելացրեց.

— Չգիտեմ, մենք, ծերունիներս, կապրե՞նք արդյոք մինչև այդ ժամանակը»

## ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱ Է

Դա հունվարին էր, իսկ փետրվարին բռնկվեց Փետրվարյան ռևոլյուցիան։ Հիշում եմ, թե մենք ինչպես իմացանք Փետրվարյան ռևոլյուցիայի մասին։ Նոր էինք ճաշել։ Ես ամանները էի լվանում։ Հետո մենք պատրաստվում էինք գրադարան գնալ։ Հանկարծ ներս մտավ մի լեհ ընկեր և ասաց.

— Ի՞նչ եք նստել, չէ որ Ռուսաստանում ռևոլյո՜ւցիա է։

Մենք, իհարկե, մոռացանք որևէ բանի մասին մտածել և վազեցինք դեպի Ցյուրիխյան լճափը, որտեղ ծածկի տակ փակցվում էին ամեն տեսակի լրագրեր։ Կարդում ենք, իրոք ռևոլյուցիա է։ Բայց, իհարկե, այդ դեռևս բուրժուական ռևոլյուցիա էր։ Ցարին տապալել էին, իսկ կալվածատերերի և կապիտալիստների իշխանությունը դեռևս մնում էր։ Եվ ահա Վլադիմիր Իլյիչը այն ժամանակ գրեց ընկերներին.

— Այժմ անհրաժեշտ է ավելի խոր թափանցել մասսաների մեջ, արթնացնել մասսաների գիտակցությունը, մատնացույց անել, որ չի կարելի բավարարվել ձեռք բերածով, այլ պետք է շարունակել պայքարը։

Բավական ժամանակ անցավ, մինչև որ մեզ հաջողվեց շվեյցարացի ընկերների օգնությամբ իրավունք ստանալ Գերմանիայի վրայով անցնելու համար։ Այն մասին, թե Ռուսաստանում ինչ է կատարվում, մենք, իհարկե, գիտեինք հեռագրերից, բայց Վլադիմիր Իլյիչը և մենք բոլորս դեռ կոնկրետ չէինք պատկերացնում Ռուսաստանում տեղի ունեցած հեղաշրջման բոլոր մանրամասնությունները։ Ժամանակավոր կառավարության կողքին գոյություն ուներ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետը։ Ճիշտ է, բանվորների և զինվորների դեպուտատների այդ Սովետը դեռևս չէր կանգնել բոլշևիկյան տեսակետի վրա, իրեն իշխանություն չէր համարում, բայց այնուհանդերձ պարզ էր, թե նա ինչպես էր ներգործում մասսաների վրա, թե նա ինչպիսի ուժ կարող էր դառնալ։ Վիթխարի ռևոլյուցիոն վերելք տեղի ուներ։ Եվ ահա, երբ մենք ժամանեցինք, ընկերները դիմավորեցին մեզ Բելոոստրովում... Վլադիմիր Իլյիչը, նրանց հետ խոսելով, հարցնում էր.

— Իսկ դուք ի՞նչ եք կարծում, մեզ կձերբակալեն, թե՞ ոչ։

Նրան ոչ ոք չէր պատասխանում, բոլորը միայն ժպտում էին։ Եվ ահա, երբ Իլյիչը հասավ Պիտեր, տեսավ, որ ժամանածներին դիմավորում են ռևոլյուցիոն զորքերը, պատվո պահակ է կանգնած, ամբողջ հրապարակում հոծ բազմություն է հավաքվել։ Այդ րոպեին Իլյիչն զգաց, որ սոցիալական ռևո-



լյուցիայի մասին իր բաղձալի երազանքը մոտ է իրականացման։ Նրան բարձրացրին բեռնատար ավտոմեքենայի վրա, և նա, դիմելով մասսաներին, ասում էր.— Կեցցե՛ սոցիալիստական ռևոլյուցիան։

## ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Այդ իսկ ժամանակից էլ սկսվեց Հոկտեմբերի նախապատրաստությունը։ Լենինը ուշի-ուշով զննում էր, թե ինչ է կատարվում շրջապատում։ Նա ականջ էր դնում մասսաների ասածներին։ Իսկ չէ՞ որ դա այնպիսի ժամանակ էր, երբ թե՛ ցերեկը, թե՛ գիշերը փողոցներում քննարկվում էին բոլոր հարցերը՝ պատերազմի հարցը, ռևոլյուցիայի հարցը։ Մենք տեղավորվեցինք մերոնց՝ Վլադիմիր Իլյիչի ավագ քրոջ տանը։ Ահա գիշերով բաց ես անում լուսամուտը, տեսնում ես՝ դիմացը նստած մի զինվոր, իսկ զինվորի շուրջը հավաքվել են ինչ-որ բանվորներ, այդ տան աղախինները, սպասավորները, ինչ-որ պատանիներ և բոլորն էլ կրքոտ քննարկում են այն հարցը, թե ինչ են Սովետները, թե ինչ է լինելու, շարունակելո՞ւ է արդյոք ռևոլյուցիան ծավալվել, թե ոչ, ի՞նչ է լինելու պատերազմի հետ, պե՞տք է արդյոք այն շարունակել և այլն։ Մասսաներն ապրում էին այդ ամենով։ Դա մասսաների ռևոլյուցիոն վերելքի մոմենտն էր։ Բայց այն ժամանակ Լենինը նշում էր, թե մասսաները դեռ չեն հասկանում, որ իշխանությունը պետք է գրավել։ Եվ երբ երեք շաբաթ հետո գումարվեց պարտիական կոնֆերենցիան, Լենինն ասում էր, թե այժմ գլխավոր խնդիրը բացատրական աշխատանք տանելն է։ Նա ասում էր, որ պետք է հնարավորին չափ ավելի լայնորեն օգտագործել մասսաների այդ ռևոլյուցիոն խանդավառությունը, որպեսզի մասսաներին հասկանալի լինի, թե ինչի համար են պայքարում բոլշևիկները, որպեսզի հասկանալի դառնա, որ բոլշևիկները պայքարում են խաղաղության համար։ Այդ լոզունգը՝ պայքար խաղաղության համար, այնպիսի լոզունգ էր, որը համախմբում էր բոլոր աշխատավորներին։ Այդ լոզունգը թափանցեց նաև գյուղ, քանի որ զինվորները, գլխավորապես, գյուղից էին։ Եվ ահա այդ զինվորները, որոնցով լի էին Պետրոգրադի բոլոր փողոցները, ջերմեռանդ կերպով պահանջում էին, որպեսզի խաղաղություն լինի։

Սակայն, ասում էր Լենինը, պետք է բացատրել, թե մենք ինչպես կկարողանանք այդ բանը կատարել, ինչպես ենք մենք ուզում դրան հասնել։ Երբ մասսաների մեջ պրոպագանդա ես մղում,—գրում էր Լենինը այն ժամանակ,—պետք է մշտապես շատ կոնկրետ լինել, պետք է խոսել ոչ թե ընդհանուր լոզունգներով, այլ պարզաբանել, բոլոր հարցերին տալ պարզ և ճշմարտացի պատասխաններ։ Լենինի բնորոշ գծերից մեկն այն էր, որ նա գիտեր շատ կոնկրետ մոտենալ մասսաներին։ Նա երբեք ոչինչ չէր խոստանում, ոչ մի խոստում չէր տալիս, այլ միայն ասում էր այն, ինչ ինքն էր մտածում։ Եվ բանվորներն ասում էին Լենինի մասին, թե նա մեզ հետ լրջորեն է խոսում...

Լենինը գիտեր, թե որքան ծանր էր գյուղացիների վիճակը։ Եվ ահա խաղաղության կոչի հետ մեկտեղ նա ասում էր մի այլ լոզունգի առաջքաշման անհրաժեշտության մասին, լոզունգ այն մասին, որպեսզի հողը դառնար համաժողովրդական... 

ո՛չ միայն այն էր, որ հողը կալվածատերերի սեփականությունն էր, այլև այն, որ վերջիններս այդ հողի վրա տնտեսություն էին վարում, և, վարելով այդ տնտեսությունը, այնքան էին նեղում գյուղացիներին, որ գյուղացիները խիստ ատում էին կալվածատերերին ո՛չ միայն իբրև հարուստների, այլև որպես անմիջականորեն իրենց ճնշողների... Այդ պատճառով էլ զինվորները, որոնք մեծ մասամբ գյուղից էին, հատկապես ջերմությամբ վերաբերվեցին դեպի այդ լոզունգը, որում ասվում էր, թե պետք է հողը խլել կալվածատերերից։

Իմպերիալիստական պատերազմը ակնառու կերպով ցույց տվեց, որ իմպերիալիստները, կապիտալիստները մասսաների մասին չեն մտածում, որ նրանք պատրաստ են հազարավոր, միլիոնավոր բանվորների զոհաբերել հանուն իրենց շահերի։ Դա մասսաներին հասկանալի էր։ Վերջապես, իշխանության հարցը, այն հարցը, որ հարկավոր է գրավել իշխանությունը։ Այդ հարցը մեծ պարզաբանում էր պահանջում։ Եվ ահա Լենինը ասում էր այդ բացատրական աշխատանքը տանելու անհրաժեշտության մասին։ Բոլշևիկների վարած բացատրական աշխատանքը մեծ հաջողություն ունեցավ, որովհետև այնպիսի լոզունգներ էին ընտրված, որոնք առանձնապես էին հուզում մասսաներին...

Այն ժամանակ բոլոր տներում, ամենուրեք արդեն խոսում էին այն մասին, որ հարկավոր է քշել կապիտալիստ-մինիստրներին. և նույնիսկ փոքրիկ երեխաներն էլ լսում էին այն, ինչ խոսում էին մեծերը։ Մի վեց տարեկան տղա խաղում է բակում։ Շարել է տասը հատ քար, ցատկում է նրանց վրա և գոչում.

— Կորչե՜ն տասը կապիտալիստ-մինիստրները...

## ՀՈՒԼԻՍՅԱՆ ՕՐԵՐԸ

Հիշում եմ հուլիսյան օրերը։ Ես աշխատում էի Վիբորգյան շրջանում։ Մեզ մոտ այդ օրը նշանակված էր խորհրդակցություն՝ կուլտուրական աշխատանքի վերաբերյալ։ Հենց այդտեղ էլ պիտի գային գնդացրային գնդի ներկայացուցիչները, որպեսզի միատեղ քննարկեինք, թե ինչպես ավելի լավ վարենք կուլտուրական աշխատանքը գնդացրորդների մեջ։ Ես սպասում էի։ Ոչ ոք չէր գալիս։ Այդ ժամանակ ես գնացի Կշեսինսկայայի տունը, որտեղ տեղավորված էր Կենտկոմի քարտուղարությունը։ Տեսնում եմ՝ գնդացրորդներն արդեն գալիս են զինված... Հիշում եմ մի այսպիսի տեսարան. քայլում է այդ գնդացրային գունդը, նրա դեմ է ելնում մի հին բանվոր, կտրում է գնդի ճամփան, գլուխ է տալիս և ասում.

— Դե, ընկերնե՛ր, դուք Սովետական իշխանության կողմը կպահեք, հա՞։

Պարտիայի համար այդ ելույթը որոշ չափով անսպասելի էր։ Քննվեց այն հարցը, թե ինչ է հարկավոր անել, և պարտիան որոշեց, որ պետք է կասեցնել այդ ելույթը։ Այն ժամանակ Կենտկոմը մեր բոլոր ագիտատորներին դիրեկտիվ տվեց կասեցնել այդ ելույթը։ Գիտե՞ք ինչ, երբ հարկավոր է ագիտացիա մղել, որպեսզի ելույթ ունենան՝ դա հեշտ բան է, իսկ երբ հարկավոր է ետ պահել ելույթից՝ դա շատ ավելի դժվար է։ Ամենքը, ովքեր մասնակցել են ռևոլյուցիոն պայքարին, գիտեն, որ շատ ավելի մեծ բավականություն է պատճառում, երբ ագիտացիա ես անում, կոչում ես ելույթի և դա հաջողվում է։ Իսկ երբ մարդիկ ուզում են պայքարի ելնել, բայց պետք է ասել՝ «Ո՛չ, ընկերներ, բանվորները պետք է քանդել, առայժմ այդ բանը չպետք է կազմակերպել, ելույթը պետք է մի քիչ ուշացնել»,— դա դժվարին բան է։ Եվ բոլշևիկների



համար շատ ծանր էր այդ անելը։ Հիշում եմ, ինչպես Վիբորգյան շրջանում մի ընկեր, որն աշխատում էր հենց գնդացրորդների մեջ, երկար ժամանակ պառկած էր դիվանին ու նայում էր առաստաղին, մտածելով, թե ինչպես պիտի ինքը գնա և համոզի գնդացրորդներին, թե պետք է հանձնվել։ Սակայն պարտիական կարգապահությունն ուժեղ էր, և բոլոր բոլշևիկներն ագիտացիա էին մղում, որ պետք է արգելել այդ ելույթը։ Եվ այդպես էլ արվեց։

Դրանից հետո սկսվեցին ձերբակալությունները, խուզարկությունները։ Հուլիսյան օրերից հետո Լենինը հարկադրված եղավ թաքնվել, քանի որ ամենուրեք ջանում էին նրան բռնել, հետքերը գտնել։ Նա մի ժամանակ թաքնվում էր դարձյալ Վիբորգյան կողմում, հետո թաքնվեց ընկ. Ալլիլուևի մոտ, իսկ այնուհետև որոշեցին նրան տեղափոխել Պետրոգրադից քիչ հեռու, Ռազլիվ կայարանը (Ֆինլանդական երկաթուղին)։ Այնտեղ էր ապրում մի հին պարտիականի, դեռևս 1905 թվականի մարտական կազմակերպության անդամ ընկ. Եմելյանովի ընտանիքը, և թեպետ նա ուներ ամեն հասակի երեխաներ, բայց նրանք վարժված էին կոնսպիրացիային, այնպես որ նրանցից ոչ մեկը չէր կարող բերանից թռցնել, որ այստեղ ապրում են ինչ-որ անծանոթ մարդիկ։

Ամառվա վերջը, աշնանը, Լենինը ապրեց Ռազլիվում։ Ամռանը բոլորը նրանց բանվորների տեղ էին դնում՝ ինչ-որ բան են հնձում, խոտ են փոցխում — բնական էր թվում։ Իսկ ձմռանը հարկավոր էր որևէ այլ տեղ փոխադրվել։ Եվ ահա մի ֆինն ընկեր Վլադիմիր Իլյիչին շոգեքարշի վրա տեղափոխեց Ֆինլանդիա, Հելսինգֆորս։

## ԻԼՅԻՉԸ ՖԻՆԼԱՆԴԻԱՅՈՒՄ

Այդ ժամանակ ես աշխատում էի Վիբորգյան շրջանում։ Երբ Վլադիմիր Իլյիչին փոխադրեցին Ֆինլանդիա, որտեղ նա թաքնվում էր, նա կապ էր պահպանում Վիբորգյան շրջանի միջոցով, գրություններ էր ուղարկում ֆինն ընկերների միջոցով։ Սկզբում մենք որոշել էինք, որ ես չեմ գնա Ֆինլանդիա, այլ կմնամ այստեղ, կդիտեմ շրջապատս և ապա կպատմեմ Վլադիմիր Իլյիչին։ Վերջապես ես նրանից ստացա մի քիմիական նամակ, այսինքն նամակ, որի տողերի միջև քիմիական նյութով գրված էր այն, ինչ հարկավոր էր գրել։ Նա այդ նամակում տվել էր իր հասցեն, որպեսզի ես կարողանամ առանց որևէ մեկին հարցնելու գնալ իր մոտ, և պատմում էր, թե ինչպես, ինչ ազգանունով, որ ընկերների մոտ է ինքն այնտեղ ապրում։ Ցավալին միայն այն էր, որ երբ ես սկսեցի տաքացնել այդ նամակը, մի քիչ այրվեց թղթի ծայրը, այնպես որ ես չկարողացա կարդալ, թե ինչպես պետք է անցնել այնտեղ։ Եմելյանովները կազմակերպեցին իմ անցումը սահմանի վրայով։ Ինձ համար անձնագիր ճարեցին Ատամանովայի՝ 65-ամյա մի պառավի անունով։ Ես շալ կապեցի գլխիս՝ սահմանում պահակությունը ուշադրություն չդարձրեց, ինձ բաց թողեց։ Հասա Հելսինգֆորս։ Այնտեղ շատ դյուրությամբ ընկա։ Հազիվ հազ գտա, բայց ոչ ոքի չէի հարցնում։ Խոսեցինք ամեն ինչի մասին...

Իմ առաջին ուղևորությունից երկու շաբաթ հետո, արդեն սեպտեմբերին, ես կրկին գնացի նույն ճանապարհով, նույն Ատամանովայի անձնագրով, զինվորների վագոնով։ Միայն թե այս անգամ վագոնում միանգամայն այլ խոսակցություններ էին տեղի ունենում։ Օրինակ, վագոն է մտնում մի զինվոր ու

պատմում այն մասին, թե ինչպես իրենք Վիբորգում կամուրջից սպաներին էին ցած գցել։ Այդտեղ էլ նստած էր պորտֆելով մի պարոն, որն անմիջապես, առաջին իսկ կայարանում իջավ գնացքից։ Ամբողջ ճանապարհին զինվորները խոսում էին այն մասին, թե ինչպես պետք է գրավել իշխանությունը։ Մոտենում ես վագոնի պատուհանին, լրագրավաճառը ծախում է կադետական «Речь» լրագիրը, և պետք էր տեսնել, թե ինչպես բուրժուական կադետական լրագրի նկատմամբ ատելությամբ լցված մի զինվոր ասում է լրագրավաճառին.

— Ես այդ 22ից չե՛մ խմում։

Երբ տեղ հասա, ես Իլյիչին պատմեցի զինվորների տրամադրությունների մասին, Վիբորգյան բանվորների տրամադրությունների մասին, հաղորդեցի այն ամենը, ինչ ընկերները ուզում էին նրան պատմել։ Եվ ահա, գիտեք, երևում էր, թե ինչպես նրան ամբողջապես կլանեց այն միտքը, որ արդեն մոտենում է այն ժամանակը, երբ պետք է ձեռքից բաց չթողնել մոմենտը, երբ պետք է ապստամբություն անել...

## ՆԱԽՕՐԵԻՆ

Այդ ժամանակին, սեպտեմբերին է վերաբերում Նրա հոդվածը՝ «Կպահե՞ն արդյոք բոլշևիկներն իրենց ձեռքում պետական իշխանությունը»։ Դա մի հիանալի հոդված է։ Այն գրված է արտասովոր ջերմությամբ։ Նրանում շարադրված են Սովետական իշխանության հիմքերը...

Ներկայումս լուսավորության գծով մենք դիրեկտիվ ենք տալիս վերընթերցել Լենինի «Կպահե՞ն արդյոք բոլշևիկներն իրենց ձեռքում պետական իշխանությունը» հոդվածը, որովհետև նրանով հեշտ է բացատրական աշխատանք տանելը, այն բանի պարզաբանումը, թե որն է Սովետական իշխանության էությունը։ Մեր երիտասարդությունը, իհարկե, պատրաստ է մեռնել հանուն Սովետական իշխանության, բայց թե որն է Սովետական իշխանության էությունը, այդ բանը դեռևս մեր ոչ ամբողջ երիտասարդությունն է, որ մինչև վերջը հասկանում է։ Այդ պատճառով էլ այժմ երիտասարդության շատ ժողովներ են կազմակերպվում։ Ես, օրինակ, հարկ եմ ունեցել հանդես գալու Մետրոստրոյի տասնութ տարեկան աղջիկների մոտ, որոնք ունեն ձայնի իրավունք։ Նրանք մտածում են այն մասին, թե ինչպես կառուցել մետրոն, ինչպես կառուցել սոցիալիզմը, իսկ թե ինչ բան է Սովետական իշխանությունը՝ այդ հարցը այժմ նրանց այնքան էլ չի հետաքրքրում։ Այստեղ անհրաժեշտ է որոշակի բացատրական աշխատանք տանել։ Իհարկե, ամբողջ հարցն այժմ այն կերպ է դրվում։ Ներկայումս մեզանում իշխանության հարցը չի դրված։ Այդ հարցն արդեն լուծված է։ Բայց, այնուամենայնիվ, երբ կարդում ես «Կպահե՞ն արդյոք բոլշևիկներն իրենց ձեռքում պետական իշխանությունը» հոդվածը, տեսնում ես, թե ինչպես է այն բացատրում գործի բուն էությունը։ Լենինը սեպտեմբերին գրել է հենց Սովետական իշխանության էության մասին։

Իսկ այնուհետև նա մի նամակ գրեց Կենտկոմ, որտեղ ասում էր. այժմ այնպիսի մոմենտ է, որ պետք է վերցնել իշխանությունը, որովհետև Գերմանիայի կապիտալիստներն ուզում են սեպարատ հաշտություն կնքել Անգլիայի հետ, Ժամանակավոր կառավարությունն ուզում է հանձնել Պետրոգրադը, չի ուզում պաշտպանել ռևոլյուցիոն քաղաքը, և որ այժմ ձեռքից չի կարելի թող-



նել մոմենտը։ Այնուհետև Իլյիչը որոշեց փոխադրվել Պետրոգրադ։ Նա ուզում էր լինել ավելի մոտ տեղում։ Հելսինգֆորսից տեղափոխվեց Վիբորգ և այնտեղից Կենտկոմ նամակ գրեց, որում շարադրում էր իր տեսակետը... Նրան չափազանց շատ բան էին տվել էմիգրացիայի այն երկար տարիները, երբ նա ուսումնասիրում էր, թե ինչպես են տեղի ունեցել ռևոլյուցիաները մյուս երկրներում։ Լենինը, օրինակ, բազմիցս կարդում ու վերընթերցում էր Մարքսի ասածները ապստամբության մասին։ Նա գիտեր Ֆրանսիական Մեծ ռևոլյուցիայի փորձը, Փարիզյան Կոմունայի փորձը։ Այդ պատճառով էլ Կենտկոմ ուղարկած նամակում նա տվեց կոնկրետ ցուցումներ. ապստամբության հետ չի կարելի խաղալ, և եթե վճռել եք ապստամբության դիմել, ապա պետք է մինչև վերջը գնալ։ Նա նշում էր, թե ի՛նչ կետեր պետք է գրավել, վերցնել ո՛ր կամուրջները, հեռագրատունը, հեռախոսը, ինչպես կապ հաստատել զորքերի հետ, ինչպես գրավել կառավարությունը, տալիս էր մանրամասն պատկերն այն բանի, թե ինչպես կազմակերպել ռևոլյուցիան... Առաջներում մեր ռևոլյուցիոներները մտածում էին՝ «Ոտքի կելնի ժողովուրդը, և կկործանվի բռնակալությունը», ամեն ինչ տեղի կունենա մի տեսակ տարերայնորեն, այնինչ բոլշևիկների ուժն այն էր, որ նրանք խոսում և ապստամբությունն ուղղում էին որոշակի, խոր մտածված պլանով։

Այդ նամակի հետ միասին Վլադիմիր Իլյիչը ինձ մի քիմիական տոմսակ գրեց, որ ես նրա համար բնակարան գտնեմ։ Այդպիսի բնակարան ես նրա համար գտա։ Վիբորգյան մեր ընկերներից մեկը՝ Ֆոֆանովան հարմար բնակարան ուներ. այդ տանն ապրում էին բանվորներ, բնակարանում Ֆոֆանովայից բացի ոչ ոք չէր ապրում։ Նա կարող էր կատարել Իլյիչի բոլոր հանձնարարությունները։ Այդ բնակարանը մենք կարող էինք կոնսպիրացված պահել։ Վլադիմիր Իլյիչը միշտ ուշադրություն էր հրավիրում այն բանի վրա, որպեսզի երբեք չմոռացվեն կոնսպիրատիվ հին ունակությունները։ 1917 թվականի ռևոլյուցիայում ևս, Հոկտեմբերին նախապատրաստվելիս, նա օգտագործեց բոլոր հին ունակությունները։ Եվ քիմիական տոմսակներն այդպիսի հին եղանակներից մեկն էին։ Բնակարանը պատրաստեցին։ Ֆինն ընկերները նրան հասցրին Պետրոգրադ։ Ընկերներից ոմանք անմիջապես սկսեցին փնթփնթալ՝ «եկել է առանց թույլտվության», բայց փնթփնթալու ժամանակը չէր։ Հավաքվեց Կենտկոմը։ Վլադիմիր Իլյիչը դրեց զինված ապստամբության, ռևոլյուցիայի անհրաժեշտության հարցը։ Կենտկոմի հսկայական մեծամասնությունը կողմ էր...

Բանն այն է, որ այդ պահին Սովետներն արդեն անցել էին բոլշևիկների կողմը, նրանք արդեն բավարար չափով պրոպագանդված էին։ Սովետներն արդեն կողմ էին ապստամբության։ Դա նույնպես այն մոմենտներից մեկն էր, որը ցույց էր տալիս, որ ապստամբության ժամանակը արդեն հասել է։ Ամսի 10-ին այդ ժողովն էր, իսկ 15-ին Սմոլնիում հավաքվեցին բոլոր շրջանների, պարտկազմակերպությունների ներկայացուցիչները։ Բնորոշ է, թե ինչպես ընկերներն այնուամենայնիվ խախտում էին կոնսպիրատիվ հին եղանակները։ Մենք, օրինակ, հավաքվել էինք Սմոլնիում, որտեղ շուրջդ կային և՛ մենշևիկներ, և՛ էսէռներ, և՛ ով ուզես։ Եվ ահա քննարկվում է այն հարցը, կազմակերպե՞լ ապստամբություն, թե ոչ։ Մենք Վիբորգյան շրջանից ութ հոգի էինք։ Բոլոր ներկայացուցիչներս միաձայն կողմ քվեարկեցինք ապստամբությանը։ Մյուս շրջանների մեծամասնությունը նույնպես կողմ էր ապստամբությանը։

Հիշողության մեջ են մնացել Ձերժինսկու ելույթը, որը շատ էր պաշտպանում ապստամբության անհրաժեշտությունը, և Չուդնովսկու ճառը։ Նա մի ընկեր էր, որը տարակուսում էր։ Նա ասում էր.

— Հետո՞ ինչ, մեռնելը շատ հեշտ բան է, մենք կմեռնենք, բայց կանգուն կմնա՞ արդյոք Սովետական իշխանությունը։

Նա որոշ տատանումներ ուներ։ Իհարկե, հետո նա մասնակցեց ապստամբությանը և հետագայում զոհվեց Սովետական իշխանության համար մղվող պայքարում, բայց այն պահին նա մի քիչ տատանվում էր։ Բայց հարցը վճռված էր։ Պետրոգրադի բոլոր պարտիական կազմակերպությունները կողմ էին ապստամբությանը։

Հետևյալ օրը կայացավ Կենտկոմի ընդլայնված նիստը՝ արհմիությունների մասնակցությամբ։ Այդ նիստում արդեն քննարկվեց ապստամբության ամբողջ պլանը, ընտրվեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե, որը պետք է պատրաստեր ամեն ինչ և ամենից առաջ պետք է ապստամբության պատրաստեր զորքերին... Եվ ահա այսպիսի պատկեր ստացվեց. գոյություն ունի ժամանակավոր կառավարություն, իսկ բոլոր զորքերը որոշել են, որ հնազանդվում են միայն Պետրոգրադի Սովետին առընթեր Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեին։ Իհարկե, դրությունը գնալով ավելի ու ավելի էր սրվում։ Ժամանակավոր կառավարությունը որոշեց... ձերբակալել Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն (իսկ նրա կազմում էին մեր Կենտկոմի անդամները), բաց անել կամուրջները, որպեսզի անջատվեն շրջանները։ Այնուհետև սկսեցին քաղաքին մոտեցնել յունկերներին, որոնք հավատարիմ էին մնացել ժամանակավոր կառավարությանը, Ձմեռային պալատին։ Կառավարությունը կենտրոնացել էր Ձմեռային պալատում։ Մի խոսքով, պարզ էր, որ հասել է այն մոմենտը, երբ հարկավոր է կամ պաշտպանել Սովետական իշխանությունը, կամ ջախջախվել։

Վլադիմիր Իլյիչը նստած էր Ֆոֆանովայի բնակարանում։ Մենակ ընկ. Ռախյան էր գնում նրա մոտ և տեղեկություններ տալիս. մեկ էլ ես էի գնում։ Բնակարանն այնպես էր կոնսպիրացված, որ նույնիսկ Կենտկոմի անդամներն էլ չգիտեին, թե որտեղ է թաքնվում Իլյիչը...

Գիշերը ես մտածում էի. «Տեսնես ի՞նչ է անում Իլյիչը, մի՞թե նա դարձյալ Ֆոֆանովայի բնակարանումն է գտնվում»։ Գիշերով գնացի Ֆոֆանովայի տունը։ Նա ասաց, թե Իլյիչը գնացել է։ Նրա մոտ էր եկել Ռախյան։ Պատմել է, որ կամուրջներն անջատում են... Եվ Ռախյայի հետ նրանք վճռեցին, որ Իլյիչը դուրս կգա տնից։ Նա գրիմավորվել էր։ Նրա գլխին ինչ-որ շալ էին կապել։ Այդ ամենն արել էին շատ անշնորհք։ Ճանապարհին Իլյիչը կորցրել էր գլխարկը... Մի խոսքով, նրանք հազիվհազ հասել էին Սմոլնի։ Իլյիչը եկել ու սկսել էր անմիջական մասնակցություն ունենալ ապստամբության ղեկավարման գործում։ Իսկ ես այդ չգիտեի։ Եկա Ֆոֆանովայի բնակարանը, դուռը ծեծեցի պայմանական զարկով։ Նա ասաց, թե Իլյիչը գնացել է։ Ապա մենք շրջանի քարտուղարի՝ Ժենյա Եգորովայի հետ թռանք մի բեռնատարի վրա և գնացինք Սմոլնի։ Այն պահին ապստամբության տպավորությունն այնքան հրապուրիչ էր, որ չեմ հիշում՝ ես այնտեղ Իլյիչին տեսա, թե ոչ։ Ապստամբության մասին էի մտածում...

Այդպիսի պատրաստվածության, կշռադատվածության շնորհիվ իշխանությունը վերցվեց առանց մեծ զոհերի։ Ձերբակալվեց ժամանակավոր կառավարությունը։ Կերենսկին փախել էր։ Պետք է ասել, որ այն ժամանակ բոլորը



դեռ շատ բարեհոգի էին։ Մեր կարմիր-գվարդիականները երբեմն այսպես էին դատում.

— Է, հետո՞ ինչ, որ նա ժամանակավոր կառավարության անդամ է, բայց նրան կարելի է բաց թողնել, նա ակտիվը չէ։

Եվ ահա, չգիտես ինչպես, Կերենսկուն ձեռքից բաց թողին, իսկ նա հետո, մի քանի օր անց, սկսեց հարձակվել Պետրոգրադի վրա։ Ճիշտ է, դրանից ոչինչ չստացավ, բայց այնուամենայնիվ արդեն սկսվում էր քաղաքացիական պատերազմը։

## ՍՄՈԼՆԻՈՒՄ

Այս ամենը տեղի էր ունենում Սովետների II համագումարի հետ միաժամանակ։ Եվ ահա ես հիշում եմ Իլյիչի ելույթը հողի հարցի վերաբերյալ։ Ինձնից ոչ այնքան հեռու նստած էր մի ռևոլյուցիոներ։ Նա քուրք էր հագել, գյուղացու պես։ Եվ երբ նա լսում է Լենինի ճառը, նրա դեմքը կարծես հատուկ փայլ էր ստացել։ Երևում էր, որ նա տեսնում է իրագործումն այն բաղձանքի, որի մասին երկար տարիներ մտածել և որի համար պայքարել էր։ Ընդհանրապես Սովետների II համագումարն անցավ մեծ խանդավառության պայմաններում...

Ես փոխադրվեցի Իլյիչի մոտ՝ Սմոլնի։ Այնտեղ մեզ սենյակ հատկացրին։ Դա առաջ «Ազնվատոհմ օրիորդաց ինստիտուտն» էր, և մեզ տվին մի դաստիարակ կնոջ սենյակը։ Վերևում Վլադիմիր Իլյիչի կաբինետն էր։ Նա արդեն II համագումարում ընտրվել էր Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ։ Նրա կաբինետի դիմացը ընդունարանն էր։ Եվ ահա գալիս, նայում ես։ Այդ սենյակն այնքա՜ն փոքրիկ է։ Նստելու տեղ չկա։ Իլյիչը կանգնած է մեջքով պատուհանի կողմը, հենվելով պատին կամ լուսամուտին։ Իսկ այստեղ գալիս են ռազմաճակատից զինվորներ, պատվիրակություն պատվիրակության հետևից, և Իլյիչը մեծ բացատրական աշխատանք է տանում այդ պատվիրակների հետ։

Պետք է ասել, որ այն ժամանակ Լենինին դեմքով ոչ ոք չգիտեր։ Երեկոյան մենք սովորաբար Սմոլնուց դուրս էինք գալիս, զբոսնում Սմոլնու շուրջը, և երբեք ոչ ոք նրան չէր ճանաչում, որովհետև այն ժամանակ դիմանկարներ չկային։ Այս տարի ես նամակ ստացա մի զինվորից, որն այն ժամանակ պահպանում էր Իլյիչին... Սկզբում նա ճաշարանի վարիչն էր։ Նա Վոլինսկու գնդի ամենահետամնաց մի զինվոր էր։ Նա երբեք մեծ քաղաք չէր տեսել։ Մեկ էլ տեսար՝ պպզած, պրիմուսի վրա սպիրտ է լցնում և նայում, թե ինչպես է բռնկում սպիրտը։ Երբեք չէր տեսել։ Եվ ահա այժմ, տասնյոթ տարի անց, նա հիշում է Հոկտեմբերյան օրերը։

Վոլինսկու գնդի այդ զինվորը շատ էր սիրում Իլյիչին և որոշել էր, որ հարկավոր է նրան կերակրել սպիտակ հացով։ Իսկ այն ժամանակ սպիտակ հաց ոչ մի տեղ չէր կարելի ճարել։ Այդպես նա հիշում է, թե ինչպես ինքը գնացել էր Վոլինսկու գունդը և ասել, թե մեզ մոտ Իլյիչի համար սպիտակ հաց չկա։ Այնտեղ իսկույն ճարել էին սպիտակ հաց և, ավելացնում է նա իր կողմից. «Իլյիչը ախորժակով էր ուտում այդ սպիտակ հացը»։

*Հոկտեմբերից հետո պարտիան ստիպված եղավ շատ լայն պրոպագանդա մղել հանուն Սովետների իշխանության։ Անհրաժեշտ եղավ կազմակերպչական մեծ աշխատանք կատարել։ Լենինն այն ժամանակ ասում էր, թե պետք է փոխել ողջ կացութաձևը։ Եվ բնորոշ է, որ նրա հոդվածներում այն ժամանակ շատ էր խոսվում կուլտուր-կենցաղային պայմանների մասին, այն մասին, որ պետք է հոգ տանել երեխաների մասին, որ պետք է բոլոր աշխատավորներին ներգրավել հասարակական աշխատանքի մեջ...*

*Եվ այժմ, երբ քաղվածքներ ես կարդում Լենինի՝ այն ժամանակին վերաբերող հոդվածներից, ապա դրանք այնպիսի արձագանք են գտնում, որպիսին 1917 թվականին, իհարկե, տակավին չէին գտնում։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան բարձրացրեց բոլոր կարևոր հարցերը, բայց երկար ժամանակ էր պետք դրանց կենսագործման համար։ Լենինը հարկադրված եղավ աշխատել, գլխավորապես, ռազմական կոմունիզմի տարիներին։ Նա միայն նշեց, թե իր կարծիքով, ինչպես պետք է այնուհետև ընթանա աշխատանքը, իսկ պարտիան հարկադրված եղավ այդ ցուցումները իրագործել արդեն առանց նրա...*

*Մեր Հոկտեմբերյան ռևոլյուցիան երբեք տեղի չէր ունենա, եթե մենք հաշվի չառնեինք նախընթաց ռևոլյուցիոն պատերազմների փորձը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ո՛չ միայն ռուսական պրոլետարիատի հաղթանակն է, դա ինտերնացիոնալ այնպիսի հաղթանակ է, ինչպես ներկայումս ընթացող սոցիալիստական շինարարությունը...*

*Ռևոլյուցիոն պայքարի ամբողջ փորձը, սոցիալիստական կառույցի փորձը, ընդհանուր փորձը կարևոր է ո՛չ միայն մեր երկրի համար։ Մեր երկիրը սոցիալիստական ռևոլյուցիայի համար բոլոր մարտնչողների հայրենիքն է։ Եվ այն զգացումը, որ տածում են մեր երկրի կոմունիստները, կարդալով, ծանոթանալով մյուս երկրներում կատարվածի հետ, դա խոր եղբայրական համերաշխության զգացումնք է։*

Հրապարակվում է առաջին անգամ<br>
ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-<br>
լենինիզմի ինստիտուտի արխիվ

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ՄՏՔԻ ԳԱՆՁԱՐԱՆԸ

(«Լենինյան XXXVI ժողովածու»-ի առթիվ) *

*Իրականում այսպես պետք է կոչվի աշխարհի իմաստնագույն մարդու, սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ճարտարապետ Վ. Ի. Լենինի նոր լույս տեսած XXXVI ժողովածուն։ Ի մի ամփոփված ավելի քան վեց հարյուր լենինյան վավերագրեր (որոնք հրատարակվում են առաջին անգամ) վառ լույս են սփռում թե՛ հեղինակի արտասովոր բազմաբեղուն գործունեության և թե՛ սոցիալիստական հասարակության երկունքի ու լինելիության բարդ պրոցեսների վրա։*

*Գիրքը թերթելիս լենինյան հանճարի շողերն ընթերցողի հայացքի առջև վառ լուսավորում են կոմունիստական ռևոլյուցիայի լայնեզր մայրուղին և դեպի այն ձգվող բազմաթիվ արահետներն ու խուլթոտ կածանները։ Գրքի յուրաքանչյուր էջից լսվում է մեծ Լենինի սրտի տրոփը, զգացվում է նրա կենսատու շունչը։ Այդ մեծարժեք նոր ժողովածուն մեզ հանգամանորեն ծանոթացնում է Կոմունիստական պարտիայի լենինյան շտաբի՝ ՌԿ(բ)Պ-ի Կենտկոմի փառահեղ գործունեության կարևոր մոմենտների հետ, այն Կենտկոմի, որն իր կառավարի իմաստուն խորհուրդներով համարձակ և զգույշ դեպի կոմունիզմի ափն է վարում Հոկտեմբերի նավը։*

*Իններորդ ահարկու ալիքը զարնվելով պրոլետարական դիկտատուրայի ժայռին՝ փշրված է։ Միջազգային սոցիալիստական ռևոլյուցիայի նավն իր խարիսխն է նետել Լենինի հայրենի երկրի ափին։ Աշխարհը շուռ եկավ լենինյանների կամքով։ Մարդկության փրկության արքիմեդյան լծակը գտնված է։ Լենինի կերտած պարտիայի կամքով սկսվեց պատմության լուսավոր դարաշրջանը։ Կարճ ժամանակամիջոցում Լենինի հանճարի թելերից հյուսվեց սոցիալիստական պետության պիրկ հենքը։ Նրա դիրիժորական մոգական փայտիկի շարժմամբ աշխարհով մեկ հնչեց հոկտեմբերյան սիմֆոնիան։ Այս վեհացնող խոհերն են թևածում ձեր մտքում լենինյան ժողովածուն ընթեռնելիս։*

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԱՐՊԵՏԸ

*Երբ Ռուսաստանում բռնկվեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան (1917 թվական, փետրվար), Ցյուրիխում ապրող վտարանդի Լենինի հոգին մրրկվեց, աչքերից քունը փախավ։ Օր առաջ նա անձկում էր գալ Ռուսաստան ռևոլյուցիոն հորձանուտի մեջ սուզվելու համար։ Չէ որ ռևոլյուցիան նրա տարերքն էր։ Երկօրյա աղճատված հեռագրերն անգամ (տրված Պետերբուրգից) բավական էին, որպեսզի պրոլետարիատի մեծ ստրատեգը հստակ դիրքորոշում տար իր համախոհներին՝ երբեք չգնալ Երկրորդ Ինտերնացիոնալի ուղիով, որդեգրել ավելի ռևոլյուցիոն ծրագիր ու տակտիկա։ Հարկավոր է պատրաստվել գալիք մարտերի համար, դա է բխում Ռուսաստանում հաստատված երկիշխանության յուրահատկությունից։*

---

* Ленинский сборник XXXVI, Госполитиздат, 1959 г. М.

1917 թվականի մարտի 12-ին Լենինը գրել է «Ռևոլյուցիան Ռուսաստանում և ամբողջ աշխարհի բանվորների խնդիրները» հոդվածը (մնացել է անավարտ)։ Նա գերադասում էր ավելի շատ ռևոլյուցիա կատարել, քան նրա մասին գրել։ Ի՞նչ մտքեր էին հուզում Լենինին։ Այն, որ ժամանակավոր կառավարությունը գործարք է կնքել ինքնակալության հետ, գաղտնի պայմանագրեր է կապել իմպերիալիստական տերությունների հետ, շարունակում է պատերազմը և ժողովրդին խաբում ազատության փուչ խոստումներով։ Ուրեմն, նոր կառավարությունը կալվածատերերի ու կապիտալիստների շահերի պաշտպանն է։ Իրականում ռևոլյուցիան նոր է սկսվում. վճռական գոտեմարտը կլինի նրա երկրորդ էտապում։

Սակայն ինչպե՞ս գնալ Ռուսաստան, ինչպե՞ս և ե՞րբ իրագործել այս տանջող մտքերը։ Թերևս Գանեցկին հանձն առնի գործը գլուխ բերել։ Չի՞ կարելի արդյոք մաքսանենգային ճանապարհով Ռուսաստան մեկնել, հարցնում է ալեկոծված Իլյիչը։ Բայց մինչև մեկնելը պետք է օգնել ընկերներին։ Մարտի 20-ին նա սկսում է գրել Պիտերում լույս տեսնող բոլշևիկյան «Պրավդա» թերթի համար իր նշանավոր «Նամակներ հեռվից» հոդվածաշարը։ Զարմանալի ճշգրտությամբ Լենինը նկարագծում է սոցիալիստական ռևոլյուցիայի ծավալման պլանը, ռևոլյուցիա, որն իշխանությունը խլելով կեղեքողներից՝ այն պետք է հանձնի բանվորներին և չքավոր գյուղացիներին։ Այդ իշխանությունը պետք է լինի բանվորների ու գյուղացիների դեպուտատների Սովետների տիպի իշխանություն, որը փշրելով նախկին պետական մեքենան, պետք է գլխովին զինի ժողովրդին և նրա ուժին կռթնած՝ ամուր ու դեմոկրատական խաղաղություն հաստատի։ Ռևոլյուցիայի հաղթանակի հուսալի երաշխիքը՝ պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության կուռ դաշինքն է հին կարգերի դեմ մղվող մարտերում։

«Նամակներ հեռվից» հինգերորդ հոդվածի պլանում Լենինը նշել է. կյանքի նոր հանգամանքները պահանջում են փոխել պարտիայի ծրագիրը, որում հատկապես պետք է շեշտվի իմպերիալիզմի, իմպերիալիստական պատերազմների և «հայրենիքի պաշտպանության» նկատմամբ կոմունիստների պարզ դիրքավորումը։ Շատ բան պետք է շտկվի մինիմում ծրագրում։ Անհրաժեշտ է փոխել պարտիայի անունը, որովհետև այն ճիշտ չէ և ապականված է սոցիալ շովինիստների կողմից։

Միշտ հավատարիմ աշխատանքի իր ոճին, Լենինն իր մտահղացումների գրառումները հղում է համախոհներին, խնդրելով.— Դուք դիտողություններ կամ առարկություններ չունե՞ք պարտիայի ծրագրի փոփոխության վերաբերյալ։ Եթե այո, ուղարկեք անհապաղ։

Վերջապես Լենինը Ռուսաստանումն է։ Հայրենի հողի վրա ոտք դնելուն պես, նա հռչակեց՝ կեցցե՛ սոցիալիստական ռևոլյուցիան լոզունգը։ Ահա ժողովածուի մեկ էջում տպագրված Լենինի ձեռագիր թռուցիկի հավելվածի պլանը, որում նա արծարծում է օրվա ամենահրատապ քաղաքական հարցերը։

«Լենինյան ժողովածու»-ի մեջ հարյուրավոր փաստաթղթեր կան, որոնք հարուստ պատկերացում են տալիս Լենինի տիտանական գործունեության վերաբերյալ։ Իր ժամանակի հասարակական բուռն իրադարձությունները պատշաճ արձագանք ու գնահատական են գտել Լենինի գրություններում, հոդվածներում և մյուս վավերագրերում։ Այսպես, օրինակ, նոյեմբերի 28-ին (1917 թվական) Լենինը գեներալ-մայոր Ս. Օդինցևին գրած նամակում խնդրում է, որպեսզի վերջինս շտաբի սպաների հետ (ռևոլյուցիայի համակիրների) իսկույն մշակի «զինադադարի պայմանագրի» հիմնական հարցերի կոնսպեկտը և իրեն ներկայացնի (էջ 17)։

Խաղաղության հարցը համարելով ռևոլյուցիայի արմատական խնդիրներից մեկը՝ նա գերմարդկային ճիգ է թափում այն իրականություն դարձնելու համար։ Ռևոլյուցիայի առաջին իսկ օրից կանգնելով Սովետական կառավարության ղեկի մոտ, Լենինը վիթխարի ջանքեր գործադրեց պրոլետարական նոր պետության օրգանների կազմակերպման, ձևավորման և ամրապնդման,



արտաքին աշխարհի հետ նորմալ հարաբերություններ սահմանելու համար։ Նա ոչ միայն հիմք դրեց պրոլետարական, սոցիալիստական պետության, այլև նոր դիվանագիտության, որն իր աշխարհաշեն ու պատմական միջոցառումներով կեղեքվող մարդկության խոր համակրանքին արժանացավ։

Հարցի ուղն ու ծուծը.— գրում էր Լենինը,— խաղաղության հաստատումն է։ Այդ խաղաղության փութացման համար ես շա՜տ բան կտայի։ Նոր դիվանագիտություն ստեղծելը դժվարին գործ է, ընդգծում էր նա (էջ 44)։ Որքա՜ն էր ուրախացել պրոլետարիատի ուսուցիչը, երբ 1918 թվականի ամռանը Գերմանիան համաձայնեց զինադադար կնքել, խոստանալով թուրքերին Բաքու չթողնել։ Լենինն անհապաղ հեռագրում է Ստալինին՝ հաղորդելու Ստ. Շահումյանին, որ Բաքուն պահելու լուրջ շանսեր կան (էջ 53)։

Լենինը բնավ չէր հուսահատվում պարտության պահին։ Ելնելով ուժերի ճիշտ հաշվեկշռից, նա միշտ զորավիգ էր կանգնում հուսալքվողներին, խրախուսում էր, սիրտ տալիս, ելք մատնանշում ստեղծված կացությունից։ Պենզայի նահանգի գործկոմի նախագահի տեղակալին հայտնելով, որ չեխերը գրավել են Սիզրանը, նա զգուշացնում էր խուճապի չմատնվել, որ մեր ուժերը հակահարված են պատրաստում, և մենք կհաղթենք (էջ 45)։

Կյանքում միշտ լավատես ու կայտառ Լենինը կարողանում էր իր շրջապատի մարդկանց, իր հազարավոր ունկնդիրներին տոգորել հոգու արիությամբ, աննկունության ներզգացումով։ Ինտերվենցիայի ծանրագույն օրերին նա Արտաքին գործերի կոմիսար Չիչերինին առաջարկում է Սովետների համագումարի համար գրել խաղաղության մանիֆեստի տեքստը և պատրաստվել բանակցություններ վարելու այդ ուղղությամբ։ Նա չէր տարակուսում, որ Անգլիան ի վիճակի չէ պատերազմելու Սովետների դեմ, իսկ առանց Անգլիայի ինտերվենցիան կտապալվի։ Եթե միջազգային հարաբերություններում խստագույն արթնամտություն ունենանք, գրում էր Լենինը, մենք կհաղթենք անպայման։ Անգամ զիջումների գնով կնքված խաղաղությունը մեզ հնարավորություն կտա վերականգնել տնտեսությունը, ուժեղացնել բանակը։

Մենք թույլ չենք տա, որ Անգլիան ու Ֆրանսիան թալանեն մեր երկիրը։ Դրա համար էլ, ուսուցանում էր Լենինը, անհրաժեշտ է սովորել պետություն և դիվանագիտություն վարելու բարդ արվեստը։ Առանձին ուշադրություն մի դարձրեք եվրոպական տերությունների «դժգոհություններին», բայց սովորեք նրանց նոտաներին պատասխանել պատշաճ սարկազմով, այնպես որ դա մի հրապարակային ապտակ լինի, խորհուրդ էր տալիս նա Չիչերինին։ Ճենովայի կոնֆերանսի առթիվ հարկավոր է Իտալիային գերթունալի նոտա հղել, գրում էր Լենինը։ Միաժամանակ նա անհանգստանում էր, որ Չիչերինը Լլոյդ Ջորջին գրած նամակում կարող է սխալներ թույլ տալ, դրա համար խնդրում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյին՝ կանխավ քննարկել այդ պատասխանը։

Որպիսի վարպետությամբ Լենինը վարեց ռևոլյուցիոն ապստամբության ընթացքը, նույնպիսի կատարելությամբ պատերազմական և քաղաքացիական կռիվների ծանր փորձություններից դուրս բերեց սովետական մանուկ պետությունը, որը և պարտության մատնեց թշնամիներին։

## ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՈՐՄՆԱԴԻՐԸ

Լենինը մասսաների ռևոլյուցիոն կորովի արարչագործ թափը նախ և առաջ ուղղեց երկրի արտադրողական ուժերի զարգացման, նյութական հարստության աճման հունով։ Անհրաժեշտ էր շտապ վերականգնել երկրի քայքայված տնտեսությունը։ Եթե առաջ ամեն ինչ արվում էր անարգ թշնամուն ջախջախելու համար, այժմ այդ խնդիրը լուծված է։ Հիմա բոլոր ջանքերը պետք է կենտրոնացնել տնտեսության բարգավաճման վրա։ Հարցի այս կողմը լուսավորող շատ փաստաթղթեր կան լենինյան վերջին ժողովածուի էջերում։ Գլխովին թաղված տնտեսական շինարարության «մանրուքներ»-ում, Ժողկոմխորհի նա-

գուրս՝ լուրջ չէր լինի»,— գրում է Լենինը։ Այդ հարցի քննարկումը համագումարում, դա հենց այն է, ինչ անհրաժեշտ է պարտիային և երկրին, գործնական և միաժամանակ լայն ու հրապուրիչ աշխատանքի պլան է դա (էջ 139)։ Այդ հանճարեղ պլանի ստեղծողը՝ Լենինն էր, որի կենսագործմամբ սոցիալիզմի հաղթանակն ապահովվեց մեր երկրում։

Մեծ կարևորություն տալով արտաքին առևտրին և կոնցեսիաներին, Լենինը սիստեմատիկ հետևում էր այդ բնագավառի վիճակին։ Նա վրդովվում էր, երբ ղեկավար աշխատողներից ոմանք խորապես չէին գիտակցում կոնցեսիաների լուրջ նշանակությունը ժողովրդական տնտեսության վերականգնման համար։ Այդ առթիվ էլ գրում է Ա. Ռիկովին. «Ես նայեցի կոնցեսիոն պայմանագրին վերաբերող Ձեր նյութերը և խորապես վրդովված եմ։ Այդ Դոսերի (Գլավնեֆտի նախագահ, Ա. Ա.) և Ընկ. տխմարությունը կամ սաբոտաժն է։ Անպետք և ծիծաղելի մանրուքների մի կույտ (արգելել կրակ վառել և այլն) և չի վերճանված ամենալուրջ բանը։ Ամենալուրջը խճճված է բյուրոկրատական աղբի մեջ։ Չի երևում, որ գլուխը խորհող է... Սաբոտաժը դադարեցրեք և գործն առաջ մղեք, ինչպես որ ճարկն է, այլ կերպ ես կկռվեմ Կենտկոմում» (էջ 213)։ Այսպես էր շտկում, այսպես էր կոփում, այսպես էր հղկում մարդկանց՝ Լենինը։

Աշխատավորների նյութական դրությունը բարվոքելու համար Լենինը ոչ մի բանի առաջ կանգ չէր առնում։ Այդ նպատակով կարգադրում է Կրասինին՝ արտասահմանից ոսկով կենսամթերքներ և ապրանքներ գնել։ Բայց այնպես պետք է վարել գործը, որպեսզի երկրի ոսկու պաշարը չսպառվի։

Լենինը քննադատությունը համարում էր աշխատանքն առաջ մղելու և մարդկանց դաստիարակելու կարևորագույն զենք։ Բայց նա սովորեցնում էր, որ քննադատությունը պետք է լինի սկզբունքային, շիտակ և բարյացակամ, երբ խոսքը վերաբերում է համախոհներին։ Այսպես, օրինակ, մի նամակում ֆինանսների կոմիսար Սոկոլնիկովի մասին նա գրում է. Սոկոլնիկովն իր աշխատանքում վիթխարի սխալ է անում, որը մեզ հավանաբար կկործանի, եթե Կենտկոմը չշտկի նրա գիծը... Առևտրի պրակտիկայում նա բան չի հասկանում։ Եվ նա մեզ կխորտակի, եթե նրան տեղ տանք (էջ 443—444)։ Այսպես էր վարվում միշտ Լենինը. սխալվողներին և թերացողներին շտկում էր պարտիական օրգանների ներգործման միջոցով։ Եվ դա բարձրացնում էր այդ օրգանների հեղինակությունը մասսաների աչքում։

Ժողովածուն հարուստ է նոր տնտեսական քաղաքականությանը վերաբերող նյութերով։ ՆԷՊ-ը, Լենինի հայեցակետով, Սովետական իշխանության այն նոր քաղաքականությունն էր, որն ապահովեց կապիտալիզմից անցումը սոցիալիզմին։ «Ե՞րբ կարելի է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերը գցված համարել։ Երբ ապահովված է ապրանքափոխանակությունը գյուղացիության հետ։ Երբ տնտեսապես գյուղացին բավարարված է»,— գրում է Լենինը (էջ 416)։ Երկու տողով Լենինը բնորոշել է մի ամբողջ ժամանակաշրջանի պարտիայի վարած քաղաքական կուրսը։ ՆԷՊ-ի արդյունքները սոցիալիստական նոր կյանքի անզուգական ոմնադրի՝ Լենինի հանճարի մարմնացումն են։

## ՆՈՐ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԵՐՏՈՂԸ

Սոցիալիստական ռևոլյուցիայի առաջին իսկ օրից Լենինը քար առ քար բարձրացրեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի նոր շենքը։ Ժողովածուն իր հարուստ նյութերով վառ պատկերացում է տալիս ընթերցողին Լենինի պետական վիթխարի գործունեության վերաբերյալ։ Սովետները դիտելով իբրև պրոլետարական դեմոկրատիայի մասսայական օրգաններ, Լենինը անշեղ կիրառում էր դրանց դեմոկրատական սկզբունքը. ձգտում էր նրան, որպեսզի Սովետները իրենց կազմի ճնշող մեծամասնությամբ լինեն բանվորագյուղացիական։ Այդ նկատառումով դեռ 1919 թվականի նոյեմբերի 29-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշման նախագծի առթիվ (որը վերաբերում էր Համառուսական կենտրոնական գործադիր կոմիտեի կազմին) Լենինը գրում է.



«Բոլոր ժողկոմներին (այդ թվում և ժԿԽ նախագահին) և ժողկոմների տեղակալներին չմտցնել կազմում։ Մնացածներից պակասեցնել «ինտելիգենտներին» և կենտրոնի սովետական ծառայողներին։ Մեծ չափով ավելացնել բանվորների և աշխատավոր գյուղացիների թիվը, որոնք անպայման սերտորեն կապված են անպարտիական բանվոր և գյուղացի մասսաների հետ։ Այդ ամենը ճշտորեն համաձայնեցնել պարտիայի համագումարի որոշման հետ» (էջ 84)։ Շատ չանցած, Լենինը հատուկ նախագիծ է մտցնում Կենտկոմի քաղբյուրո ՀԿԳԿ կազմի վերաբերյալ (էջ 492)։

Ժողովածուի արժեքավոր վավերագրերից է Լենինի նամակը ՍՍՌՄ կազմելու շուրջը։ Սովետական Միության ռեսպուբլիկաների միավորման հարցը նա համարում էր հույժ կարևոր, շեշտելով, որ «մենք մեզ ճանաչում ենք իրավահավասար Ուկրաինական ՍՍՌ-ի և մյուսների հետ և՛ միասին, և՛ նրանց հավասար նոր միության, նոր ֆեդերացիայի մեջ ենք մտնում»։ Կարևոր է, գրում է Լենինը, որպեսզի մենք «անկախականներին» սնունդ չտանք, նրանց անկախությունը չոչնչացնենք, այլ մի նոր ճարկ էլ ստեղծենք, իրավահավասար ռեսպուբլիկաների ֆեդերացիա (էջ 497)։ Այս, ինչպես և մի այլ նամակում (էջ 440) Լենինը հիշատակում է, որ «Ստալինը մի քիչ շտապելու ձգտում ունի» (էջ 497)։

Լենինի նամակներն ու դիտողությունները Կենտկոմն ընդունեց որպես հիմք ՍՍՌՄ-ի կազմավորման վերաբերյալ որոշում հանելիս։

Խիստ բնորոշ է, որ Լենինը Հարավ-արևմտյան ռազմաճակատի հրամանատարին հեռագրով ցուցում է տալիս գյուղական Սովետներում ընտրելու բացառապես չքավոր և միջակ գյուղացիներին։

Լենինը թշնամի էր կազմակերպական քաոսին և խրախուսում էր ամեն բանում հետևողականությունն ու սիստեմավորությունը։ Դրա համար նա քննադատում էր և ծանակծում պետական հիմնարկությունների վերակազմմամբ հրապուրվողներին։ «Ես անչափ վախենում եմ վերկազմակերպումից։ Ամբողջ ժամանակ մենք վերակազմակերպում ենք, իսկ պրակտիկ գործ չենք անում» (էջ 404)։

Լենինը բարձր էր գնահատում մտքի հստակությունը և աշխատանքի կոնկրետությունը, մանավանդ պարտիական ու պետական ապարատում։ Դրա համար էլ նա գրում է դառնացած, որ «գործին շատ է վնասում, երբ Լարինը խճճում է բյուջեն, կամ Օ. Յու. Շմիդտը «գերիմաստունի» կերպարանքով նմանապես վտանգավոր խճճող է» (էջ 404)։

Այժմ կարևորը առևտուրն է և ռուբլու կուրսի վերականգնումը։ Այդ կարևոր հարցի տեսանկյունից պետք է գնահատվեն պետական շատ աշխատողներ։ Ընտրելով և համբերատար դաստիարակելով պարտիական ու պետական գործիչների մի ստվար բանակ, Լենինը հրճվում էր նրանց հաջողություններով, խրախուսում, բայց բացեիբաց կշտամբում էր նրանց սայթաքումների համար։ Նա առանձին նշանակություն էր տալիս մարդկանց ունակությունների և հակումների ճիշտ գնահատմանը, առանց որի միշտ տուժում է գործը։ Մերթ զայրանում էր, որ ՀԿԳԿ նախագահության աշխատանքում թափթփվածություն կա, որի պատճառներից մեկն անշուշտ՝ չափից ավելի համատեղությունները էին և կադրերի սխալ տեղադրումը։ «Լարինը որպես պոետ, որպես ժուռնալիստ, որպես դասախոս՝ լավ տղա է,— գրում է Լենինը։ Բայց մենք, հիմարներս, նրան դնում ենք օրենսդրական գործի, դրանով փչացնում, կործանում թե՛ նրան և թե՛ աշխատանքը։ Ի սեր քրիստոսի, հեռևեք խստորեն։ Լարինին որևէ տեղ չթողնեք։ Եթե մի տեղ էլ ընկավ, նրա և ոչ մի պլանին, նախագծին չհավատաք. առանց եռակի ստուգման ընթացք չտալ» (էջ 425)։

Լենինը սոցիալիզմի կառուցման համար բյուրոկրատիզմը, քաշքշուկը, անկարգապահությունը համարում էր մեծ չարիք, որը մնացել է մեզ անցյալից։ Այդ չարիքի դեմ կոնկրետ պայքարելու խիստ ուսանելի օրինակներ կան «Լենինյան ժողովածու»-ի մեջ։ Պարտիական և պետական որևէ գործում նա չէր հանդուրժում «քարացածությունը, սստգիտնականությունը, անշարժությու-

նը»։ Լենինի մտքի ճկունության ու խորության, սրության և բազմակողմանիության, կոնկրետության և հեռատեսության շատ և շատ օրինակներ կարելի է քաղել սույն ժողովածուից։

1918 թվականին Չեկան ձգձգում էր ԺԿԽ որոշման կատարումը՝ մթերքների պահեստները այլ կոմիսարիատի հանձնելու մասին։ Լենինը կարգադրում է Ձերժինսկուն՝ քաշքշուկի հեղինակին դատի տալ։ Նման այլանդակություն անպատիժ թողնել չի կարելի (էջ 64)։ Պլատոնովին պետք է հանդիմանել բյուրոկրատիզմի համար, եթե կրկնվի, մի քանի տարով զրկել սովետական պաշտոններ վարելու իրավունքից։

Լենինը չէր հանդուրժում պետական օրենքների որևէ խախտում։ Նա հետևում էր, որպեսզի պատժվեն ոչ միայն հանցագործները, այլև անմեղներին պատժողները։ Վերջին երևույթը նա համարում էր սովետական օրինականության հեղինակության վերականգնում։ Ահա մի օրինակ։ Գավառային լուսավորության բաժնի վարիչը կալանվել է անհիմն կերպով։ Լենինը կարգադրում է՝ անհապաղ ազատել և կալանքի պատճառների մասին բացատրություն տալ (էջ 160)։ Ներքին գործերի ժողովրդական կոմիսարի տեղակալին կարգադրում է պատժել գյուղում սովետական օրենքները չարաշահողներին և արդյունքների մասին իրեն իրազեկ պահել։

Ընթերցողները բավական նյութեր կգտնեն ժողովածուի մեջ, որոնք բնորոշում են Լենինին իբրև նոր պետականության աննկուն ստեղծողի, պետական կյանքից հնի մնացորդների դեմ անողոք մաքառողի։ Նա պահանջում էր խիստ միջոցներ ձեռք առնել կաշառակերության դեմ, բայց չէր մոռանում պահանջել, որպեսզի ուժեղացվի կոմունիստներին դատական պատասխանատվության կանչելու հրահանգը (էջ 362)։

Ժողովածուի մեջ զետեղված է և «Երկակի ենթարկման և օրինականության մասին» Լենինի փայլուն հոդվածի պլանը, որից ևս պարզ է դառնում, որ Լենինը կտրականապես մերժում էր դատախազական օրգանների երկակի ենթարկման վնասակար նախագիծը։ Լենինի մտցրած առաջարկի հիման վրա ՌԿ(բ)Պ Կենտկոմը որոշեց. «սահմանել դատախազական տեղական իշխանության ենթարկումը միայն կենտրոնին՝ հանձին գլխավոր դատախազի»։

Վերին աստիճանի հետաքրքրական մտքեր կան սփռված ժողովածուի տարբեր էջերում բուրժուական կեղծ դեմոկրատիայի և պրոլետարական, աշխատավորական դեմոկրատիայի մասին։ Իմպերիալիզմի մեղքով տեխնիկայի հրաշքները և դիակների կույտերը, ճգնաժամերի, գաղութային երկրների թալանի հրեշային հետևանքները վայրենացնում և գազանացնում են մարդկանց։ Բուրժուազիան գնալով դառնում է ավելի լպիրշ և բռնացող։ Միայն պրոլետարական դեմոկրատիան կարող է փրկել մարդկությունը վերասերումից, գրում է Լենինը։

Լենինը մեծապես հոգ էր տանում սոցիալիստական կուլտուրայի զարգացման մասին։ Նրա համար պրոլետարական կուլտուրան=կոմունիզմի։ Սանր տարիներին նա հոգում էր դպրոցների, ուսուցիչների, գրադարանների, կինոյի, ռադիոյի, պոլիտեխնիկ կրթության, գիտականների հետազոտությունների մասին։ Կենտկոմի անդամներին գրած նամակում այն միտքն է հայտնում (1922 թվականին), թե մեզ ռազմական նավատորմ հարկավոր չէ, իսկ դպրոցների ծախսերն ավելացնելը մեզ շատ է հարկավոր (էջ 513)։ Նա մտահղանում է աշխարհի երկրների ատլասի հրատարակումը և մտահոգված էր պոլիտեխնիկական կրթությամբ (էջ 148)։ Նա գտնում է, որ Լուսժողկոմատը հեռու է պրակտիցիզմից և տառապում է ընդհանուր լոզունգներով և դատողություններով։ Առաջարկում է հաղթահարել այդ թերությունները (էջ 187)։ Անձամբ ձեռնարկում է և Ժողկոմխորհի նիստին քննարկման դնում ռեսպուբլիկայում գիտական աշխատանքի դրվածքը։ Աշխատանքի պաշտպանության խորհրդում հարց է մտցնում Ռուսաստանում ջերմաքարշեր արտադրելու անհրաժեշտության մասին։

Այսպիսով, չկա մի բնագավառ հասարակական-պետական շինարարու-



թյան մեջ, ուր չզգացվի մեծ Լենինի ստեղծագործ մտքի բարերար ազդեցությունը։ Այդ իմաստով XXXVI ժողովածուն մեծ արժեք է ներկայացնում։ Հարյուրավոր «անխոս» վավերագրերի պաստառի վրա մեր առջև գծագրվում է աշխարհում առաջին պրոլետարական Սովետական պետության կերտողի որքան կենդանի, նույնքան և գերող կերպարը։

## ՊԱՐՏԻԱՅԻ ԼՈՒՍԱՄԻՏ ԱՌԱՋՆՈՐԴԸ

Լենինը Կոմունիստական պարտիայի հիմնադիրն էր, նրա լուսամիտ առաջնորդը։ Բազմաթիվ փաստաթղթեր, որոնք զետեղված են ժողովածուի մեջ, նոր լույս են սփռում առաջնորդի գործունեության այդ կողմի վրա։ Մեր առջև կրկին հառնում է իմաստնագույն, բայց ամենահամեստ մարդու պատկերը, որն իր ողջ կյանքը նվիրեց Կոմունիստական պարտիայի մեծ գործին։

Կարդում ես Պ. Վոյևոդինի գրությունն այն մասին, որ իրեն արտոնվի գլուխ բերել «Վլադիմիր Իլյիչ Լենին» կինոսցենարիան։ Լենինի մերձավոր ընկերն ու կինը՝ Ն. Կ. Կրուպսկայան բացասական կարծիք է հայտնել հեղինակի նախաձեռնության առթիվ։ Իսկ Լենինը մակագրել է (մեզ զրկելով այդ պատմական բացառիկ դոկումենտից), «Մերժել այդ ամենը տվյալ կարծիքի հիման վրա» (էջ 431)։

Ֆրանսիացի Հանրի Գիլբոն գրում է Լենինին, որ մտադիր է մի գիրք գրել նվիրված Ռուսաստանի Սովետական ռեսպուբլիկայի ղեկավարների դերի մարմնացմանը։ Կարդալով նամակը, Լենինը լուսանցքում գրել է. «Անձերի մասին գրելը չարժե»։

Քիչ չեն Լենինի աշխատանքի ոճը բնորոշող գունեղ և ցցուն օրինակներով լի փաստաթղթերը։ Խոսքի և գործի ներդաշնակություն, պահանջկոտություն և համեստություն, երևույթների աբստրահման մարքսյան կարողություն և կոնկրետություն, լեզվի դիպուկություն և հստակություն, սկզբունքայնություն և ձեռներեցություն, գաղափարայնություն և գործնականություն, կազմակերպվածության կուռ սիստեմ աշխատանքում, անկեղծություն և ճշմարտասիրություն, անձնազոհություն և կարգապահություն, չկտրվել մասսաներից, բայց չշողոքորթել նրանց, վայելել մասսաների մեծամասնության վստահությունը և գնալ նրանց առջևից, սովորել մասսաներից։

Ժողովածուի ուշադիր ընթերցողը բավականին նյութեր կգտնի լենինյան ոճի վերոհիշյալ բնորոշ (մոտավոր) կողմերի լրիվ ըմբռնման առումով։ Այս տեսակետից սույն ժողովածուն բացառիկ կարևորություն ունի մասսաների կոմունիստական դաստիարակության համար։

Իր անմիջականությամբ և անկեղծությամբ Լենինն ուժգին ներգործում էր մարդկանց վրա։ Բոլշևիկ Բադաևին գրում է մտերմաբար. «Ի՛նչ եք նազուտուզ անում. Դուք օրիորդ չեք... Աշխատեք, հրաժարական չե՛նք ընդունում։ Առաջիկայում կատարեք կենտրոնի բոլոր կարգադրությունները և անվայել, դատարկ բաներ մի ասեք «որոնումների» մասին» (էջ 75)։ Հեռավոր Թուրքեստանից պարտիական աշխատող Սաֆարովը գրում է Լենինին, քանի որ կենտրոնում իրեն ինչ-որ բաների համար մեղադրում են, ապա նա հրաժարվում է աշխատելուց։ Իսկ Լենինը պատասխանում է հանգիստ տոնով. «Մի՛ ջղայնացեք, դա անհանդուրժելի է և ամոթալի, Դուք 14 տարեկան օրիորդ չե՛ք. կարգադրված է, Ձեր գործին Կենտկոմը ընթացք կտա։ Շարունակեք աշխատել ոչ մի տեղ չգնալով։ Պետք է կարողանալ գործնականորեն և հանգիստ ձևով նյութեր հավաքել սկսված անհեթեթ գործի դեմ» (էջ 381—382)։

Պարտիականորեն և ուսուցչի նման Լենինը սովորեցնում էր իր զինակիցներին։ Նա գրում է Չիչերինին. «Մի անգամ ևս պետք է Կենտկոմին հանձնել ճշգրիտ որոշման նախագիծը. Կենտկոմն արգելում է վարվել այս կերպ, պահանջում է այլ կերպ։ Յուրաքանչյուր խախտում բողոքարկել կոնկրետ ձևով։ Պատասխանատու անձի նշանակումը (ոչ շատ «բարձր») անցկացնել Կենտ-

կոմի միջոցով։ Այլ կերպ դուրս է գալիս միայն քրթմնջոց» (էջ 126)։ Այսպես համբերատար, այսպես կոնկրետ Իլյիչը դաստիարակում էր կադրերին, դաստիարակում էր պարտիականության և սկզբունքայնության ոգով։ Ահա մի այլ ուսանելի օրինակ։ Ռիգայից խաղաղության բանակցություններ վարող սովետական պատգամավորության նախագահ Ա. Իոֆֆեն Լենինին նամակ է գրում դժգոհելով, որ իրեն ՀԿԳԿ անդամ չեն ընտրել։ Ջերմագին ու համոզիչ տոնով Լենինը նրան գրում է. «Դուք սխալվում եք, կրկնելով (քանիցս), թե Կենտկոմը՝ ես եմ։ Այդպես կարելի է գրել ջղային մեծ գրգռվածության և գերհոգնածության դեպքում... Ինչո՞ւ այդքան ջղայնանալ և գրել միանգամայն անհնարին, միանգամայն անհնարին ֆրազը, որ իբրև թե Կենտկոմը, դա՝ ես եմ։ Դա գերհոգնածություն է»։ Լավ կլինի հանգստանաք։ Մեզ շատ են պետք փորձված, հին և կոփված աշխատողները։ Հանգստացե՛ք և ապա վերադարձեք Մոսկվա (էջ 209)։

Իր հուժկու տրամաբանության և ազդու մտքի շնորհիվ նա օժտված էր համոզելու արտասովոր կարողությամբ, որին ենթարկվում էին անգամ նրա հակառակորդներից շատերը։ Նրա սկզբունքայնության հոյակապ մի նմուշ է «Բանվորական օպոզիցիայի» ղեկավարներից մեկին՝ Յու. Լուտովինին գրած հանգամանալի նամակը։ Տող առ տող վերլուծելով նամակի բովանդակությունը, Լենինը զարմանալի սառնասրտությամբ քննադատում է դրա հեղինակի «ապացույցները», ջրում հիվանդոտ պատճառաբանությունները, եզրակացնելով. Եթե ես Ձեզ չճանաչեի, ապա կասեի, որ այս մարդը ջղային հիվանդ է, որը հիստերիկորեն կառչում է ասեկոսեների տականքներից և ի վիճակի չէ մտածել ու դատել, կամ նա հետամնաց, խավար և անզոր մի մարդ է, կամ թե չէ ծպտյալ մենշևիկ, որը գիտակցաբար բամբասանքներ է հերյուրում, որ մարդկային այդ հոյակապ փաստաթղթի հեղինակը մագնիսացած մանրբուրժուական ինտելիգենտի տիպար է (էջ 249)։ Միանգամայն մարդկային, վերին աստիճանի պարտիական իր նամակի վերջում Լենինն ավելացնում է. «Հին բարեկամության կարգով պետք է ասեմ, անհրաժեշտ է բուժել ջղերը։ Այն ժամանակ հանդես կգա դատողությունը, ոչ թե տրամադրությունը» (էջ 250)։

Լենինը պարտիայի միասնությունը բարձր էր դասում ամեն բանից և այն համարում էր կոմունիստական հասարակության կառուցման գլխավոր առհավատչյան։ Անզիջող պայքար վարելով ամեն կարգի ֆրակցիոներների և հակապարտիական հոսանքների դեմ, նա պարտիական օրգանների կոլեկտիվ կամքին ենթարկվելու փայլուն օրինակներ էր տալիս։

Սույն ժողովածուն բազմաթիվ արժեքավոր և առաջին անգամ հրապարակվող փաստաթղթեր ունի, որոնք նոր լույս են սփռում այն հսկայական պայքարի վրա, որ պարտիան մղեց տրոցկիստների, «բանվորական օպոզիցիայի» և նրանց այս կամ այն ձևով հարողների դեմ։ Քսանհինգ էջից ավելի նյութեր վերաբերում են հենց այդ պայքարին, որոնցից երևում է, թե ինչպես Տրոցկին պրոֆմիությունների «պետականացման» լոզունգն առաջադրելով՝ պարտիային ետ էր տանում։ Իր ելույթի և հոդվածի պլանում Լենինը գրում է. «Պարտիական համագումարը պետք է մերժի տեսական սխալները... ուղղի սկզբունքային անճշտությունները... վերացնի վնասակար պառակտումը, դադարեցնի հետընթաց շարժումը. անցնել գործի. բուֆերը, որը բուֆերություն չի անում (խոսքը վերաբերում է Ն. Բուխարինին—Ա. Ս.), արգելակ, որը չի արգելակում, դեն գցել» (էջ 159)։ Իր բուֆերային դիրքով և «հոգոցով» Բուխարինը յուղ է լցնում ներպարտիական պայքարի կրակի վրա, նշում է Լենինը։

Դատապարտելով պարտիայի գծից եղած թեքումները, Լենինը կոմունիստներից պահանջում էր լինել սկզբունքային, կապվել մասսաների հետ, հարկադրանքը շաղկապել համոզման հետ, ապրել զանգվածների խորքում և իմանալ նրանց տրամադրությունները, գիտենալ ամեն ինչ։ Հասկանալ մասսային և կարողանալ նրան մոտենալ, նվաճել նրա բացարձակ վստահությունը, չշողոքորթել նրան։ Կոմունիստներին տրված այս պատվիրանները մենք քաղում ենք Լենինի թեզիսների պլանից, որը տպագրված է ժողովածուի



389 էջում։ Վերոհիշյալ դրույթների իրագործման նպատակով Լենինը միջոցառումներ է մշակում, որպեսզի բանվորի անվան տակ պարտիայի մեջ չսողոսկեն զանազան «տականքներ»։

Լենինի նոր ժողովածուն պարունակում է չորս նյութեր, որոնք վերաբերում են Բանգյուղտեսչության վերակառուցմանը։ Այդ նյութերը հագեցած են խոր վերլուծությամբ և եզրակացություններով՝ նվիրված պարտիայի Կենտկոմի. ԲԳՏ-ի ապագա գործունեությանը։ «ԲԳՏ-ն պետք է այժմ իր աշխատանքը կազմակերպի նոր ձևով, հինգ տարվա փորձի հիման վրա»։ Այդ փորձն ասում է, որ մեծ անելիքներ ունենք պետական ապարատը ամբողջովին նոր սկզբունքներով կառուցելու բնագավառում։ Բանն այն է, որ մեր պետական ապարատում դեռ շատ հին բան կա և այն փոքր-ինչ հղկված է դրսից։ Նոր ապարատի ստեղծման բարդ գործը պետք է առաջ մղեն պարտիականները և, մանավանդ, Կենտկոմի անդամները։ Այդ նպատակով էլ Լենինը գրում է, որ Կենտկոմի կազմը պետք է ավելացնել 50—75 նվիրված և կոփված պարտիական բանվորներով և գյուղացիներով։

Կենտկոմի անդամների թվի ավելացումը Լենինը միաժամանակ համարում էր այն գործոնը, որը կոչված է նվազեցնելու պատահականության և անձնականության տարրերը նրա որոշումներում և Կենտկոմին ավելի տոկունություն հաղորդելու միջոց, ընդդեմ պառակտման։

Կոմինտերնի երրորդ կոնգրեսում արտասանած իր ճառերից մեկում Լենինը հերքում է այն «անխիղճ սուտը», որ իբր թե բոլշևիկները ցանկանում են քաղաքացիական կռիվ։ «Ապրիլի 22-ին ես գրել եմ, որ «Կորչի ժամանակավոր կառավարությունը» լոզունգը ճիշտ չէ՛, որովհետև եթե մեր կողմը չէ ժողովրդի մեծամասնությունը, այդ լոզունգը դառնում է ֆրազ, կամ ավանտյուրա։

Մենք չքաշվեցինք մեր թշնամիների առջև մեր ձախերին կոչել «ավանտյուրիստներ»։ Մենշևիկներն այդ առթիվ խրախճում էին և խոսում մեր սնանկության մասին։ Բայց մենք ասում էինք, որ յուրաքանչյուր փորձ, թեկուզ մի քիչ, թեկուզ մազ անգամ, ձախ լինել Կենտկոմից՝ հիմարություն է և ով Կենտկոմից ավելի ձախ է, նա արդեն կորցրել է պարզ ողջախոհությունը։ Մենք թույլ չենք տա մեզ վախեցնել այն բանով, որ թշնամին հրճվում է մեր սայթաքումներով» (էջ 282)։

Լենինը սովորեցնում էր պարտիական աշխատողներին, որ նրանք միշտ պետք է հանդիսանան մեր պրակտիկ գործունեության մեջ տեղ գտած սխալների ու թերությունների վերհանման նախահարձակները։ Մեր պարտիայի մեջ միշտ էլ ուղղել ենք ձախ սխալները, գրում է Լենինը, նույնիսկ առանց որևէ պառակտման։ Բայց եթե վճռական մոմենտին արիությունն է պակասում, ապա դա արդեն սխալ չէ, այլ դավաճանություն (էջ 283)։ Պարտիայի պարտքն է ժամանակին նկատել սխալները և շտկել դրանք։

Աշխատավորների ձայնը լսելու, նրանց գանգատներին լուծում տալու, նրանց առօրյա հոգսը քաշելու հուզիչ օրինակներ է տվել Լենինը։ Նա հաճույքով է ընդունում ՀԿԳԿ անդամ, անպարտիական գյուղացի Իվ. Պետրուշկինին, Ա. Շապոշնիկովին և շատ ուրիշների ու խորհրդակցում նրանց հետ «կարևոր գործերի» շուրջը (էջ 202—203, 366)։ Միջնորդում է կարմիրբանակային Կ. Եմելյանովին Ռազմա-ինժեներական ակադեմիայում սովորելու, իր բարեկամ Բոնչ-Բրուևիչին սրտառուչ ցավակցական նամակ է հղում վերջինիս կնոջ մահվան առթիվ, հեռագրում է Կազան, որպեսզի պրոֆեսոր Ադորատսկուն ապահովեն դասախոսություններով, մթերաբաժնով և վառելափայտով, Երբ իմանում է, որ հիվանդանոցների հիվանդները վատ են սնվում, գրում է Կենտկոմի կազմբյուրոյին, որպեսզի որոշում ընդունվի հիվանդներին դիետային սնունդ տալու վերաբերյալ և թույլ տրվի ազատ շուկայից մթերքներ գնելու ցինգայով տառապողների համար (էջ 128—129)։ «Տանջված» ռևոլյուցիոներ Պ. Լեպեշինսկին, որն «արժանի է բնակարան ստանալու», ստանում է Լենինի դրական կարգադրությունը (էջ 183)։ Նկատելով, որ Պետպլանի նախագահ Կրժիժանովսկու առողջությունը քայքայված է, միջնորդում է Կենտկոմի

կազմբյուրոյին, որպեսզի նրան և Կրասինին Ռիգա ուղարկեն մեկ ամսով բուժվելու (էջ 313)։ Միջնորդում է Կենտկոմի Քաղբյուրոյի առջև՝ Մ. Գորկուն լիակատար հնարավորություն ստեղծել արտասահմանում բուժվելու համար (էջ 373)։ Աշխատանքում գերհոգնած Ցյուրուպային արգելում է օրեկան 4 ժամից ավելի աշխատել՝ բժիշկների խորհրդի հիման վրա (էջ 403)։ Հետևում է, որպեսզի Ստալինը, Ստրումիլինը և ուրիշ երևելի գործիչներ բնակարան ունենան, որպեսզի Լալայանցը տեղավորվի Սիբիր մեկնող վագոնում, որպեսզի Բելա-Կունի և նրա կնոջ համար Շվեյցարիայում բուժման ու հանգստի լավ պայմաններ ստեղծվեն (էջ 473)։

Լենինը գրում է Կենտկոմ, թե Սկվորցով-Ստեպանովը մեծարժեք աշխատող է, եթե բուժվի, հույժ օգտակար կլինի (էջ 487)։ Նա չի մոռանում, որ իրեն բուժող վիրահատ Վ. Ռոզանովը ունի հանգստի կարիք և միջնորդում է նրան ու որդուն Ռիգա հանգստի ուղարկելու համար (էջ 490)։ Անձնվեր ռևոլյուցիոներ Երմակովին, որը ծանր հիվանդ է, օգնում է մի քանի ամսով բուժվելու Գերմանիայում (էջ 499)։

1922 թվականի գարնանը բժիշկները խորհուրդ էին տվել Լենինին երկարատև հանգիստ առնել լեռնային թարմ օդի պայմաններում։ Իմանալով այդ մասին, Կամոն Լենինին նամակով խնդրել էր իրեն հետը վերցնել՝ նրա կյանքի պահպանման և տեղում այլ բաներում օգնելու համար։ Ժողովածուի 468 էջում կարդում ենք Լենինի նամակը Ս. Օրջոնիկիձեին, գրված 1922 թվականի ապրիլի 8-ին։ «Ընկեր Սերգո։ Շնորհակալություն նամակի համար։ Կամոն խնդրում է իրեն վերցնել ինձ հետ։ Ես չէի առարկի։ Բայց կուզենայի Ձեր կարծիքն իմանալ։ Եթե Դուք դեմ չեք, ասեք նրան իմ կողմից, որ ես համաձայն եմ (և որ ամեն ինչ գաղտնի է)։ Եթե Դուք դեմ եք, ինձ վաղը զանգահարեք»։

Միշտ և ամենուրեք, այդպես բարի և սրտացավ էր Լենինն աշխատավոր մարդկանց նկատմամբ։ Այն ամենը, ինչ հրապարակված է այս ժողովածուի մեջ, բավական է, որպեսզի ընթերցողները մտավորապես կերտեն պարտիայի մեծ առաջնորդի հմայիչ կերպարը։

Ինտերվենցիայի և քաղաքացիական կռիվների դաշտերում հրանոթների ու գնդացիրների որոտները դեռ չէին լռել։ Ռուսաստանը տակավին գտնվում էր վաղ արշալույսի աղջամուղջում։ Սովետական իշխանությունը դեռ երեք տարեկան դյուցազն էր։ Սակայն Լենինը գիտեր, որ կոմունիստները կհաղթեն համաշխարհային մասշտաբով։ Ուրեմն, ժամանակն է ռևոլյուցիայի տարեգրությունը կազմել։ Այդ նպատակով նա հանձնարարում է պատրաստված մարքսիստ Ադորադսկուն գրելու ռևոլյուցիոն անցքերի պատմությունը։

## ԱՌԱՋԱՎՈՐ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԻՈՆԵՐԸ

Հոկտեմբերյան ռևոլյուցիան հիմն ի վեր սասանեց հին աշխարհը։ Լենինյան մտքի փայլատակումները ճեղքելով միջազգային թխպած երկնակամարը, ուժգնորեն լուսավորեցին իմպերիալիզմի որջերն ու դիաբուրգերը։ Ջառամյալ կապիտալիզմը խոր մռնչյունով ծառս եղավ Լենինի խաղաղ գործունեության դեմ։ Սակայն թշնամու սրերը փշրվեցին, թնդանոթները լռեցին և իմպերիալիզմի վարձկան բանակները մազապուրծ փախան։ Լենինի ստեղծած Կարմիր Բանակը խաղաղ կյանքի սկիզբը դրեց։ Աշխարհի բոլոր մասերում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ցոլքերը նոր հրդեհներ առաջ բերին։ Դրա համար էլ մեծ պոետը իրավունք ուներ ասելու.

Օրերն ու գիշերները գալիքներով են բեղմնավոր։
Օ՜, իմաստուն, մարգարեակա՜ն տարիներ...

Ռևոլյուցիայի դարաշրջանում շովինիզմի ճահճում խեղդվեց բուրժուական կարգերի պաշտպան Երկրորդ Ինտերնացիոնալը։ Համաշխարհային պրոլետարիատի ռևոլյուցիոն իղձերի միակ թարգմանը Լենինի համախոհները՝ կոմունիստները հանդիսացան։ Իմպերիալիզմի դեմ արթնացած գաղութային



ժողովուրդների մշտական զորավիգը Լենինի ստեղծած Սովետական պետությունը դարձավ։ Համաշխարհային կոմունիստական շարժումը վարելու համար Լենինը կազմակերպեց Երրորդ Ինտերնացիոնալը, որը շարունակեց Մարքսի ու Էնգելսի գործը, համաշխարհային կոմունիզմի հաղթության գործը։

Մինչև իր կյանքի վերջին շունչը Լենինը ապրում էր միջազգային սոցիալիստական ռևոլյուցիայի այրող հարցերով։ Նա սովորեցնում էր, որ այժմ այդ ռևոլյուցիայի վրա Սովետական Միությունը պետք է ներգործի գերազանցապես իր տնտեսական նվաճումներով։ Ռևոլյուցիոն շարժման թեժ օրերին, Լենինը գրում է Հունգարական կոմունիստական պարտիայի ղեկավար Բելա Կունին, թե անհրաժեշտ է գործադրել բոլոր ջանքերը հաղթության համար։

1921 թվականին Լենինը խնդրում է կոմունիստ Բորոդինին իրեն նյութեր ուղարկել ԱՄՆ-ի Հյուսիսային Դակոտա նահանգում հաղթանակ տարած բանվորա-ֆերմերական պարտիայի մասին։ Խորհուրդ է տալիս Կլարա Ցետկինին սիստեմատիկ պայքար ծավալել Գերմանական կոմպարտիայի ներսում եղած ձախերի դեմ։ Առանձին հետաքրքրությամբ էր Լենինը հետևում Եվրոպայի ռևոլյուցիոն շարժման ընթացքին և նյութեր էր հավաքում Ֆրանսիայի, Իտալիայի և այլ երկրների ռևոլյուցիոն շարժման վերաբերյալ։ Հանձնարարում է ավելի շատ նյութեր հավաքել Հնդկաստանի և նրա ռևոլյուցիոն շարժման վերաբերյալ, շեշտելով, որ անհրաժեշտ է Հնդկաստանի ընկերներին շատ տպագրել։ 1922 թվականին մի ջերմ նամակով հավանություն է տալիս իտալական սոցիալիստական պարտիայի լիդեր Լացարիին՝ Կոմինտերնին միանալու մտադրության համար (էջ 518)։

Համաշխարհային ռևոլյուցիայի հեռանկարները սքանչելի են, գրում է Լենինը։ Այժմ անհրաժեշտ է ռևոլյուցիոն ուժերի միասնական ֆրոնտ կապիտալի տիրակալությունը տապալելու համար։ «Միասնական ֆրոնտի տակտիկայի նպատակն ու իմաստն այն է, որ կապիտալի դեմ մղվող պայքարում ավելի և ավելի շատ բանվորական զանգվածներ ներգրավվեն» (էջ 461)։ Այս ոգով գրված Լենինի առաջարկը ամբողջովին մտցվում է պարտիայի XI համագումարի բանաձևում։ 1922 թվականի փետրվարի 1-ին Լենինը հանգամանալի մի հրահանգ է գրում մեր պարտիայի այն դելեգացիայի համար, որը կոչված էր մասնակցելու Երկրորդ, Երկուս ու կես և Երրորդ Ինտերնացիոնալների միացյալ կոնֆերենցիային։ Այդ տակտիկական պլատֆորմում հատուկ գունեղությամբ երևում է Իլյիչի ճկուն ու պայծառ միտքը, որի համար երբեք անելանելի վիճակ չկար (էջ 419)։ Լենինյան այդ փաստաթուղթը Կոմունիստական պարտիայի իմաստուն տակտիկայի լավագույն օրինակներից մեկն է։

Միջազգային պրոլետարիատի ջոկատների մեծ օգնությունը սոցիալիստական մեր Հայրենիքին, խոր ուրախություն էր պատճառում Լենինին։ Այս առթիվ մի շարք ուսանելի և սրտառուչ փաստաթղթեր կան ժողովածուում։ Նա մեծ նշանակություն էր տալիս Ռուսաստանին տեխնիկական օգնություն ցույց տվող Ամերիկյան ընկերության նախաձեռնությանը, Սովետական Ռուսաստան տրակտորներ ուղարկելու վերաբերյալ։

Սոցիալիստական ռևոլյուցիան աշխարհով մեկ ծավալվեց և նրա շնորհիվ, որ Կոմունիստական պարտիան Լենինի ղեկավարությամբ ճիշտ լուծեց ազգային-գաղութային հարցը։ 20-րդ դարի առաջին հիսնամյակի պրոգրեսիվ շարժումներն աշխարհի բոլոր երկրներում այս կամ այն ձևով Լենինի գաղափարների դրոշմն են կրում։ Իմպերիալիզմի դարավոր գաղութային սիստեմի փլուզումը ընթացավ և շարունակում է ընթանալ այն լուսարձակի ներքո, որը վառեց Լենինի պարտիան Հոկտեմբերյան օրերին։ Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի երկրներում ընթացող ազգային-ազատագրական մարտերը անկասկած անմիջական արձագանքն են Հոկտեմբերի որոտների։ Մարդկության մեկ երրորդ մասի սոցիալիստական ուղիով ընթանալը մեծապես Լենինի հանճարի և նրա կազմակերպած Կոմունիստական պարտիայի ստրատեգիայի արդյունքն է։

Իր ռևոլյուցիոն գործունեության սկզբից մինչև կյանքի վերջին ամիսները

Լենինը խոր ուշադրություն էր դարձնում ազգային հարցին՝ որպես իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի կարևորագույն պրոբլեմներից մեկը։ Ժողովածուն հարուստ նյութեր ունի այդ պրոբլեմի վերաբերյալ։

1918 թվականին Լենինը հեռագրում է Գլխավոր հրամանատար Անտոնովին՝ խստորեն պահպանել ռումինական կառավարության հարուստ պահեստները «որպեսզի ռումինական կոնտրռևոլյուցիայի կործանումից հետո դրանք լրիվին հանձնվեն ժողովրդի տնօրինությանը» (էջ 28)։ Ահա ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի որոշման նախագիծը, գրված Լենինի ձեռքով, որում նա հանձնարարում է Թուրքեստանի կառավարությանը մի շարք միջոցառումներ իրագործել ազգային անհավասարությունները վերացնելու նպատակով (էջ 106)։ Մի այլ, Լենինի կազմած նախագիծ (ընդունված Կենտկոմի Քաղբյուրոյի կողմից), որի հիման վրա ընդունված որոշումը պահանջում է խիստ հետաքննություն սկսել այն չարաշահումների և բռնությունների դեմ, որոնք տեղի են ունեցել արևելյան ժողովուրդների, հատկապես, կալմիկների և բուրյաթ-մոնղոլների հանդեպ։ Որոշումը անհրաժեշտ է համարում ավտոնոմիա կիրառել արևելյան ազգությունների մոտ։

1920 թվականի նոյեմբերի 27-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոն Լենինի ձեռքով գրած որոշում է ընդունել, Բաքուն մատակարարել 100 տոկոսով, Ադրբեջանում մեղմացնել պարենհարկի քաղաքականությունը, Հայաստանի, Վրաստանի նկատմամբ վարել առավելագույն խաղաղ քաղաքականություն (էջ 144)։ Ազգությունների նկատմամբ նույն բարեկամական և զգուշության ոգով է գրված Լենինի 1921 թվականի մի նամակը, որում նա խորհուրդ է տալիս մի շարք զիջումներ անել մուսուլմանական չքավորներին։ «Կարելի է և պետք է զուգակցել և ամրապնդել իմաստուն, զգույշ գիծը, որը չի խախտում մեր «համաշխարհային քաղաքականության» շահերը ամբողջ Արևելքում» (էջ 306)։ Ազգային հարցը Լենինը դիտում էր որպես համաշխարհային հարց և դրա համար էլ գրում էր. «Մեր ողջ համաշխարհային քաղաքականության համար հրեշայնության չափ կարևոր է նվաճել բնիկների վստահությունը. նվաճել եռակի, քառակի. ապացուցել, որ մենք իմպերիալիստներ չենք, որ մենք այդ ուղղությամբ որևէ թ ե ք ո ւ մ չ ե ն ք հանդուրժի։ Դա համաշխարհային, առանց չափազանցության համաշխարհային հարց է։ Այստեղ հարկավոր է գերխիստ լինել։ Դա կանդրադառնա Հնդկաստանի, Արևելքի վրա, այստեղ կատակել չի կարելի, այստեղ հարկավոր է 1000 անգամ զգույշ լինել» (էջ 320—321)։

Լենինյան այս իմաստուն քաղաքականության փայլուն կիրառումով Սովետական իշխանությունը կարճ ժամանակամիջոցում ստեղծեց ազգությունների եղբայրական հզոր ընտանիք։ Այդ քաղաքականության հետևանքով սոցիալիստական հզոր լագերը կանգնած է պրոլետարական ինտերնացիոնալիզմի անառիկ դիրքերում։

Պատրաստելով և խնամքով հրապարակելով լենինյան հարուստ ժառանգության XXXVI ժողովածուի նոր նյութերը, ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի գիտական կոլեկտիվը խոշոր և շնորհակալ գործ է կատարել։ Լենինյան այս նոր ժողովածուն անպայման կդառնա սովետական ընթերցողի սեղանի զարդը, պարտիական և պետական աշխատողի լավագույն խորհրդատուն։

Ա. ԱԴՈՅԱՆ

---



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

**Ս. ԹՈՒՄԱՆՅԱՆ**

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

Բուռն վերելք է ապրում ռեսպուբլիկայի էկոնոմիկան առհասարակ և նրա արդյունաբերությունն, առանձնապես։ Միայն անցած երկու տարիներին կապիտալ ներդրումներն արդյունաբերության մեջ կազմեցին շուրջ 1,5 միլիարդ ռուբլի։ Խոշոր նվաճում պետք է համարել և այն, որ վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յուրացրեց ավելի քան 200 նոր տեսակի արտադրանք և գործարկվեցին երեք տասնյակից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ։

Տվյալ ժամանակաշրջանի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ արդյունաբերության զարգացման տեմպերն ավելի բարձր են նախորդ տարիների համեմատությամբ։ Յոթնամյակի առաջին տարվա աճման տեմպերը զգալիորեն գերազանցում են յոթնամյա պլանով նախատեսված կոնտրոլ թվերին։ Եթե ժողտնտխորհի ենթակայության արդյունաբերության գծով արտադրության միջին աճը 1956—1957 թվականներին կազմում էր 9,5 տոկոս, ապա 1958—1959 թվականներին այն կազմում էր 12 տոկոս. այդ թվում՝

| Արդյունաբերության ճյուղեր | Միջին աճը տոկոսներով | |
|---|---|---|
| | 1956—1957 թթ. | 1958—1959 թթ. |
| Գունավոր մետալուրգիա . . . . | 4,5 | 13,5 |
| Քիմիական արդյունաբերություն . . . | 15,0 | 23,0 |
| Էլեկտրատեխնիկական արդյունաբերություն . | 20,0 | 22,0 |
| Շինանյութերի արդյունաբերություն . . | 6,0 | 13,0 |
| Թեթև արդյունաբերություն . . . . | 5,5 | 9,0 |

Այսպիսով, թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալում մեծացել է արդյունաբերության այնպիսի ճյուղերի տեսակարար կշիռը, ինչպիսիք են՝ հաստոցաշինությունն ու ճշգրիտ մեքենաշինությունը, քիմիական և գունավոր մետալուրգիան, որոնց արտադրանքը համամիութենական նշանակություն

ունի։ Ռեսպուբլիկայում նշանակալից չափով զարգացել են ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, մետաղակերամիկան և էլեկտրոնիկան։ Մեծ աշխատանք է կատարված արտադրության տարբեր ճյուղերի մասնագիտացման և ռեսպուբլիկայի արդյունաբերության տարբեր բնագավառների ընդարձակ կոոպերացման ուղղությամբ։

Ինչպես տեսնում ենք, արդյունաբերության բուռն վերելքի այս ցուցանիշները խոսում են այն մասին, որ մեր տնտեսության զարգացման կարևորագույն հարցերը չի կարելի լուծել առանց ըմբռնելու այն որակական փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Ընդհանուր աճման և տեխնիկական-տնտեսական ցուցանիշների բարելավման հետ միասին տեղի են ունեցել որակական լուրջ փոփոխություններ արդյունաբերության զարգացման ընդհանուր ուղղության, մի շարք նոր շինվածքների արտադրության, ավտոմատ կարգավորիչներ ունեցող կատարելագործված բարձր արտադրողական մեքենաների և ապարատների յուրացման բնափավառներում։

Անցած տարիների ընթացքում գունավոր, քիմիական և արդյունաբերական մյուս ճյուղերի արտադրանքը տեղերում վերամշակման, ռեսպուբլիկայի հումքային հնարավորությունների առավել լավ օգտագործման հաշվին զգալիորեն ավելացել է (նախատեսվում է հետագայում ավելի մեծացնել) մի շարք այնպիսի մեքենաների, սարքերի, կաբելային և այլ իրերի արտադրությունը, որոնք ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեն։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացումն ընթացել է տեխնիկական պրոգրեսի զարգացման բազայի վրա, որը հատկապես մեծ թափ ստացավ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումից հետո։

Ինչպես ողջ ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի, այնպես էլ արդյունաբերության բնագավառի մեր խոշոր հաջողությունները նախ և առաջ արդյունք են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության, պարտիական կազմակերպությունների կողմից տեղերում տարվող այն մեծ կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի, որ նրանք վարում են յուրաքանչյուր գործարանի, ֆաբրիկայի, կառույցի ունեցած ռեզերվների հայտաբերման և օգտագործման ուղղությամբ, կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնությունն ի սպաս դնելով յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելուն։

Մեր ռեսպուբլիկայի բազմաճյուղ արդյունաբերության զարգացման արագ տեմպերը պահանջում են ստեղծագործական մոտեցում և գոյություն ունեցող ռեսուրսների առավել արդյունավետ ուղիների որոնում։

Վերջին տարիներում արդյունաբերության վերելքին ընթացակցեց և գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոների, փորձնական լաբորատորիաների սոլիդ ցանցի կազմակերպումը։ Ժողտնտխորհի սիստեմում գործող Անօրգանական քիմիայի և Լեռնա-մետալուրգիական ինստիտուտները, Նախագծային ինստիտուտը, Մեքենաշինության հատուկ կոնստրուկտորական տեխնոլոգիական բյուրոն, Փայտամշակման արդյունաբերության կոնստրուկտորական բյուրոն, Համամիութենական էներգամեխանիկական գիտա-հետազոտական ինստիտուտի Հայկական ֆիլիալը և բազմաթիվ այլ գիտական հաստատություններ ռեսպուբլիկայի ձեռք բերած լուրջ նվաճումների մարմնացումն են։ Բավական է հիշատակել, որ ռեսպուբլիկայում առ այսօր արդյունաբերության անմիջականորեն սպասարկող գիտա-հետազոտական և ինժեներա-տեխնիկական կադրերը կազմում են ավելի քան 2202 մարդ։ Այստեղ չեն մտնում ռեսպուբլիկայի Ակադեմիայի, մինիստրությունների և այլ գերատեսչությունների գծով գործող ինստիտուտների գիտական կադրերը։ Գիտա-տեխնիկական այս սոլիդ բանակը ի վիճակի է ավելի մեծ արգասավորությամբ սպասարկելու արդյունաբերության բոլոր ճյուղերը։

Ինչպես ճիշտ նշվեց ՀԿՊ XXI համագումարում, վերջին տարիներում լուրջ նվաճումներ կան ռեսպուբլիկայի արդյունաբերությանն սպասարկող գիտա-հետազոտական և կոնստրուկտորական բազայի ընդարձակման ասպարեզում. երկու և կես անգամից ավելի աճել է նրա գիտական և ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը, ավելի բարձրացել է նրանց դերը տընտեսության զարգացման գործում։ Դրա ապացույցն են պոլիվինիլային սպիրտի հիման վրա նոր սինթետիկ թելի ստացումը, լեռնային ապարներից ապակի, ապակու թել և կիսահաղորդիչներ ստանալու նպատակով ընթացող հաջող հետազոտությունները, մի շարք ուժային տրանսֆորմատորներ, սինխրոնային շարժիչներ և գեներատորներ, շարժական նոր էլեկտրակայաններ և բազմաթիվ այլ նոր կատարելագործություններ, որոնք իրենց փայլուն արդյունքներն են տվել կյանքում։

Արդյունաբերության նոր ճյուղերի զարգացման խոշոր նվաճումները հնարավոր դարձան միայն պարտիական կազմակերպությունների թափած մեծ կազմակերպական ջանքերի շնորհիվ, նոր գիտա-հետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և կոնստրուկտորական բյուրոների ստեղծման և հների ընդլայնման շնորհիվ։ Կազմակերպված նոր ինստիտուտներում, լաբորատորիաներում և կոնստրուկտորական բյուրոներում աշխատանքի են ուղարկվել արտադրության բովից անցած ինժեներա-տեխնիկական կադրեր, որոնք ձգտում են իրենց գիտելիքներն ու փորձը ի սպաս դնել արտադրության զարգացման և կատարելագործման նպատակին։ Նրանց աշխատանքն ընթացել է ձեռնարկությունների պրակտիկ աշխատողների հետ սերտ կապի և ակտիվ մասնակցության պայմաններում։ Բոլոր լավագույն ձեռնարկումները անհրաժեշտ պաշտպանություն են գտել և խրախուսվել պարտիական կոլեկտիվների, սովետական կազմակերպությունների կողմից։

Լիովին գնահատելով ինստիտուտների, լաբորատորիաների և կոնստրուկտորական բյուրոների տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ կատարած խոշոր աշխատանքները, մենք չենք կարող անտեսել նրանց գործունեության մեջ տեղ գտած մի շարք լուրջ թերությունները ու բացերը։ Սխալ կլիներ գիտա-հետազոտական հաստատությունների կատարած լավ մշակումների ետևում չտեսնել, որ նրանցից մի քանիսը (Մաթեմատիկական մեքենաների ինստիտուտը, Կիրովականի ավտոմատիկայի գիտա-հետազոտական ինստիտուտը, Հայաստանի Պետշինի շինանյութերի և կառուցվածքների ինստիտուտը) աշխատանքի վատ կազմակերպման և թեմատիկայի անհաջող ընտրության հետևանքով աշխատում են իրենց հնարավորություններից պակաս լարվածությամբ և խախտում են մի շարք կարևոր մշակումների կատարման ժամկետները։ Դեռևս դանդաղ և ոչ նպատակասլաց են ընթանում գիտա-հետազոտական աշխատանքները Կիրովականի քիմիական կոմբինատի և «Պոլիվինիլացետատ» գործարանի կենտրոնական լաբորատորիաներում։

Նոր արժեքավոր պոլիմերային նյութերի արտադրության գծով մի շարք տեխնոլոգիական լավ սխեմաների մշակումից հետո որոշակի լճացում է նկատվում Կիրովի անվան գործարանի գիտա-հետազոտական մեծ լաբորատորիայի աշխատանքում։ Դեռևս չի զգացվում Կաուչուկի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի Երևանի ֆիլիալի դերն այն մեծ պրոբլեմների լուծման գործում, որոնք այս յոթնամյակում ծառանում են Կիրովի անվան գործարանի առջև։

Համագործակցված չեն աշխատում Ժողտնտխորհի Մեքենաշինության վարչության կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոները (պետ ընկ. Շատվորյան) Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանի (դիրեկտոր ընկ. Մնացականյան) կոնստրուկտորական բյուրոյի և ղեկավարության հետ։ Ժողտնտխորհի Անօրգանական քիմիայի ինստիտուտը՝ Քանաքեռի ալյումինի գործարանի փորձնական արտադրության հետ, որի հետևանքով սաստիկ ձգձգվեցին Ձերժինսկու անվան գործարանում թողարկվող հաստոցի մոդեռնացումը, մի շարք տվյալների ժամանակին հանձնումը Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի նախագծի ճշտման համար և այլն։

Ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների աշխատանքի վրա բացասաբար է անդրադառնում նրանց փորձնական բազաների թուլությունը։ Սակայն մեր նշած թերությունների մեծ մասը աճման թերություններ են, որոնք կարելի է հաղթահարել մի շարք կազմակերպական միջոցառումներով և, որ ամենագլխավորն է՝ գիտական կադրերի բարեխիղճ ընտրությամբ։

Արդյունաբերության սպասարկող գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքի վրա բացասաբար է անդրադառնում նաև դրանց միջին օղակի՝ բաժինների և սեկտորների ղեկավար աշխատողների անբավարար փորձվածությունը, որի հետևանքով հաճախ պատշաճ նպատակասլացություն չի ապահովվում երիտասարդ գիտական աշխատողների և կոնստրուկտորների ղեկավարության ասպարեզում։ Այս երևույթի հետևանքով երիտասարդ կադրերը հաճախ մշակում են ոչ ակտուալ թեմաներ, որն ինքնին արգելակում է նրանց ստեղծագործական աճը։

Եթե բավարար կարելի է համարել գիտա-հետազոտական և կոնստրուկտորական հաստատությունների զարգացման ուղղությամբ տարված աշխատանքը ծանր արդյունաբերության ճյուղերում, ապա շատ քիչ բան է արված այդ ուղղությամբ սննդի և թեթև արդյունաբերության ճյուղերում, որոնց արտադրության ծավալը ռեսպուբլիկայում ունի մեծ տեսակարար կշիռ։

Գիտա-հետազոտական աշխատանքի անբավարար դրվածքն իր արտացոլումն է գտել նշված ճյուղերի զարգացման տեխնիկական մակարդակի համեմատաբար դանդաղ բարձրացման մեջ, ներդրված սարքավորումների մոդեռնացման, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, գործող ձեռնարկությունների արտադրական հնարավորությունների առավել լրիվ օգտագործման, բարձրորակ գործվածքեղենի, հագուստեղենի, կոշկեղենի և սննդամթերքների նոր ասորտիմենտի ստեղծման ուղղությամբ կատարվող անբավարար աշխատանքում։

Այս աննորմալ վիճակը կարելի է բացատրել, նախ և առաջ, տեխնիկական պրոգրեսի հարցերի նկատմամբ այն անբավարար ուշադրությամբ, որ հանդես են բերում արդյունաբերության տվյալ ճյուղերի ձեռնարկությունների դիրեկտորները և գլխավոր ինժեներները, որոնցից մի քանիսը, չունենալով



համապատասխան պատրաստականություն, ետ են մնացել այսօրվա պահանջներից և շարունակում են աշխատել հին ձևերով։ Մինչ արդյունաբերության այդ ճյուղերի վարչությունների ղեկավարները անհրաժեշտ հաստատակամություն և նախաձեռնություն չեն ցուցաբերում այդ թերության վերացման նպատակով։

Սննդի արդյունաբերության ձեռնարկությունների մեծ մասում՝ պահածոների, գարեջրի գործարաններում, հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում գոյություն ունեն վարչական և ցեխային կառավարման անձնակազմի շատ հաստիքներ և այդ ձեռնարկությունների դիրեկտորների կողմից անհրաժեշտ նախաձեռնություն ցուցաբերելու դեպքում կառուցվածքի որոշակի պարզեցման հաշվին կարելի կլիներ, թեկուզ սկզբում, գործարանային լաբորատորիաներին կից կազմակերպել հետազոտողների խմբեր։

Արզնու հանքաջրերի գործարանը, որը տեղավորված է մի փոքրիկ կորպուսում, բաղկացած է մի շարք ցեխերից, որոնց ղեկավարման կառուցվածքը դիմագրկում է արտադրության ղեկավարներին։ Դրա հետևանքով և վարչակառավարչական անձնակազմի շատության պատճառով գործարանում ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողներն ավելի շատ են, քան բանվորները։ Հատկանշական է, որ նույնիսկ ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների հաստիքային այդպիսի շատ միավորների առկայության դեպքում, գործարանի դիրեկտոր ընկ. Սարգսյանը հարկ չի համարել թեկուզ մի ինժեներ ունենալ (կամ տեխնիկ-կոնստրուկտոր), որպեսզի վերջինս կազմի լցնող մեքենայի արագ մաշվող դետալների գծագրերը և պատվերներ ներկայացնի մեքենաշինական գործարաններին։ Սարքավորման խնամքի նկատմամբ նման վերաբերմունքի հետևանքով, լցնող ավտոմատներն արդեն շարքից դուրս են եկել և գործարանն անցյալ տարի թերակատարել է իր արտադրական պլանը։

Այս իմաստով դրությունը մխիթարական չէ գարեջրի № 1 գործարանում (դիրեկտոր ընկ. Կարապետյան) և № 2 գործարանում (դիրեկտոր ընկ. Մնացականյան), ուր յուրաքանչյուր երեք բանվորին (իսկ Ալավերդու գարեջրի գործարանում՝ ամեն մի բանվորի) ընկնում է մեկ ինժեներա-տեխնիկական աշխատող կամ ծառայող։ Եվ այս այն ժամանակ, երբ ոչ ոք լուրջ կերպով չի զբաղվում արտադրվող գարեջրի որակի բարելավման հարցով, արտադրության առավել ռացիոնալ ռեժիմի սխեմաների մշակմամբ։

Անհրաժեշտ է, որպեսզի Ժողովրդական տնտեսության խորհուրդը ընդհուպ զբաղվի թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունների ղեկավարման տեխնիկական մակարդակի բարձրացման հարցերով, խոշոր ձեռնարկություններում և նրանց վարչություններին կից ստեղծի հետազոտական լաբորատորիաներ և կոնստրուկտորական խմբեր։ Միաժամանակ անհրաժեշտ է թեթև արդյունաբերության նոր իրերի թողարկման մշակման գործում ակտիվորեն ներգրավել ռեսպուբլիկայի նկարիչներին և գեղազարդողներին։ Ժամանակ է, որպեսզի Ժողտնտխորհը պրոգրեսիվ տեխնոլոգիական սխեմաների մշակմամբ և կիրառմամբ արագ կերպով մոդեռնացնի ներդրված սարքավորումները, ստեղծի հարմարավետ ու գեղեցիկ մոդելներ կոշկեղենի, գործվածքեղենի, հագուստեղենի արտադրության մեջ և ավելի բարձրացնի թողարկվող սննդամթերքների որակը։

Առաջիկա տարիներում ռեսպուբլիկայում ավելի կաճի գիտա-հետազոտա-

կան և կոնստրուկտորական աշխատանքի ծավալը։ Կավելանան այդ նպատակով արվող հատկացումները, կստեղծվեն նոր ինստիտուտներ, լաբորատորիաներ և կոնստրուկտորական բյուրոներ։ Այս դեպքում բնականաբար ավելի կբարձրանա գիտահետազոտական հաստատությունների գործունեության նկատմամբ պարտիայի շրջկոմների և քաղկոմների ղեկավարության մակարդակը, նրանց վճռական դերը։ Հենվելով սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա, շրջկոմները-քաղկոմները պետք է ավելի խոր թափանցեն դրանց գործունեության մեջ և օգնեն այդ կազմակերպություններին գիտական աշխատողների ճիշտ ընտրության, դաստիարակության և պլանների անթերի կատարման գործում։

Առաջիկա տարիներին Ժողտնտխորհի վարչությունները, ինչպես և ռեսպուբլիկայի գիտական հիմնարկությունները լրջորեն պետք է զբաղվեն ինստիտուտների միջև գիտա-հետազոտական աշխատանքների կոորդինացման հարցերով, նրանց պլանները շաղկապելով ժողովրդական տնտեսության զարգացման ակտուալ հարցերի հետ, ապահովելով տեխնիկական ինֆորմացիայի բարձր դրվածքը։

Չի կարելի նորմալ համարել, երբ Ժողտնտխորհի տեխնիկա-տնտեսական խորհրդի որոշ սեկցիաներում, պետական գիտական տեխնիկական կոմիտեի սեկցիաներում, Գիտությունների ակադեմիայի կոորդինացնող խորհրդում և գիտա-տեխնիկական ընկերություններում գործում են համատեղության կարգով միևնույն աշխատողները։ Գործունեության այդ ձևը չի կարող տալ սպասվող արդյունքը։ Անհրաժեշտ է գիտական աշխատանքի բոլոր օղակներում ներգրավել նոր և ունակ կադրեր, որոնք զբաղվեն տվյալ արտադրության տարբեր հարցերով, տարբեր պրոբլեմներով։

Արդյունաբերության տեխնիկական պրոգրեսն առաջ մղելու համար ամենից առաջ անհրաժեշտ է գիտակցել, որ ռեսպուբլիկայում գործող ներկա գիտահետազոտական և կոնստրուկտորական, լաբորատորիական ցանցի վիճակը մեծապես ետ է մնում արդյունաբերության բարդ ու նոր պահանջներից։ Սրա գլխավոր պատճառն այն է, որ արդյունաբերության մեր որոշ ղեկավար աշխատողներ դեռևս չեն վարժվել արտադրական ոլորտի մեջ առնելու և նրա գիտական բազան։ Արտադրական պլանների կատարման ընթացքում նրանք հաճախ և երկար ժամանակ մոռանում են, որ զարգացման ներկա ժամանակաշրջանում արդյունաբերության պրոգրեսը հնարավոր չէ առանց գիտա-տեխնիկական մտքի ամենօրյա կատարելագործման։ Բայց, ինչպես երևում է, այդպես չեն խորհում Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ղեկավարները, որոնք վերջերս էր, որ առանց որևէ լուրջ հիմքի կրճատեցին գործարանի նոր միայն կազմակերպված լաբորատորիայի 10 հաստիքները։ Բնորոշ է, որ դա արվեց այն ժամանակ, երբ Ժողտնտխորհը գործարանին տրամադրել էր լրացուցիչ հաստիքներ, հատկապես գիտատեխնիկական աշխատանքը բարելավելու նպատակով։ Դա արվեց այն ժամանակ, երբ գործարանը բազմաթիվ բողոքներ էր ստացել իր թողարկած հաստոցների լուրջ թերությունների համար։

Այս պրակտիկան խոսում է այն մասին, որ մենք ունենք դեռևս արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ, որոնք թերագնահատում են գիտության դերն ու նշանակությունը արդյունաբերության զարգացման գործում։



Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությանն սպասարկող գիտա-հետազոտական հիմնարկությունների աշխատանքում դեռևս նկատվում են տնայնագործության տարրեր։ Այստեղ կան և կազմակերպական կարգի շատ թերություններ ու չլուծված հարցեր։ Այդ բանը ցայտուն կերպով նկատվում է ռեսպուբլիկայի մեքենաշինության և հաստոցաշինության ճյուղերին սպասարկող գիտահետազոտական հիմնարկների և լաբորատորիաների աշխատանքի դրվածքում։ Նրանց սակավազորությունը և աշխատանքի նեղ դրվածքը երբեք չի ապահովում մեր մեքենաշինության բարդ խնդիրների լուծումը։

Այն հանգամանքը, որ յոթնամյակում ռեսպուբլիկան յուրացնելու է 50 նորագույն տիպի և չափի մետաղահատ հաստոցներ (որոնց տարեկան արտադրանքը կհասնի 16 հազարի), մեզ պարտավորեցնում է մեծապես ընդարձակել և բարելավել այժմ գործող գիտա-հետազոտական, կոստրուկտորական և փորձնական լաբորատորիաների ցանցը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության առջև հրամայաբար ծառացել են գործող ձեռնարկությունների լիակատար մոդեռնացման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, բազմաթիվ նոր արտադրանքների յուրացման, արտադրական պրոցեսների ավտոմատացման կենսական հարցերը։ Այդ հարցերի հաջող լուծումը թելադրում է մեզ ավելի բարձր մակարդակի վրա դնել ռեսպուբլիկայի գիտահետազոտական միտքը և նրա տեխնիկական բազան։ Դա նշանակում է ավելի մեծ մասշտաբներով և ավելի սիստեմատիկ կերպով կազմակերպել արդյունաբերության գիտական կադրերի գիտելիքների հարստացման և կատարելագործման աշխատանքը։ Արդյունաբերության նորագույն պրոցեսները պահանջում են հարատև բարձրացնել բանվորների տեխնիկական գինվածությունը և աշխատանքի արտադրողականությունը։ Ահա թե ինչու Ժողտնտխորհի և պետական այլ կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է լինի արդյունաբերության գիտական բազայի զարգացման հարցը։

Շարունակելով նոր գիտա-հետազոտական օջախների կազմակերպումը, մենք չպետք է մոռանանք, որ մեր պարտականությունն է առավել արդյունավետությամբ օգտագործել գոյություն ունեցող գիտա-հետազոտական ցանցը։ Խնդիրն այն է, որպեսզի առաջիկա տարիներում գոյություն ունեցող ինստիտուտներն ու լաբորատորիաները դառնան իրոք լիարժեք և տնտեսապես արդարացնեն իրենց գոյությունը։

Հաջողությամբ կիրառելով հայրենի և արտասահմանյան գիտության նվաճումները, մեր գիտական աշխատողները առավելագույն չափով կապահովեն արդյունաբերության և էկոնոմիկայի առջև ծառացած գիտական պրոբլեմների ճիշտ լուծումը։

Ինչպես արդյունաբերության, նույնպես և այն սպասարկող գիտա-հետազոտական հիմնարկների գործունեության բուռն զարգացումը նորանոր խնդիրներ է հարուցում պարտիական կազմակերպությունների առջև։ Պարտիական շրջկոմներն ու քաղկոմները ավելի խոր թափանցելով արդյունաբերության գիտա-տեխնիկական հիմնարկների գործունեության յուրահատկությունների մեջ, ավելի կոնկրետ և ավելի բազմակողմանիորեն կլուծեն մեր արդյունաբերության բարդ խնդիրները։ Եվ դա կլինի մեր արդյունաբերության բուռն զարգացման կարևորագույն գործոնը։

# ՍՍՌՄ ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

**Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

*Համաշխարհային երկու սիստեմների տնտեսական մրցության մեջ արտաքին առևտրի զարգացումը միջազգային լարվածության թուլացման և ժողովուրդների միջև բարեկամական հարաբերությունների ամրապնդման կարևոր գործոն է։ «Արտաքին առևտուրը,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— այն առողջ ու կայուն հիմքն է, որի վրա հաջողությամբ կարող է զարգանալ տարբեր սոցիալ-տնտեսական կարգ ունեցող պետությունների խաղաղ համագործակցությունը»։*

*Սովետական Միությունն իր արտաքին և արտաքին-առևտրական քաղաքականության մեջ միշտ հիմնվել է այն բանի վրա, որ սոցիալ-տնտեսական սիստեմների տարբերությունը ինքնին չի կարող արգելք հանդիսանալ ժողովուրդների միջև առևտրական հարաբերությունների ընդլայնմանը և զարգացմանը, քանի որ արտաքին առևտրի անհրաժեշտությունը պայմանավորված է արտադրության զարգացման և աշխատանքի միջազգային բաժանման օբյեկտիվ օրենքներով։*

*Ժողովուրդների միջև աշխատանքի բաժանումը, նրանց տնտեսական փոխադարձ կախվածությունը, իրենց հերթին հասարակության արտադրողական ուժերի զարգացման պատմական պրոցեսի արդյունք են։ Արտադրության բնական և պատմական պայմանների միջև եղած տարբերությունը, աշխատանքի արտադրողականության տարբեր աստիճանները, բանվոր դասակարգի արտադրական տրադիցիաների և ունակությունների զանազանությունը և այլն հասցնում են այն բանին, որ ոչ բոլոր երկրներում է տնտեսապես օգտավետ և նպատակահարմար թողարկել արտադրանքի միևնույն տեսակները։ Ապրանքափոխանակության միջոցով տարբեր երկրներ կարող են ավելի արտադրողաբար օգտագործել այն հնարավորություններն ու առավելությունները, որոնք ստեղծվում են աշխատանքի միջազգային բաժանման հիման վրա։*

*Սովետական պետության, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ժողովրդական դեմոկրատիայի երկրների առաջացումը և դրան համապատասխան սոցիալիստական տնտեսության համաշխարհային միասնական սիստեմի կազմվելը չի նշանակում, որ երկու սիստեմների միջև առևտրական կապերի վերականգնումը և զարգացումը սկզբունքորեն անհնար են։ Դեռևս 1922 թվականին Վ. Ի. Լենինը հաստատ համոզմունք էր հայտնում, որ առևտրական հարաբերությունների զարգացումը կապիտալիստական աշխարհի հետ անխուսափելի է։*

*Սովետական Միությունը, ելնելով իր անշեղ խաղաղասիրական քաղաքականությունից, հետևողականորեն հանդես է գալիս աշխարհի բոլոր երկրների հետ հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա տնտեսա-*



*կան կապերի լայն զարգացման օգտին։ Արտաքին առևտուրը նպաստում է մեր երկրի արտադրողական ուժերի զարգացմանը, բայց և միաժամանակ դրական ազդեցություն է թողնում կապիտալիստական տերությունների էկոնոմիկայի վրա։*

*Կապիտալիստական երկրները Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ առևտրական հարաբերությունների ընդլայնման միջոցով հնարավորություն են ստանում իրենց արդյունաբերությունն ապահովել նոր պատվերներով և զգալիորեն պակասեցնել իրենց ապրանքների վաճառահանման դժվարությունները։*

*Յոթնամյա հոյակապ ծրագիրը նոր, հզոր վերելք է նախատեսում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների համար և, միաժամանակ, լայն հեռանկարներ է ստեղծում արտասահմանյան երկրների հետ առևտրական հարաբերությունների հետագա զարգացման ուղղությամբ։ Տարեցտարի ընդլայնվում են Սովետական Միության արտաքին առևտրական կապերը արտասահմանյան պետությունների հետ։*

*Եթե 1946 թվականին Սովետական Միությունը առևտուր էր անում 40 երկրների հետ, ապա ներկայումս այդ երկրների թիվը անցնում է 70-ից։ 1958 թվականին Սովետական Միության արտաքին առևտրի ծավալը 6,9 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը և կազմեց 34,6 միլիարդ ռուբլի։ Եթե արտաքին-առևտրական շրջանառության ծավալով Սովետական Միությունը 1938 թվականին աշխարհում գրավում էր 16-րդ տեղը, ապա այժմ նա գտնվում է 6-րդ տեղում (ԱՄՆ-ից, Անգլիայից, ԳՖՌ-ից, Ֆրանսիայից և Կանադայից հետո)։*

ՍՍՌՄ արտաքին-առևտրական շրջանառությունը

*(միլիոն ռուբ. ընթացիկ գներով)*

| Տարեթվեր | 1938 | 1946 | 1950 | 1956 | 1958 |
|---|---|---|---|---|---|
| Շրջանառություն | 2111 | 5690 | 13002 | 29129 | 34588 |
| Արտահանում | 1021 | 2615 | 7178 | 14677 | 17190 |
| Ներմուծում | 1090 | 3075 | 5824 | 14452 | 17398 |

*Արտաքին առևտրի շրջանառության ավելացման հետ միաժամանակ էական փոփոխություններ են տեղի ունեցել նաև սովետական արտաքին առևտրի ապրանքային կառուցվածքի մեջ։ Սովետական իշխանության տարիներին նյութա-արտադրական հզոր բազայի ստեղծման հետևանքով արտահանման և ներմուծման կազմը արմատապես փոխվել է։ Ներկայումս Սովետական Միությունը հանդիսանում է բոլոր տեսակի ժամանակակից մեքենաների և սարքավորումների խոշոր արտահանող։*

*Մեքենաների և սարքավորումների միջազգային առևտրում Սովետական Միությունը այժմ գրավում է 5-րդ տեղը ԱՄՆ-ից, Անգլիայից, ԳՖՌ-ից և ԳԴՌ-ից հետո, այն ժամանակ, երբ 1950 թվականին մեր երկիրը գտնվում էր 11-րդ տեղում։ Սովետական մեքենաշինության արտադրանքը արտահանվում է աշխարհի ավելի քան 40 երկրներ։ 1958 թվականին մեքենաների և սարքավորումների արտահանումը Սովետական Միությունից ըստ արժեքի կազմեց 3,2 միլիարդ ռուբլի։ Սովետական Միության արտահանած արդյունաբերա-*

կան սարքավորումների զգալի մասը կազմում են կոմպլեկտային, գլխավորապես՝ մետալուրգիական, մեքենաշինական, քիմիական և ծանր արդյունաբերության այլ ճյուղերի ձեռնարկությունների սարքավորումները։ Վերջին տարիներս ավելացել է տրանսպորտի միջոցների, մասնավորապես՝ ավտոմեքենաների արտահանումը։ Սոցիալիստական երկրներից բացի, սովետական ավտոմեքենաներն արտահանվում են Ֆինլանդիա, Նորվեգիա, Իսլանդիա, ՄԱՌ, ԱՄՆ և կապիտալիստական այլ երկրներ։

Սովետական արտահանության մեջ զգալի տեղ են գրավում սև և գունավոր մետաղները, նավթը և նավթամթերքները, հանքաքարերը և կոնցենտրատները։ Մարգանեցի հանքաքարի, չուգունի և ալյումինի արտահանությամբ Սովետական Միությունը աշխարհում գրավում է երկրորդ տեղը։ Այժմ էլ սովետական արտահանության տրադիցիոն ապրանքներն են մնում սղոցանյութերը, հացահատիկը, մորթեղենը, բամբակե կտորեղենը, վուշը, ձկան և խեցգետնի պահածոները և այլն։

Սովետական ներմուծման ներկայիս կառուցվածքը նախապատերազմյանի համեմատությամբ արտացոլում է մեր երկրի տնտեսական աճած հզորությունը։ Ներմուծման, ինչպես և արտահանման կառուցվածքը կայուն չէ, այն մշտապես փոփոխվում է՝ կախված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հաջողություններից և փոփոխություններից։ Սովետական Միության մետալուրգիական և մեքենաշինական արդյունաբերության արագ զարգացումը հասցրել է այն բանին, որ զգալիորեն կրճատվել է այդ ճյուղերի արտադրանքի ներմուծման պահանջը։ Եթե սովետական ներմուծման մեջ մեքենաների և սարքավորումների տեսակարար կշիռը 1932 թվականին կազմում էր 50 տոկոս, ապա այժմ նրանց բաժինը կազմում է 24,5 տոկոս։ Չնայած սովետական ներմուծման մեջ մեքենաների և սարքավորումների տեսակարար կշիռը հարաբերականորեն պակասել է, բայց բացարձակ չափերով այն զգալիորեն մեծ է։ 1958 թվականին ներմուծվել են մոտ 4,3 միլիարդ ռուբլու արժողությամբ մեքենաներ և սարքավորումներ։ Սովետական ներմուծման խոշոր մասը կազմում է արդյունաբերական հումքը։ Բնական կաուչուկի համաշխարհային ներմուծողների մեջ Սովետական Միությունը ԱՄՆ-ից և Անգլիայից հետո գրավում է երրորդը տեղը։

Սովետական ներմուծման մեջ կարևոր տեղ են գրավում ժողովրդական սպառման ապրանքները։ Դրանցից ամենակարևորներն են՝ կակաոն, կոֆեն, թեյը, բրինձը, մրգերը, արդյունաբերական ապրանքներից՝ բրդե կտորեղենը, պատրաստի հագուստեղենը, կոշկեղենը, կահույքը։

Ետպատերազմյան տարիներին արագորեն ամրապնդվում և զարգանում են Սովետական Միության տնտեսական կապերը սոցիալիստական երկրների հետ։ ՍՍՌՄ տնտեսական համագործակցության զարգացումը ժողովրդա-դեմոկրատական երկրների հետ տեղի է ունենում աշխատանքի նոր, սոցիալիստական բաժանման հիման վրա։

Համաշխարհային սոցիալիստական տնտեսության սիստեմի մեջ մտնող յուրաքանչյուր երկիր տնտեսական զարգացման գործում հենվում է ո՛չ միայն իր, այլև սոցիալիստական մյուս երկրների միջոցների վրա։ Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման, արտադրության միջազգային մասնագիտացման և կոոպերացման շնորհիվ սոցիալիստական լագերի երկրները հնարավորություն ունեն ինտենսիվ կերպով զարգացնելու ժողովրդական տն-



տեսության այն ճյուղերը, որոնց համար նրանք ունեն առավել նպաստավոր բնական և տնտեսական պայմաններ։

Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցության կազմակերպման գործում մեծ դեր է խաղում 1949 թվականին ստեղծված Տնտեսական փոխօգնության խորհուրդը։ Այդ խորհուրդը, որի մեջ մտնում են Սովետական Միությունը և Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները, կազմակերպում է տնտեսական և տեխնիկական փորձի փոխանակում, հումքի, մեքենաների և սարքավորման փոխադարձ օգնություն է ցույց տալիս, իրագործում է սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման պլանային համաձայնեցումը և կոորդինացիան։

Սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կոորդինացումը թույլ է տալիս աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիման վրա իրագործել արտադրության մասնագիտացում և կոոպերացում համաշխարհային տնտեսության սոցիալիստական ամբողջ սիստեմի մասշտաբով, որը սոցիալիստական երկրներին մեծ օգուտ է տալիս։ Ներկայումս առաջիկա ժամանակաշրջանի համար որոշված են արտադրության մասնագիտացման և կոոպերացման հիմնական ուղղությունները։ Օրինակ, փոքր տեսակի գլանային հաստոնների արտադրությունը նախատեսված է հիմնականում ԳԴՌ-ում և Լեհաստանում, իսկ խոշոր հաստոններինը՝ գլխավորապես ՍՍՌՄ-ում և Չեխոսլովակիայում։ Հորատման սարքերի, նավթամշակման սարքավորման և մեքենաների արտադրությունը պետք է զարգանա Ռումինիայում և Սովետական Միությունում։

Բազմաշերեփ էքսկավատորները պետք է արտադրվեն ԳԴՌ-ում և Չեխոսլովակիայում, իսկ մեկ շերեփ ունեցող էքսկավատորները՝ Սովետական Միությունում։ Սկսված է սոցիալիստական երկրները քարածխով, երկաթաքարով, էլեկտրաէներգիայով մատակարարելու համար համատեղ միջոցառումների մշակումը։ Տնտեսական փոխօգնության խորհրդի 11-րդ սեսիայում քննարկվեցին Խորհրդի մասնակից երկրների էներգետիկ սիստեմների միավորման առաջարկությունները։

Պլանների կոորդինացումը և արտադրության մասնագիտացումը մեծ ազդեցություն են ունենում սոցիալիստական երկրների միջև ապրանքափոխանակության զարգացման վրա։ Սոցիալիստական երկրների տեսակարար կշիռը Սովետական Միության արտաքին-առևտրական շրջանառության մեջ ներկայումս հասնում է 75 տոկոսի։ Սովետական Միության արտաքին-առևտրական շրջանառությունը սոցիալիստական երկրների հետ 1958 թվականին կազմեց 25,5 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ արտաքին առևտուրը սոցիալիստական երկրների հետ իրականացվում է ապրանքների փոխադարձ մատակարարումների վերաբերյալ կնքված երկարաժամկետ համաձայնագրերի հիման վրա։ Ընդ որում ապրանքային մատակարարումների անվանացանկը և ծավալը որոշվում են ժողովրդա-տնտեսական պլանների համաձայնեցման միջոցով։

Սովետական Միությունը սոցիալիստական երկրներին մատակարարում է բազմազան արդյունաբերական սարքավորումներ ու մեքենաներ, տրակտորներ, գյուղատնտեսական մեքենաներ, ավտոմեքենաներ, երկաթի, մարգանեցի և քրոմի հանքաքար, նավթ և նավթամթերքներ, գունավոր մետաղներ, դեղորայք, սղոցանյութ և լայն սպառման մի շարք ապրանքներ։

Հատուկ տեղ են գրավում կոմպլեկտային սարքավորման մատակարարումները։ Դեպի սոցիալիստական երկրները մեքենաների և սարքավորումների ընդհանուր արտահանության մեջ այդ մատակարարումների բաժինը 1957 թվականին կազմում էր 50 տոկոսից ավելի։ Ընդ որում Սովետական Միությունը մատակարարում է ո՛չ միայն ձեռնարկությունների սարքավորումներ, այլև անմիջականորեն մասնակցում է դրանց շինարարությանը։ Կնքված համաձայնագրերի հիման վրա Սովետական Միությունը մինչև 1962 թվականի վերջը սոցիալիստական երկրներին կմատակարարի մեքենաներ և սարքավորումներ՝ 462 արդյունաբերական ձեռնարկությունների և 120 առանձին ցեխերի և տեղակայումների համար։ Միայն Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում Սովետական Միության օգնությամբ կառուցվում է 211 արդյունաբերական ձեռնարկություն։

Սովետական Միությունն իր հերթին սոցիալիստական երկրներից ներմուծում է առևտրական և ձկնորսային նավեր, ամբարձիչ փոխադրական սարքավորումներ, քիմիական և դարբնամամլիչ սարքավորում, օպտիկական գործիքներ, գունավոր մետաղներ, ուրանի հանքաքար և մի շարք այլ ապրանքներ։ Ապրանքափոխանակության հետ մեկտեղ սոցիալիստական երկրների միջև զարգանում է համագործակցությունը գիտության և տեխնիկայի բնագավառում, որն իրագործվում է կապիտալ շինարարության նախագծերի, մեքենաների, սարքավորումների և գործիքների արտադրության գծագրերի, տեխնոլոգիական պրոցեսների նկարագրերի և այլ տեխնիկական փաստաթղթերի ձրի փոխանակության միջոցով։ Լայն չափերով իրագործվում են նաև գիտա-հետազոտական համատեղ աշխատանքներ, փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող կարևորագույն պրոբլեմների լուծման համար։

1965 թվականին Սովետական Միության արտաքին-առևտրական շրջանառությունը ժողովրդա-դեմոկրատական պետությունների հետ 1958 թվականի համեմատությամբ կավելանա ավելի քան 1,5 անգամ։ Այդ բանը կհասցնի բոլոր սոցիալիստական երկրներում արտադրողական ուժերի հսկայական աճի, տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական հզորության հետագա ամրապնդման։

Սովետական Միությունը, առաջնորդվելով ժողովուրդների միջև խաղաղության և բարեկամության ամրապնդման շահերով, առևտրական հարաբերություններ է պահպանում նաև կապիտալիստական շատ երկրների հետ։ Նրանց մեծ մասի հետ Սովետական Միությունն ունի առևտրական պայմանագրեր, առևտրական և վճարման համաձայնագրեր։

Սովետական Միությունը երկարաժամկետ համաձայնագրեր է կնքել Ֆինլանդիայի, Ֆրանսիայի, ԳՖՌ-ի, Իտալիայի, Ավստրիայի, Նորվեգիայի, Իսլանդիայի, Հունաստանի և Անգլիայի հետ։ 1950-ից մինչև 1958 թվականն ընկած ժամանակամիջոցում ՍՍՌՄ արտաքին առևտրի ծավալը համադրելի գներով աճեց ավելի քան 3,5 անգամ։

Սովետական Միությունը համաշխարհային կապիտալիստական շուկայում գնում է մեծ քանակությամբ մեքենաներ ու սարքավորումներ, նավեր, որոշ գունավոր մետաղներ, բուրդ, բնական կաուչուկ, արհեստական թել, կակաո, կոֆե, մրգեր և այլ ապրանքներ։

Կապիտալիստական երկրների հետ ՍՍՌՄ-ի լայն գործարար համագործակցության լավագույն օրինակ է Ֆինլանդիայի հետ կատարվող առևտուրը։



ՍՍՌՄ-ի և Ֆինլանդիայի միջև 1958 թվականին կատարվեց ավելի քան մեկ միլիարդ ռուբլու ապրանքաշրջանառություն։ Ֆինլանդիան Սովետական Միություն է արտահանում նավեր, արդյունաբերական սարքավորման զանազան տեսակներ, անտառանյութ և լայն սպառման ապրանքների մի քանի տեսակներ։ Սովետական Միությունը, իր հերթին, մատակարարում է հացահատիկ, շաքար, բամբակ, նավթամթերքներ, արդյունաբերական սարքավորում, ավտոմեքենաներ, քիմիական նյութեր։ 1959 թվականի հոկտեմբերին ՍՍՌՄ-ի և Ֆինլանդիայի միջև կնքվեց 1961—1969 թթ. ապրանքների փոխադարձ մատակարարումների վերաբերյալ երրորդ երկարաժամկետ համաձայնագիրը։ Սովետա-ֆիննական առևտրական նոր համաձայնագիրը նախատեսում է Սովետական Միության և Ֆինլանդիայի միջև ապրանքաշրջանառության հետագա ավելացում, որը այդ հնգամյակի ընթացքում կկազմի 6,1 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ ապրանքաշրջանառությունը կապիտալիստական
մի քանի երկրների հետ
*(միլիոն ռուբլիներով)*

| Երկրներ | 1946 | 1950 | 1958 |
|---|---|---|---|
| Ընդամենը՝ | 2590 | 2457 | 9076 |
| այդ թվում՝ | | | |
| Անգլիա | 159 | 570 | 874 |
| Ֆրանսիա | 155 | 29 | 671 |
| Իտալիա | 2 | 150 | 295 |
| Ֆինլանդիա | 276 | 244 | 1017 |
| Շվեդիա | 62 | 138 | 233 |
| Նորվեգիա | 20 | 113 | 133 |
| ԳՖՌ | — | — | 551 |
| ԱՄՆ | 1351 | 224 | 123 |

Վերջին տարիներին զգալիորեն ավելացել է ապրանքաշրջանառությունը Սովետական Միության և Անգլիայի միջև, որը գրավում է առաջին տեղերից մեկը այն կապիտալիստական երկրների մեջ, որոնք Սովետական Միության հետ առևտուր են անում։ Սովետական Միությունը Անգլիա է արտահանում անտառանյութ, մարգանեց, չուգուն, գունավոր մետաղներ, բամբակ, մորթեղեն և մի շարք այլ ապրանքներ։

Անգլիայում Սովետական Միությունը գնում է գունավոր մետաղներ, մեքենաներ և սարքավորումներ։ 1958 թվականին Սովետական Միությունը Անգլիային տվեց մոտ 160 միլիոն ռուբլու արժողությամբ ավտոդողերի գործարանի կոմպլեկտային սարքավորման և 40 միլիոն ռուբլի գումարով ացետատային մետաքսի արտադրության սարքավորման խոշոր պատվերներ։ Անգլո-սովետական տնտեսական կապերի զարգացման համար կարևոր նշանակություն ունի 1959 թվականի մայիսին կնքված հնգամյա առևտրական համաձայնագիրը 1959—1964 թթ. ապրանքաշրջանառության մասին։ Համաձայնագրի մեջ նախատեսված են արդյունաբերական սարքավորման մեծ քանակությամբ սովետական պատվերներ։ Ըստ համաձայնագրի պայմանների անգլիական շուկա են հանվում սովետական մարդատար ավտոմեքենաներ, լուսանկարչական ապարատներ, ժամացույցներ, գինիներ և լայն սպառման այլ ապրանքներ։

*Առկա են նաև արևմտաեվրոպական մյուս երկրների, այդ թվում՝ Ֆրանսիայի, Շվեդիայի, Նորվեգիայի, ԳՖՌ-ի, Իսլանդիայի, Դանիայի, Ավստրիայի և Իտալիայի հետ առևտրի հետագա զարգացման նախադրյալները (այս երկրների հետ Սովետական Միությունն ունի ապրանքների փոխադարձ մատակարարումների վերաբերյալ երկարաժամկետ համաձայնագրեր):*

*Ետպատերազմյան շրջանում անշեղորեն զարգանում է ՍՍՌՄ առևտուրը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի տնտեսապես թույլ զարգացած երկրների հետ: Սովետական Միությունը առևտրական պայմանագրեր ու համաձայնագրեր ունի Հնդկաստանի, ՄԱՌ-ի, Իրաքի, Աֆղանստանի, Մարոկկոյի, Թունիսի, Արգենտինայի, Ուրուգվայի և այդ մայր-ցամաքների բազմաթիվ այլ երկրների հետ:*

*ՍՍՌՄ արտաքին-առևտրական շրջանառությունը թույլ զարգացած երկրների հետ 1953—1958 թթ. ավելացավ ավելի քան վեց անգամ: Սովետական Միությունը թույլ զարգացած երկրներին նախ և առաջ մատակարարում է մեքենաներ և սարքավորումներ, ավտոմեքենաներ, տրակտորներ, զանազան սարքեր, մետաղներ, նավթ և նավթամթերքներ և շատ այլ ապրանքներ: Սովետական Միության հետ առևտուրը տնտեսապես թույլ զարգացած երկրներին հնարավորություն է տալիս ստանալ իրենց համար անհրաժեշտ ապրանքներ, առանց իրենց ոսկու և վալյուտայի ռեզերվները ծախսելու, քանի որ սովետական ապրանքների համար նրանք կարող են վճարել իրենց արտահանության տրադիցիոն ապրանքներով: Ապրանքափոխանակության հետ մեկտեղ Սովետական Միությունը թույլ զարգացած երկրներին աջակցություն է ցույց տալիս տասնյակ և հարյուրավոր արդյունաբերական ձեռնարկությունների, էլեկտրակայանների, ոռոգման կառույցների և այլ օբյեկտների շինարարության գործում, որոնք կարևոր նշանակություն ունեն այդ երկրների էկոնոմիկայի և ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման համար: Սովետական Միության անշահախնդիր օգնությունը թույլ զարգացած երկրներին բխում է մեր պետության խաղաղասիրական և բարեկամական քաղաքականությունից և նպաստում նրանց տնտեսական անկախության ամրապնդմանը:*

*Ներկայումս բոլորի համար պարզ է, որ մեր օգնությունը արմատապես տարբերվում է այն «օգնությունից», որը թույլ զարգացած երկրներին ցույց են տալիս իմպերիալիստական տերությունները՝ քողարկվելով «հավասար հնարավորությունների» կեղծ սկզբունքով:*

*Միակ երկիրը, որի հետ Սովետական Միությունը ըստ էության առևտրական հարաբերություններ չունի, ԱՄՆ-ն են: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո առաջին տարիներին ԱՄՆ-ը կարևոր տեղ էին գրավում Սովետական Միության արտաքին-առևտրական շրջանառության մեջ: Հետագայում, ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանների ընդունած ՍՍՌՄ-ի հետ առևտրի դիսկրիմինացիայի քաղաքականության հետևանքով սովետա-ամերիկյան առևտրի ծավալը կրճատվեց: 1951 թվականին ամերիկյան կառավարությունը միակողմանի կերպով չեղյալ հայտարարեց ՍՍՌՄ-ի հետ 1937 թվականի առևտրական համաձայնագիրը:*

*Սովետական Միության հետ առևտրի զարգացման հակառակորդները ժողովուրդների տնտեսական համագործակցության ճանապարհին արգելքներ ստեղծելով ճգնում են իրենց գործողությունները արդարացնել ամեն տեսակ հերյուրանքներով, որոնք հիմնականում ուղղված են սովետական արտաքին-*



*առևտրական քաղաքականության դեմ: Օրինակ. վերջին շրջանում Արևմուտքի ռեակցիոն մամուլը մեծ ճիգեր է գործադրում առևտրի զարգացման ուղղությամբ Սովետական Միության ձգտումը ներկայացնել որպես «առևտրական հարձակում», որն իբր ուղղված է համաշխարհային շուկայից կապիտալիստական երկրների դուրսմղմանը:*

*Նման հարցադրումը, պարզ է, որ զուրկ է որևէ հիմքից, որովհետև բոլորին հայտնի է, որ Սովետական Միությունը երբեք չի եղել վաճառահանման շուկաների համար իմպերիալիստական պայքարի մասնակիցը: Ի տարբերություն մի շարք արևմտյան տերությունների, որոնք հոգ են տանում միայն իրենց ապրանքների վաճառքի մասին, Սովետական Միությունը արտահանության ընդլայնմանը զուգընթաց ավելացնում է նաև իր ներմուծումը: Այսպիսով, ՍՍՌՄ-ի ակտիվ մասնակցությունը միջազգային առևտրին ոչ մի ագրեսիվ նպատակ չի հետապնդում, ընդհակառակը, շատ երկրների համար նրանց ապրանքների վաճառքի լրացուցիչ հնարավորություններ է ստեղծում: Արևմտյան մամուլում առաջ են քաշվում նաև այնպիսի փաստարկներ, որ իբր Սովետական Միության հետ առևտուրը հեռանկարներ չունի, քանի որ նա վարում է ավտարկիայի քաղաքականություն: Մերկացնելով նման հայտարարությունների անհեթեթությունը, Ա. Ի. Միկոյանը Մեքսիկայի արտահանողների և ներմուծողների Ազգային ասոցիացիայում 1959 թ. նոյեմբերի 28-ին արտասանած իր ճառում ասաց. «Ինչ է նշանակում ավտարկիա: Դա նշանակում է աշխատել իր մոտ արտադրել ամեն բան, այդ թվում նաև այն՝ ինչը քեզ վրա թանկ է նստում, փոխանակ ավելի էժան գնով ուրիշից գնելու: Եթե մենք ցանկանայինք դառնալ ավտարկիային պետություն, ապա դա մոտավորապես կնշանակեր, որ մենք պետք է սեծովյան ափերին ստեղծեինք գազով տաքացվող հսկա ջերմոցներ և նրանցում անանաս աճեցնեինք, փոխանակ դրանք, ասենք, Մեքսիկայից գնելու: Բայց ինչո՞ւ այդպես անել: Չէ որ դա մի տասն անգամ թանկ կնստեր»:*

*Վերջապես, Արևմուտքում կարելի է հանդիպել և այնպիսի գործիչների, որոնք աշխատում են առևտրի զարգացման հանդեպ Սովետական Միության ձգտումը մեկնաբանել որպես տնտեսական թուլության, յոթնամյա պլանի կատարման անընդունակության նշան: Զարգացնել առևտուրը Սովետական Միության հետ, նրանց կարծիքով, նշանակում է աջակցել յոթնամյա պլանի իրագործմանը, այլ կերպ ասած, օգնել դեպի կոմունիզմ նրա առաջընթացին: Այդ «թեորիաների» հեղինակներին կարելի է հիշեցնել, որ Սովետական Միությունը իր զարգացման ամբողջ ժամանակաշրջանում միշտ էլ սեփական ուժերով է լուծել իր առջև կանգնած խնդիրները: Բացառություն չէ և յոթնամյա պլանը, որը կազմված է մեր ներքին հնարավորությունների հաշվով: Իսկ ինչ վերաբերում է կապիտալիստական երկրների հետ առևտրի զարգացման գործում Սովետական Միության շահագրգռվածությանը, ապա դրանում նույնքան, եթե ոչ ավելի, շահագրգռված են հենց իրենք՝ կապիտալիստական երկրները:*

*Կյանքը ցույց է տվել պետությունների միջև տնտեսական հարաբերությունների գործում արհեստական արգելքների ամբողջ անմտությունը: Կապիտալիստական երկրների գործարար շրջանները ավելի են համոզվում, որ անհրաժեշտ է կարգավորել առևտրական հարաբերությունները սոցիալիստական երկրների հետ:*

*Ն. Ս. Խրուշչովի Միացյալ Նահանգներ կատարած պատմական ուղևո-*

րությունը կարևոր ներդրում հանդիսացավ միջազգային լարվածության թուլացման և «սառը պատերազմի» վերացման գործում։ Հանդես գալով ամենաբազմազան աուդիտորիաների առջև, Ն. Ս. Խրուշչովը բազմիցս ընդգծեց, որ խաղաղ գոյակցության քաղաքականությունը ամուր հիմք է ստանում միայն լայն, ոչնչով չսահմանափակված միջազգային առևտրի առկայության դեպքում, որը հանդիսանում է մի տեսակ բարոմետր պետությունների հարաբերություններում։

—Առևտուրը, եթե պարզ արտահայտվելու լինենք,—նշում է Ն. Ս. Խրուշչովը 1959 թ. դեկտեմբերի 30-ին արգենտինյան «Կլարին» թերթի դիրեկտոր Ռ. Նոբլի հարցերին տված իր պատասխաններում,— լավ գործիք է միջազգային մթնոլորտի վիճակը որոշելու համար։ Ավելին, պետությունների միջև տնտեսական կապերը նրանց քաղաքական հարաբերությունների ամրապնդման ամենակարևոր գործոնն են։ Միջազգային կլիմայի 1959 թվականին տեղի ունեցած ջերմացումը անշուշտ բարենպաստ ազդեցություն կթողնի նաև միջազգային առևտրի զարգացման վրա։ Կուզենայի հույս ունենալ, որ վերջապես, կվերացվեն պետությունների միջև առևտրի ուղղությամբ «սառը պատերազմի» տարիներին արհեստականորեն ստեղծված ամեն տեսակի արգելքները։ Սովետական Միությունը հանդես է գալիս սովետա-ամերիկյան առևտրական հարաբերությունների կանոնավորման օգտին, նախ և առաջ այն պատճառով, որ այդ հարաբերությունների զարգացումը դրականորեն կազդեր ամբողջ համաշխարհային առևտրի վրա։ Դա կլիներ խաղաղ գոյակցության սկզբունքների իրականացման լավ օրինակ, կարևոր քայլ՝ միջազգային լարվածության թուլացման և «սառը պատերազմի» հետևանքների վերացման ճանապարհին։

---

# ՄԻՋԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայտնի է, որ կոմունիզմի ժամանակ գոյություն է ունենալու սեփականության մի ձև։ Սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ ու համաժողովրդական պետական ձևերը միաձուլվելու են մի միասնական կոմունիստական սեփականության մեջ։ Այդ տեղի է ունենալու ոչ թե կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը սահմանափակելու, այլ պետության օգնությամբ նրա հանրայնացման մակարդակը բարձրացնելու միջոցով։

Կոլտնտեսային արտադրության հետագա զարգացման և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականությանը աստիճանաբար մերձենալու տնտեսական հիմքը կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի անշեղ աճն է։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի ստեղծմանը մասնակցել են ո՛չ միայն կոլտնտեսականները, այլև բանվոր դասակարգը, մեր երկրի ողջ աշխատավորությունը։

Միայն վերջին 5 տարիներում գյուղատնտեսության մեքենայացման և արտադրական շենքերի ու կառույցների վրա պետությունը ծախսել է 97 միլիարդ ռուբլի, որը 50 տոկոսով ավելի է, քան ներդրվել էր երկրորդ և չորրորդ հնգամյակներում և հինգերորդ հնգամյակի 3 տարում միասին վերցրած։

Անբաժանելի ֆոնդերի աճի շնորհիվ կոլտնտեսությունները կարողացան գնել ՄՏԿ-ների տեխնիկան։ Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությամբ նախատեսված էր անբաժանելի ֆոնդին մասհանել կոլտնտեսությունների դրամական եկամուտների ոչ պակաս, քան 12 և ոչ ավելի, քան 20 տոկոսը։ Այս չափի սահմանումը պայմանավորված էր նրանով, որ կոլտնտեսություններն այն ժամանակ դեռևս տնտեսապես այնքան էլ ամրապնդված չէին, նրանց դրամական եկամուտները մեծ չէին և տեխնիկան գտնվում էր ՄՏԿ-ներում։ —Այժմ,—ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,—երբ մենք անցնում ենք կոլտնտեսային կարգի զարգացման նոր աստիճանի, երբ արտադրության բոլոր գործիքների տերը կլինեն իրենք՝ կոլտնտեսությունները, կըպահանջվի փոխել եկամուտներն ըստ աշխօրերի և անբաժանելի ֆոնդերի բաշխելու հարաբերակցությունը։ Ըստ երևույթին, այժմ անբաժանելի ֆոնդի տեսակարար կշիռը կմեծանա։

Սակայն ռեսպուբլիկայի մի շարք շրջանների կոլտնտեսություններ դեռևս դրամական եկամուտների քիչ մասն են առանձնացնում անբաժանելի ֆոնդերի լրացման համար։ Այսպես, օրինակ, 1958 թվականին Մեղրու շրջանի կոլտնտեսությունները անբաժանելի ֆոնդերի լրացման համար առանձնացրին իրենց դրամական եկամուտների 13,5 տոկոսը, Ալավերդու շրջանինը՝ 16,8, Կալինինոյինը՝ 17,4, Իջևանինը՝ 17,6, Աշտարակինը՝ 18 տոկոսը։ ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի՝ «Գյուղատնտեսության հետագա

զարգացման մասին» որոշման մեջ նշված է, որ «Ելնելով հանրային արտա-
դրության զարգացման ձեռք բերված մակարդակից, նպատակահարմար է ա-
վելացնել, ըստ կոլտնտեսականների ընդհանուր ժողովների որոշումների, կոլ-
տնտեսությունների անբաժանելի ֆոնդերի համար դրամական եկամուտներից
կատարվող մասհանումները»։ Պլենումն անհրաժեշտ գտավ անբաժանելի ֆոն-
դերի դրամական միջոցներով առաջին հերթին հիմնական արտադրական
միջոցներ ձեռք բերել, որոնք ապահովում են կոլտնտեսության էկոնոմիկայի
արագ վերելքը, աշխատանքի արտադրողականության, տնտեսության ապ-
րանքայնության և կոլտնտեսության եկամուտների աճը, ինչպես նաև ծախսեր,
կոլտնտեսականների տների կառուցման համար՝ հետագայում այն տարեկե-
տումով վճարելու պայմանով։ Անբաժանելի ֆոնդերից միջոցներ պետք է
առանձնացնել միջկոլտնտեսային շինարարությունների կառուցման, միջկոլ-
տնտեսային ֆոնդերի ստեղծման համար։

Կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրաց-
ման, համաժողովրդական սեփականությանը մոտենալու գործում կարևոր
նշանակություն ունի միջկոլտնտեսային արտադրական կապերի, կոլտնտեսու-
թյունների համագործակցության զանազան ձևերի զարգացումը։

Կոլտնտեսային կարգը իր մեջ կրում է միջկոլտնտեսային արտադրական
կապերի ստեղծման անհրաժեշտություն, քանի որ այն հիմնված է սոցիալիս-
տական սեփականության վրա, արտահայտում է կոլտնտեսականների և կոլ-
տնտեսությունների միջև ընկերական փոխօգնության հարաբերությունները։
Քանի դեռ կոլտնտեսությունները մանր էին և տնտեսապես ոչ այնքան ամ-
րապնդված, միջկոլտնտեսային արտադրական կապերի ստեղծման պահանջն
այնքան էլ մեծ չէր։ Միջկոլտնտեսային արտադրական կապերի ներկա ձևերը
նոր երևույթ են, կապված կոլտնտեսային կարգի զարգացման նոր էտապի հետ
և արտահայտում են կոլտնտեսային արտադրության ավելի բարձր կենտրոնա-
ցում ու համակենտրոնացում։ Դրանք կոլտնտեսությունների միջև և կոլտնտե-
սությունների ու պետության միջև արտադրական հարաբերությունների ավելի
բարձր ձևն են։ Միջկոլտնտեսային արտադրական կապերի առաջացումը գյու-
ղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման հետևանք է և հանդի-
սանում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման տարրը
գյուղում։ Դրանով պետք է բացատրել, որ այդ կապերը առանձնապես լայն
ծավալ ստացան կոլտնտեսությունների խոշորացման, ՄՏԿ-ների տեխնիկան
կոլտնտեսություններին վաճառելու և կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամ-
րապնդման համար մի շարք կարևոր միջոցառումների իրականացումից հետո։

ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ
նշված է, «...որ վերջին ժամանակներս գյուղում լայն զարգացում են ստացել
միջկոլտնտեսային կապերը, առաջ են եկել բազմաթիվ շինարարական կազ-
մակերպություններ, ստեղծվում են շինանյութերի արտադրության, էլեկտրա-
կայանների, ճանապարհների, գիշերօթիկ դպրոցների, հիվանդանոցների,
մանկական հիմնարկների կառուցման, գյուղատնտեսական մթերքների վերա-
մշակման, անասունների բտման ձեռնարկություններ»։

Միջկոլտնտեսային արտադրական կապեր գոյություն ունեն երկրի բոլոր
ռեսպուբլիկաներում. դրանք արտահայտվում են բազմապիսի ձևերով։

1959 թվականի հունվարի մեկին ՍՍՌՄ-ում կային 624 միջկոլտնտեսային
էլեկտրակայաններ։ Ավելի մեծ ծավալ են ստացել միջկոլտնտեսային կազմա-



կերպությունները շինարարության գծով։ Ոչ լրիվ տվյալներով 1958 թվականի
հունվարի մեկին նրանց թիվը հասնում էր հազարի և ընդգրկում էր մոտ 13
հազար կոլտնտեսություն։ Ուկրաինական ՍՍՌ-ում աշխատում են 800 միջկոլ-
տնտեսային կազմակերպություն և ձեռնարկություն, որից 603 ձեռնարկություն
շինարարության և շինանյութերի արտադրության գծով։ Միջկոլտնտեսային
շինարարական կազմակերպություններում ընդգրկված էր ՌՍՖՍՌ-ի կոլտնտե-
սությունների 81 տոկոսը. նրանց հիմնական ֆոնդերը կազմում են շուրջ 2
միլիարդ ռուբլի, այսինքն՝ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների անբաժանելի
ֆոնդերի ավելի քան 5 տոկոսը։

Վերջին երկու տարիների ընթացքում երկրի տարբեր շրջաններում կոլ-
տնտեսությունները սկսեցին կազմակերպել տրակտորների, կոմբայնների և
այլ մեքենաների վերանորոգման միջկոլտնտեսային արհեստանոցներ։

Անցյալ տարի Կալինինի մարզի՝ նախկին Կալինինսկի ՄՏԿ-ի գոտու մեջ
մտնող կոլտնտեսությունները դիմեցին մարզի ղեկավարությանը՝ թույլ տալու
գնել ՆՏԿ-ի արհեստանոցը։ Մարզի կոլտնտեսությունների մեծ մասն ուներ
6—7 տրակտոր, 2—3 կոմբայն և 3—4 ավտոմեքենա։ Այդ պայմաններում
տնտեսապես աննպատակահարմար էր, որ տնտեսություններն առանձին-ա-
ռանձին ստեղծեին իրենց նորոգման բազաները։ Նրանք որոշեցին կազմակեր-
պել գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման միջկոլտնտեսային արհեստա-
նոց։ Նույն խնդրով դիմեցին նաև մարզի մի քանի այլ շրջանների կոլտնտե-
սությունները։ Պարտիայի մարզկոմը և մարզային գործադիր կոմիտեն ընդա-
ռաջեցին կոլտնտեսություններին, խորհուրդ տվին կազմակերպել միջկոլտնտե-
սային նորոգման արհեստանոցներ։ Մարզում ստեղծվեց 8 այդպիսի կազմա-
կերպություն, որոնցում ընդգրկվեց 43 կոլտնտեսություն։ Մասնակից կոլտն-
տեսությունները ընդունեցին միջկոլտնտեսային նորոգման արհեստանոցի
ստեղծման ու օգտագործման կանոնադրությունը և որոշեցին իրենց մասնակ-
ցության չափը։ Լեխոսլավսկու շրջանում կոլտնտեսություններին վարելահողի
ամեն մի հեկտարի դիմաց ընկնում է 20 ռուբլի։ Ներլսկու շրջանի միջկոլտըն-
տեսային միությունում այդ սահմանված է ըստ կոլտնտեսություններում եղած
տրակտորների և կոմբայնների քանակի՝ յուրաքանչյուր (15 ուժանոց) տրակ-
տորի և 15 ֆուտ (1 ֆուտը հավասար է 30,48 սմ) կոմբայնի դիմաց 700
ռուբլի՝ արհեստանոցի ձեռքբերման և 400 ռուբլի՝ շրջանառու միջոցների
ստեղծման համար։ Արհեստանոցները աշխատում են լրիվ տնտհաշվարկի
սկզբունքով։ Կոլտնտեսությունները պատվեր են տալիս, իսկ վերջիններս ձևա-
կերպում և կատարում են այն կոլտնտեսության և միության միջև կնքված
պայմանագրի համաձայն։

Միության շատ վայրերում կան կովերի արհեստական սերմնավորման
միջկոլտնտեսային կետեր, անասունների գիրացման կայաններ և այլն։ Կրաս-
նոդարի և Ստավրոպոլի մարզերում արդեն կառուցվում են միջկոլտնտեսային
պահածոների գործարաններ և այլն։

Միջկոլտնտեսային արտադրական կապեր կան նաև մեր ռեսպուբլիկա-
յում։ Այդպիսիք սկզբնական շրջանում առաջացան էլեկտրակայանների կա-
ռուցման գծով։ 1948 թվականին Հոկտեմբերյանի շրջանում կազմակերպվեց
միջկոլտնտեսային խորհուրդ, որում ընդգրկվեցին շրջանի գրեթե բոլոր կոլ-
տնտեսությունները։ Խորհուրդը ձեռնարկեց երկու էլեկտրակայանների կառու-
ցումը, որոնցից մեկը՝ 1.600 հազար ռուբլու արժողությամբ, շահագործման

հանձնվեց 1954 թվականին։ Այժմ միջկոլտնտեսային խորհուրդը կառուցում է ջրմուղ։ Գորիսի շրջանի 16 կոլտնտեսություններն իրենց միջոցներով կառուցել են Ակներգէսի 2-րդ կայանը։ Այժմ ռեսպուբլիկայում միջկոլտնտեսային 9 էլեկտրակայան կա։

1958 թվականին կազմակերպվեց Արտաշատի շրջանի միջկոլտնտեսային խորհուրդը։ Շրջանի 43 կոլտնտեսություններից 38-ը ընդգրկվեցին միջկոլտնտեսային կազմակերպության մեջ։ Ըստ խորհրդի յոթնամյա պլանի 1959—1965 թթ. կապիտալ ներդրումները կազմելու են 10.600 հազար ռուբլի։ Շուտով կավարտվեն միջկոլտնտեսային ստադիոնի և այլ կառույցների շինարարությունը։ Միջկոլտնտեսային և պետական հիմնարկների միջոցներով կառուցվել է երկու կամուրջ՝ 600 հազար ռուբլու արժողությամբ։

Ռեսպուբլիկայում իր կազմակերպչական կողմով և կատարած աշխատանքի ծավալով առանձնապես աչքի է ընկնում Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային շինարարական խորհուրդը։ Այնտեղ ընդգրկված են շրջանի 9 կոլտնտեսություններ։ Խորհրդի կանոնադրության համաձայն մասնակից կոլտնտեսությունների փայավճարը կազմում է դրամական եկամուտների 2,5%-ը։ Միջկոլտնտեսային խորհուրդն ունի իր շինարարական գրասենյակը, քարհանքը, հյուսնոցը, սղոցարանը, 7 բեռնատար ավտոմեքենա, վերամբարձ և այլ մեքենաներ։ 1959 թվականին խորհուրդը կառուցեց իր շին-գործնական բակը՝ 428 հազար ռուբլու արժողությամբ և 2 դպրոց։ Ձեռնարկեց խոշոր թռչնաբուծական ֆաբրիկայի կառուցմանը (60 հազար գլուխ հավի տարողությամբ)՝ 6 միլիոն ռուբլու արժողությամբ։

1960 թվականին սկսվելու են 7,5 միլիոն ռուբլու արժողությամբ մի քանի ջերմոցների, 3,5 միլիոն ռուբլու արժողությամբ գիշերօթիկ միջնակարգ դպրոցի, սանատորիայի կառուցման աշխատանքները։ Այդ բոլորի հետ միասին, միջկոլտնտեսային խորհուրդը մեծ օգնություն է ցույց տալիս մասնակից կոլտնտեսություններին։ Նա սկսել է կառուցել Ղուկասավան գյուղի ակումբը (458 հազար ռուբլու արժողությամբ), XVIII պարտհամագումարի անվան կոլտնտեսության ջերմոցը (530 հազար ռուբլու) և կովանոցը (371 հազար ռուբլու), Անաստասավան գյուղի կոլտնտեսության հոլթանոցը (270 հազար ռուբլու արժողությամբ)։ Խորհրդի շինարարական գրասենյակը շրջանի կոլտնտեսություններին վաճառում է դռներ, լուսամուտների շրջանակներ, շինարարության համար՝ քար, ավազ և այլ իրեր։ Կարճ ժամանակվա ընթացքում՝ ընդամենը 8 ամսում, խորհուրդը ձեռնարկեց մոտ 3 միլիոն ռուբլու շինարարական աշխատանքների և ստացավ շուրջ 200 հազար ռուբլու զուտ եկամուտ։

Որոշ աշխատանքներ է կատարել նաև էջմիածնի միջկոլտնտեսային շինարարական խորհուրդը, որտեղ ընդգրկված են շրջանի բոլոր 39 կոլտնտեսությունները։ 1959 թվականին մասնակից կոլտնտեսությունների բաժնեմասերից կուտակված դրամական միջոցները հասան 2450 հազար ռուբլու։

Կոտայքի շրջանի միջկոլտնտեսային խորհրդում ընդգրկված են շրջանի 10 կոլտնտեսություններ։ Մասնակից կոլտնտեսությունների լիազորական ժողովը որոշել է կառուցել միջկոլտնտեսային մեծ ջերմոց՝ 1.200 հազար ռուբլու արժողությամբ։

Նախնական տվյալներով, ռեսպուբլիկայի միջկոլտնտեսային կազմակերպությունների կողմից ծրագրված օբյեկտների կառուցման համար 1959—1965 թվականներին ներդրվելու է 25 միլիոն ռուբլի։



Այժմ ռեսպուբլիկայի 6 շրջաններում կազմակերպված միջկոլտնտեսային խորհուրդներում ընդգրկված է 150 կոլտնտեսություն։ Հիմք ընդունելով Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի կողմից հաստատված միջկոլտնտեսային խորհրդի օրինակելի կանոնադրությունը, բոլոր միջկոլտնտեսային խորհուրդները կազմել են իրենց կանոնադրությունը, որը հաստատվել է լիազորական ժողովի և շրջանային Սովետների գործադիր կոմիտեների կողմից։

Հայկական ՍՍՌ միջկոլտնտեսային կազմակերպություններն իրենց կազմակերպչական բնույթով որոշ չափով տարբերվում են Միության մի շարք միջկոլտնտեսային կազմակերպություններից։ Մյուս ռեսպուբլիկաներում այդ կազմակերպությունները մեծ մասամբ ստեղծված են մի օբյեկտի ստեղծման ու շահագործման սկզբունքով. օրինակ, էլեկտրակայանների կառուցման կամ գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման, շինարարության, անասունների արհեստական սերմնավորման և այլ առանձին օբյեկտների ստեղծում ու շահագործում։ Մեր ռեսպուբլիկայում կազմակերպված միջկոլտնտեսային միությունները գրեթե բոլորն էլ բազմաօբյեկտ են։ Օրինակ, էջմիածնի շրջանի միջկոլտնտեսային խորհուրդը նախատեսել է կառուցել խաղողի, պտուղների և բանջարեղենի նախնական վերամշակման գործարան, հիվանդանոց, սանատորիա, պիոներական ճամբար, ծննդատուն, ծրագրված են ոռոգման սիստեմի բարելավման կոմպլեքս միջոցառումներ, շինանյութերի արտադրություն։

Եղբայրական ռեսպուբլիկաների միջկոլտնտեսային շատ կազմակերպություններում բաժնեմասի չափը սահմանելիս ելնում են կամ մասնակից կոլտնտեսությունների հողային տարածություններից, կամ ցանքատարածություններից, բտվող անասունների գլխաքանակից, կամ գյուղատնտեսական տեխնիկայի քանակից և այլն։ Մեզ մոտ բոլոր միջկոլտնտեսային կազմակերպություններում բաժնեմասը սահմանելիս հիմք է ընդունվում կոլտնտեսությունների դրամական եկամուտների չափը։ Արարատյան հարթավայրի կազմակերպություններում, որտեղ կոլտնտեսությունների դրամական եկամուտները մեծ են, որոշված է բաժնեմասի չափը սահմանել դրամական եկամուտների 3 տոկոսը, իսկ նախալեռնային և լեռնային զոնաների կազմակերպություններում՝ 5 տոկոսը։ Էական տարբերություն է նաև այն, որ բոլոր միջկոլտնտեսային կազմակերպությունները չունեն շինարարական գրասենյակներ, տեխնիկա, մեխանիզմներ, մասնագետներ, միությունները չունեն նույնիսկ նախագծային կազմակերպություններ։ Դրա շնորհիվ միջկոլտնտեսային միություններն իրենք են զբաղվում շինարարությամբ։

Մեր ռեսպուբլիկայի միջկոլտնտեսային կառուցումներում զգալի տեղ է գրավում կուլտուր-լուսավորական, առողջապահական օբյեկտների շինարարությունը։ Մեր կարծիքով կոլտնտեսային շինարարության ներկա էտապում անհրաժեշտ է, առաջին հերթին, մեծ ուշադրություն դարձնել արտադրական նշանակություն ունեցող կառուցումների վրա։

Միջկոլտնտեսային արտադրական կապերը, որոնք առաջացան վերջերս, որակապես տարբերվում են կոլտնտեսային շինարարության սկզբնական էտապում կոլտնտեսությունների միջև գոյություն ունեցող արտադրական կապերից։ Ներկայումս միջկոլտնտեսային համագործակցությունը գյուղում ավելի բարձր ձևեր է ընդունել։ Միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը կընդլայնի կոլտնտեսային կոոպերատիվ սեփականության շրջանակները, կնպաստի կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփա-

կանության վերածելուն։ Այս պատճառով արտադրական այդպիսի կապերի առաջացումը պետք է դիտել ոչ թե որպես պատահական երևույթ, այլ իբրև կոլտնտեսային շինարարության զարգացման նոր էտապի արտահայտություն։ Միջկոլտնտեսային կազմակերպությունների կողմից ստեղծված արտադրական օբյեկտները չպետք է հակադրել պետական, համաժողովրդական օբյեկտներին։ Միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը ո՛չ թե թուլացնում, այլ նպաստում է պետական, համաժողովրդական ունեցվածքի զարգացմանը։ «Կոոպերատիվ սեփականությունը,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— հակասության մեջ չի գտնվում կոմունիստական հասարակարգի կառուցման ուղիների վերաբերյալ մեր պարտիայի տեսական դրույթների հետ, քանի որ կոմունիզմի ուղին ընկած է ինչպես համաժողովրդական, այնպես էլ կոոպերատիվ սեփականության զարգացման միջով»։

Ելնելով դրանից, անհրաժեշտ է ավելի զարգացնել ու բազմապատկել կոլտնտեսային հանրային տնտեսությունը և ուժեղացնել միջկոլտնտեսային արտադրական կապերը։ Պետք է գտնել միջկոլտնտեսային արտադրական կապերի այնպիսի ռացիոնալ ձևեր, որոնք բխեն մասնակից-կոլտնտեսությունների տնտեսական պայմաններից, հնարավորություն տան ավելի լավ ու տնտեսվարորեն օգտագործելու աշխատանքային ու նյութական ռեսուրսները, անբաժանելի ֆոնդերը։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր շրջանների կոլտնտեսությունները մեծ կարիք ունեն միջկոլտնտեսային խոշոր օբյեկտների, որպիսիք առանձին կոլտնտեսությունները միայն իրենց միջոցներով չեն կարող կառուցել։

Անցյալ տարի գյուղատնտեսական մթերքներ՝ հատկապես խաղող և պտուղներ վերամշակող պետական ձեռնարկությունները հնարավորություն չունեցան ընդունելու կոլտնտեսությունների ամբողջ բերքը։ Յոթնամյա պլանով ավելի մեծ չափերով է աճելու խաղողի և մրգերի արտադրությունը։ Հետևաբար, անհրաժեշտ է Արարատյան հարթավայրի շրջաններում կառուցել խաղողի, պտուղների ու բանջարեղենի նախնական վերամշակման մի քանի միջկոլտնտեսային գործարան։

Գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման բազայի ճիշտ կազմակերպումը ստացել է վերին աստիճանի կարևոր նշանակություն։ Կոլտնտեսություններից շատերն են զբաղվում տեխնիկայի նորոգման գործով։ Միջին հաշվով ռեսպուբլիկայի յուրաքանչյուր կոլտնտեսություն ունի 5 տրակտոր (15 ձիաուժանոց), մեկ կոմբայն և 4 բեռնատար ավտոմեքենա։ Այդպիսի վիճակով տնտեսապես նպատակահարմար չէ, որ ամեն մի կոլտնտեսություն ունենա իր նորոգման արհեստանոցը։ Անհրաժեշտ է կազմակերպել միջկոլտնտեսային նորոգման արհեստանոցներ։

Ջրամբարների և ջրանցքների կառուցումը միջկոլտնտեսային խոշոր նշանակություն ունի, հատկապես, լեռնային շրջանների համար։ 1959—1965 թվականներին ռեսպուբլիկայում նոր ոռոգվող հողերի տարածությունը ընդլայնվելու է 38,4 հազար հեկտարով։ Այդ նպատակով, կառուցվող ջրանցքների վրա նախատեսված է պետական միջոցներից ծախսել մոտ 212 միլիոն ռուբլի։ Մինչև այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ներդրել են կառուցված ջրանցքների ընդհանուր արժեքի 3—5 տոկոսը, այն դեպքում, երբ Միջին-Ասիական ռեսպուբլիկաների կոլտնտեսությունները ներդրել են 20—25 տոկոսը։



Ջրանցքներն իրենց բնույթով միջկոլտնտեսային օբյեկտներ են. նրանք անցնում են բազմաթիվ կոլտնտեսությունների դաշտերով ու ոռոգում դրանք։ Դրա համար էլ կոլտնտեսությունները պետք է ակտիվ մասնակցեն ջրանցքների կառուցման աշխատանքներին։

***

Միջկոլտնտեսային արտադրական կապերի ստեղծումն ու նրանց զարգացումը ժողովրդական խոշոր նշանակություն ունի։ Սակայն տեղական պարտիական ու սովետական կազմակերպությունները դեռևս պահանջվող ուշադրություն չեն նվիրում դրանց։

ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Դեկտեմբերյան պլենումն իր որոշման մեջ պարտիական կազմակերպություններին, սովետական և գյուղատնտեսական օրգաններին պարտավորեցրեց ամեն կերպ նպաստել միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացմանն ու ընդլայնմանը, պաշտպանել կոլտնտեսությունների նախաձեռնությունը և նրանց օգնել էլեկտրակայանների, ոռոգման ու մելիորատիվ կառուցումների, ճանապարհների, գյուղատնտեսական մթերքների պահպանման ու վերամշակման ձեռնարկությունների համատեղ շինարարություն կազմակերպելու և շինանյութերի արտադրության միջկոլտնտեսային կազմակերպություններ ստեղծելու գործում։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը 1959 թվականի հունիսի 26-ի որոշմամբ հաստատեց Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության կողմից ներկայացված «Միջկոլտնտեսային շինարարական խորհրդի օրինակելի կանոնադրությունը»։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոն անցյալ տարի քննեց Էջմիածնի շրջանի միջկոլտնտեսային խորհրդի գործունեությունը և այդ կապակցությամբ ընդունեց կոնկրետ որոշում։ Բյուրոն գտավ, որ ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը և համապատասխան կազմակերպությունները պետք է զբաղվեն միջկոլտնտեսային խորհուրդների հարցով և կոնկրետ օգնություն ու ղեկավարություն ցույց տան ռեսպուբլիկայի միջկոլտնտեսային խորհուրդներին։ Ներկայումս միջկոլտնտեսային արտադրական կազմակերպություններում կան շատ կարևոր, բայց դեռևս չլուծված հարցեր։ Դեռ որոշակի չէ միջկոլտնտեսային արտադրական կազմակերպությունների ղեկավարման հարցը։

Միջկոլտնտեսային արտադրական կազմակերպությունների փորձը լայն չափով չի մասսայականացվել. այդ մասին համապատասխան գրականություն չկա, հաստատված միջկոլտնտեսային խորհրդի օրինակելի կանոնադրությունը մեծ տիրաժով չի հրապարակվել։ Այդ հարցերի վրա պետք է լուրջ ուշադրություն դարձնեն պարտիական և սովետական կազմակերպությունները։

# ԱՌԱՋՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

ՀԿՊ Եղեգնաձորի շրջկոմի քարտուղար

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումը, որը տեղի ունեցավ նոր տարվա շեմքին, կոնկրետ միջոցառումներ մշակեց երկրի գյուղատնտեսության զարգացման համար։ Պլենումի որոշումները կենսագործելու, երկրում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար անհրաժեշտ է բացահայտել ու գործի դնել բոլոր ռեզերվները։

Եղեգնաձորի շրջանն այգեգործության, պտղաբուծության, անասնաբուծության, մասամբ էլ ծխախոտագործության զարգացման համար ունի նպաստավոր պայմաններ։ Գյուղատնտեսության այս ճյուղերի վերելքը զգալիորեն կնպաստի կոլտնտեսությունների եկամտի աճին և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացմանը։

Հաշվի առնելով այդ, շրջանի պարտիական կազմակերպությունները, սովետական օրգաններն ու կոլտնտեսությունների վարչությունները յոթնամյա պլանը կազմելիս առավելապես մեծ ուշադրություն են հատկացրել գյուղատնտեսության վերը նշված ճյուղերի զարգացմանը։ Շրջանի յոթնամյա պլանի համաձայն կոլտնտեսություններում խաղողի այգիների տարածությունն ընդարձակվելու է 182, պտղատու այգիներինը՝ 600 հեկտարով։

1959 թվականին շրջանի կոլտնտեսություններում պլանով նախատեսված 35 հեկտարի դիմաց տնկվեց 100 հեկտար խաղողի այգի, իսկ 60 հեկտար պտղատու այգիների դիմաց՝ 90 հեկտար։ Մի քանի կոլտնտեսություններ փորձում են խաղող աճեցնել նույնիսկ անջրդի տարածությունների վրա։ Շրջանի վեց կոլտնտեսություններ արդեն դիմել են գործնական միջոցների այս տարի խաղողի այգիների տարածությունը 50 հեկտարով ևս ավելացնելու. դրանով իսկ գրեթե կկատարվի յոթնամյա պլանով 1965 թվականի համար նախատեսված խաղողի այգիների տնկման առաջադրանքը։ Իհարկե, եղեգնաձորցիները սրանով չեն սահմանափակվում։ Շրջանի կոլտնտեսությունները նախատեսել են 1961—1965 թվականներին տնկել ևս 300 հեկտար խաղողի այգի և յոթնամյակի վերջին տարում ունենալ ոչ թե 887 (ինչպես նախատեսված է պլանով), այլ 1034 հեկտար բերքատու այգիներ։

Այգետնկումների առաջադրանքը հաջողությամբ կատարելու նախապայմաններից մեկը տնկիներով ապահովված լինելն է։ Դրա համար էլ պետական տնկարանից բացի, մի շարք կոլտնտեսություններ հիմնել են նաև սեփական տնկարաններ, որոնք տարեցտարի ընդարձակվում են։

Տարիներ ի վեր շրջանում աչքաթող էր արված այնպիսի կուլտուրայի



զարգացումը, ինչպիսին է ընկուզենին։ Անցյալ տարի առաջին անգամ Աղավնաձորում և Ղավուշուղում կես հեկտարի վրա հիմնվեց ընկուզենու տնկարան, որն այս տարի ընդարձակվելու է։ Ունենալով ընկուզենու սեփական տնկիներ, եղեգնաձորցիներն այսուհետև գետերի ու գետակների, ջրանցքների ու ճանապարհի եզրերին, քարքարոտ տարածություններում կաճեցնեն այդ արժեքավոր կուլտուրան, որը թե՛ միրգ կտա և թե՛ փայտանյութ կհանդիսանա բարձրորակ ու գեղեցիկ կահույքների համար։ Կանցնի կարճ ժամանակ, և եղեգնաձորցիներն ընկուզենի աճեցնելու բնագավառում ռեսպուբլիկայում կգրավեն առաջավոր տեղերից մեկը։ Այդ կուլտուրայից կոլտնտեսությունները կստանան լավ եկամուտ։

Խաղողի այգիներն ընդարձակվելու հետ միասին այժմ շրջանի կոլտնտեսություններում մեծ ուշադրություն է հատկացվում ինչպես հին, այնպես էլ նորատունկ այգիների մշակությանը։ 1959 թվականին գրեթե բոլոր այգիները պարարտացվեցին տեղական և հանքային պարարտանյութերով, ժամանակին փորվեցին ու բուժվեցին։

Շրջանում դեռևս շատ այգետարածություններ լիարժեք չեն։ Բավական է նշել, որ անցյալ տարի գարնանամուտին միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարի վրա 2600-ի փոխարեն կար 1700 վազ, կամ յուրաքանչյուր 100 հեկտարից միայն 65-ն էր վազերով զբաղված։ Այդպիսի դրությանը վերջ տալու և լիարժեք հեկտարներ ունենալու նպատակով անցյալ տարի անդալիզի և արմատակալների միջոցով մոտավորապես 300 հազար վազով լրացվեցին հին այգետարածությունները։ Այս տղղությամբ ավելի մեծ աշխատանք կատարեցին Գետափ, Մալիշկա, Խաչիկ գյուղերի կոլտնտեսությունները։ Միայն Խաչիկ գյուղում անդալիզի և արմատակալների միջոցով լիովին վերականգնվեց 5 հեկտար խաղողի այգի։

Եղեգնաձորցիների ջանասեր և ազնիվ աշխատանքն այգեգործության բնագավառում արդեն տալիս է իր առաջին պտուղները։ Վերջին չորս-հինգ տարիների համեմատությամբ անցյալ տարի շրջանում ստացվեց խաղողի ամենաբարձր բերքը։ Այսպես, օրինակ, խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից եթե 1957 թվականին ստացվել է միջին հաշվով 18,9, 1958 թվականին՝ 29,7, ապա 1959 թվականին ստացվեց 48 ցենտներ բերք։ Շրջանի առանձին կոլտնտեսություններ, որոնց այգիները գրեթե լիարժեք են, և վազերի մշակումն ու խնամքն ավելի լավ է կազմակերպված, ստացել են 2 անգամ ավելի շատ բերք, քան շրջանի միջինն է։ Այդ մասին են խոսում Ռինդ և Արենի գյուղերի կոլտնտեսությունների ցուցանիշները։

Բերքատվության աճը (հեկտարից միջինը ցենտներով)

| Կոլտնտեսությունը | 1956 | 1957 | 1958 | 1959 |
|---|---|---|---|---|
| Արենի . . . . | 70 | 39,1 | 54,6 | 111,3 |
| Ռինդ . . . . | 77 | 56,1 | 58,5 | 117 |

Այս աղյուսակից երևում է, որ Եղեգնաձորի պայմաններում հնարավոր է հեկտարից միջին հաշվով ստանալ ոչ միայն 48—60, այլև 100—120 և, նույնիսկ, 150 ցենտներ խաղողի բերք, քանի որ մյուս կոլտնտեսություններն էլ

իրենց հողակլիմայական պայմաններով գրեթե ոչնչով չեն տարբերվում Արենիի և Ռինդի կոլտնտեսություններից։ Կարևորը՝ մասսաների կազմակերպումը և այգիների լավ խնամքն է։

Շրջանի պարտիական, սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունները նախատեսել են խաղողի համախառն բերքը 1959 թվականի 3200 տոննայից, 1965 թվականին հասցնել 7—8 հազար տոննայի։

Խաղողագործության արագ վերելքը մեծ հեռանկարներ է բացում Եղեգնաձորում գինեգործության զարգացման համար։ Այժմ իսկ շրջանն աչքի է ընկնում իր «Վերնաշեն», «Արենի» և «Գետափ» գինիներով, որոնք թե՛ իրենց համով, թե բուրմունքով հայտնի են ո՛չ միայն ռեսպուբլիկայում, այլև նրանից դուրս։ «Վերնաշեն» կիսաքաղցր գինին 1958 թվականին արժանացավ Մոսկվայի համտեսային հանձնաժողովի բարձր գնահատականին և 10 հնարավորից շահեց 8,5 միավոր։

Ինչպես վերևում նշեցինք, խաղողագործության հետ զուգընթաց շրջանում մեծ չափով ընդարձակվելու է պտղատու այգիների տարածությունը, որի շնորհիվ 1958 թվականի 248 տոննայի դիմաց 1965 թվականին ստացվելու է ավելի քան 1400 տոննա միրգ։

Հնարավո՞ր է արդյոք սննդի արդյունաբերության ձեռնարկությունների ներկա կարողությամբ մշակել այդ քանակությամբ խաղողի ու մրգի բերք։ Ո՛չ։ Շրջանի միակ գինեգործարանը նույնիսկ 1959 թվականին չկարողացավ լրիվ վերամշակել կոլտնտեսությունների խաղողի բերքը։ Դրա համար էլ հրամայական պահանջ է՝ շրջանում գինու և պահածոների արտադրության ձեռնարկությունների կառուցումը։

Խաղողագործության և պտղաբուծության արագ զարգացումը մեծ չափով կնպաստի կոլտնտեսությունների եկամտի աճին, կբարձրացնի կոլտնտեսականների նյութական մակարդակը։ Այսպես, 1958 թվականին վերոհիշյալ ճյուղերի գծով ստացվեց մոտ 6 միլիոն ռուբլու եկամուտ, 1965 թվականին այն կհասնի մոտ 30 միլիոնի։

ՍՄԿԿ XXI համագումարը և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումը տեղական պարտիական կազմակերպությունների և սովետական օրգանների առջև խնդիր են դրել՝ միջոցառումներ իրագործել հանրային անասնաբուծության հետագա զարգացման, կոլտնտեսային ու սովխոզային ֆերմաներում մթերատու անասունների գլխաքանակի խիստ ավելացման, անասունների ցեղի բարելավման ուղղությամբ այն հաշվով, որ ժամկետից շուտ կատարվեն յոթնամյակի առաջադրանքները. այդ խոշոր քայլ կլինի բնակչության մեկ շնչին ընկնող մսի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու խնդիրը լուծելու գործում։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է տարեցտարի ազնվացնել անասունների ցեղն ու սեփական հոտի վերարտադրության հաշվին ավելացնել նրանց գլխաքանակը, ինչպես նաև ստեղծել կերի կայուն բազա։

Յոթնամյակի հենց առաջին տարվանից շրջանի աշխատավորները համառ պայքարի ելան անասնաբուծության զարգացման առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, մայրական կազմի աճն ապահովելու համար։



### Անասունների գլխաքանակի աճը Եղեգնաձորում 1958—1959 թթ.

| Անասունների տեսակները | 1958 թ. (գլուխ) | 1959 թ. (գլուխ) | |
|---|---|---|---|
| | | պլանով | կատարված է |
| Խոշոր եղջերավոր . . . | 10759 | 10990 | 11625 |
| որից՝ կովեր . . . | 2536 | 2803 | 2821 |
| Ոչխարներ . . . . | 39600 | 47660 | 47660 |
| Խոզեր . . . . | 940 | 1261 | 1656 |
| Թռչուններ . . . . | 9402 | 15095 | 15095 |

Այս աղյուսակից երևում է, որ 1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մոտ 300-ով ավելացել է կովերի գլխաքանակը, շուրջ 700-ով՝ խոզերինը, իսկ թռչունների թիվը գրեթե կրկնապատկվել է։ Կարևորն այն է, որ շրջանի կոլտնտեսություններում անասունների գլխաքանակն ավելացել է միայն սեփական հոտի վերարտադրման հաշվին։ Անասունների խնամքը լավ կազմակերպելու շնորհիվ զգալիորեն աճել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ 1958 թվականի 2623 տոննայի դիմաց անցյալ տարի արտադրվեց 3053 տոննա կաթ. նույն ժամանակաշրջանում կոլտնտեսություններում մսի արտադրությունն ավելացել է 213, բրդինը՝ 20 տոննայով։ Մսի արտադրության մեջ զգալիորեն ավելացավ խոզի մսի (50 տոննա) և թռչունների մսի (10 տոննա) արտադրությունը։

Առանձին կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների ձեռնարկած քաղաքական մասսայական աշխատանքի, կազմակերպչական միջոցառումների և կոլտնտեսականների եռանդուն աշխատանքի շնորհիվ անասնաբուծության բնագավառում ձեռք բերվեցին ավելի նշանակալից հաջողություններ։ Գնիշիկի կոլտնտեսությունում (Նախագահ Ա. Գյուլիջանյան) յոթնամյակի առաջին տարում անասունների գլխաքանակը հասավ 1965 թվականի համար նախատեսված մակարդակին։ Անասունների գիրացումն ու բտումը լավ կազմակերպելու շնորհիվ գնիշիկցիները անցյալ տարի զգալիորեն բարձրացրին մսացու անասունների կենդանի քաշը (ամեն մի խոշոր եղջերավոր անասունի քաշը հասավ 350, ոչխարինը՝ 62 կիլոգրամի)։ Հովիվ Կ. Սարգսյանի խնամած յուրաքանչյուր մսացու ոչխարի քաշը եղել է 70 կգ։ Կոլտնտեսությունն անցյալ տարի, նախատեսված 500-ի փոխարեն, արտադրեց 800 ցենտներ միս։ Սակայն պետք է խոստովանել, որ Եղեգնաձորում առաջավոր կոլտնտեսությունների կողքին կան այնպիսիք, որոնք գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ շատ ետ են մնում շրջանի միջին մակարդակից և արգելակում շրջանի արագ առաջընթացը։

Փորձը ցույց է տալիս, որ Եղեգնաձորի շրջանի, հատկապես, Գլաձորի, Վերնաշենի, Աղքենդի, Ղավուշուղի, Ալայազի և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսությունների պայմանները շատ նպաստավոր են ոչխարաբուծության համար։ Ոչխարների ցեղի ազնվացման շնորհիվ կարելի է ստանալ և՛ շատ միս, և՛ շատ ու բարձրորակ բուրդ։ Նախատեսված է այս տարի ոչխարների մայրական կազմն ավելացնել մոտ 5000 գլխով և մինիմումի հասցնել անկումը։ Աշխատում ենք կոլտնտեսություններում լիովին կիրառել արհեստական սերմնա-

վորումը և առաջավորների մեթոդով կազմակերպել մեկ տարում ոչխարների երկու ծին, կամ երկու տարում՝ երեք ծին։ Այս միջոցառումները հնարավորություն կտան հենց այդ տարի արտադրել 500, իսկ հետագայում՝ 800—1000 տոննա ոչխարի միս։

Անասնապահության զարգացման հետագա վերելքը և անասնաբուծական մթերքների արտադրության աճը լիովին ապահովելու համար անհրաժեշտ են մի շարք արմատական միջոցառումներ։ Ամենից առաջ անհրաժեշտ է անասունները կերով ապահովել մսուրային շրջանում։ Ճիշտ է, անցյալ տարի այս ուղղությամբ որոշ քայլեր արվեցին. շրջանում ցանովի խոտի տարածությունը ավելացվեց 750 հեկտարով, և կուտակվեց 12400 տոննա խոտ, պատրաստվեց 8600 տոննա սիլոս. սակայն այդ շատ քիչ է աճող պահանջի համեմատությամբ։ Շրջանի պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստներն ու կոլտնտեսականները իրենց պատվի գործն են համարում այս տարի ցանովի խոտի տարածությունները կրկնապատկել, իսկ մոտակա տարիներին այն հասցնել 3500—4000 հեկտարի։ Զգալիորեն ընդարձակվելու է նաև եգիպտացորենի ցանքը։

Շատ կոլտնտեսություններում դեռևս չկան տիպային գոմեր, կաթնաանասնապահական ֆերմաներում լայնորեն չեն կիրառվում մեքենաները. այդ մեծ չափով արգելակում է անասնապահական մթերքների արտադրության բարձրացմանը և նրանց ինքնարժեքի իջեցմանը։ Անցյալ տարի որոշ աշխատանք կատարվեց այդ ուղղությամբ, բայց այն դեռևս չի կարող բավարարել անասնաբուծությունը կուլտուրական և առաջավոր մեթոդներով վարելու մեր պահանջը։

Եղեգնաձորի մի շարք կոլտնտեսությունների եկամուտների մեջ որոշակի դեր է խաղում ծխախոտագործությունը։ Անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց միջին հաշվով 15 ցենտներ բերք, կամ 1958 թվականի համեմատությամբ՝ մոտ 60 տոննայով ավելի ծխախոտ։ Կոլտնտեսությունների՝ ծխախոտից ստացված եկամուտը 1957 թվականի 6.356 հազար ռուբլուց 1959 թվականին հասավ 10.520 հազարի։ Առանձին կոլտնտեսություններ սածիլային տնտեսությունը լավ հիմքերի վրա դնելու, ծխախոտի պլանտացիաների մշակումը և բույսերի սնուցումը լավ կազմակերպելու շնորհիվ բարձր բերք են ստանում. օրինակ, անցյալ տարի ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը միջին հաշվով եղել է. Ռինդի կոլտնտեսությունում՝ 31, Մալիշկայի՝ 27, Գետափի՝ 25, Արենիի՝ 22, Ալայազի կոլտնտեսությունում՝ 21 ցենտներ։ Վերջին երկու տարում Գետափի ու Ալայազի կոլտնտեսությունները կրկնապատկեցին բերքատվությունը և անցյալ տարի ստացան՝ Արենիի կոլտնտեսությունը՝ 1,2 միլիոն, Եղեգնաձորինը՝ 1 միլիոն, Ռինդինը՝ 700 հազար, Ելփինի կոլտնտեսությունը՝ 850 հազար ռուբլու եկամուտ։

Այժմ շրջանի պարտիական կազմակերպությունները ձեռք են առնում բոլոր միջոցները, կոլտնտեսություններում եղած պլանտացիաներն առաջավոր ծխախոտագործների օրինակով մշակելու, բերքատվության յոթնամյակի առաջադրանքը հենց այս տարի կատարելու, այսինքն՝ հեկտարից միջին հաշվով 20 ցենտներ ծխախոտի բերք ստանալու համար։ Այս բնագավառում ավելի շատ անելիքներ ունեն Եղեգիս, Ղավուշուղ, Աղավնաձոր և այլ գյուղերի կոլտնտեսությունները, որտեղ հեկտարի միջին բերքատվությունը շատ ցածր է։ Մի՞թե նորմալ է, երբ 1959 թվականին Արենիի, Ելփինի, Գետափի, Ալայազի կոլտնտեսությունները ծխախոտի պլանտացիաների հեկտարից ստացել են միջին հաշվով 35—45 հազար ռուբլու եկամուտ, իսկ Վերնաշենի, Աղավնաձորի, Աղքենդի կոլտնտեսությունները՝ 10—20 հազար ռուբլու։



Խաղողագործությունը և պտղաբուծությունն արագ զարգացնելու, ինչպես և անասնապահության համար կերի կայուն բազա ստեղծելու գործում Եղեգնաձորի պայմաններում կարևոր դեր է խաղում ոռոգումը։ Արփա գետը և բազմաթիվ գետակներ հոսում են Եղեգնաձորի շրջանում։ Սակայն մինչև այժմ էլ դրանք աննշան չափով են օգտագործվել։ Մինչդեռ այդ գետակների ու գետի վրա կարելի է կառուցել ջրամբարներ ու ջրհան կայաններ և ամառը հագեցնել բույսերի ծարավը։ Անցյալ տարի ոռոգման ուղղությամբ որոշ գործ կատարվեց, սակայն ավելի մեծ աշխատանքներ են նախատեսված այս և հետագա տարիներին։ Յոթնամյակի վերջին տարում ոռոգվող տարածությունները մոտ 2500 հեկտարով ավելացնելու առումով մեծ անելիքներ ունեն Գլաձորի, Եղեգնաձորի, Գետափի, Արենիի և մի շարք այլ կոլտնտեսություններ։

Ջրաշինարարական աշխատանքներում հատուկ տեղ է գրավում Գլաձորի և Աղավնաձորի ջրհան կայանների կառուցումը։ Այդ կատարելու է Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը։ Արդեն սկսվել է Գլաձորի ջրհան կայանի շինարարությունը, որը պետք է շարք մտնի 1961 թվականի վերջերին. այն հնարավորություն կտա ոռոգելու 550—700 հեկտար տարածություն։ Աղավնաձորի ջրհան կայանը կոռոգի նույն գյուղի և Գետափի գյուղի կոլտնտեսությունների այգիներն ու ցանքատարածությունները, որի շնորհիվ երկու կոլտնտեսությունների էկոնոմիկայում փոփոխություն տեղի կունենա։

Շրջանի աշխատավորները, ջերմ հավանություն տալով ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումներին, պարտավորվել են անշեղորեն կենսագործել դրանք և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը դիմավորել գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձր ցուցանիշներով։ Շրջանը պարտավորվել է 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, պետությանը վաճառել միս՝ 1,8 անգամ, կաթ՝ 1000 ցենտներով, բուրդ՝ 150 ցենտներով ավելի։

Եղեգնաձորցիները տարվա հենց սկզբից պատվով են կատարում իրենց վերցրած պարտավորությունը։ Այս տարվա հունվարին և փետրվարին անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է 20 տոկոսով, մսի արտադրությունը՝ 3 անգամ, որի շնորհիվ մինչև փետրվարի 5-ը կատարվել է պետությանը միս վաճառելու առաջին եռամսյակի առաջադրանքը։

Եվս մի քանի տարի, և Եղեգնաձորի աշխատավորները իրագործելով յոթնամյա պլանը, շրջանը կդարձնեն խաղողի, մրգի, գինու, մսի ու կաթի առատ արտադրության շրջան և իրենց պատվավոր տեղը կգրավեն ռեսպուբլիկայի առաջավորների շարքերում։

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

### ԵՐԲ ԱՐՇԱԼՈՒՅՍՆ ԷՐ ԲԱՑՎՈՒՄ

(Ակնարկ բոցաշունչ ռևոլյուցիոներ Սուրեն Սպանդարյանի մասին)



Վաղ առավոտյան նա արթնացավ գլխացավով, բայց ուրախ տրամադրությամբ: Այդ անիծյալ գլխացավը նորություն չէր, և նա գիտեր, թե ինչից է դա՝ անպայման սակավարյունությունից: Ահա մի բան կուտի, տաք թեյ կխմի, և ամեն ինչ կանցնի: Հետո նամակներ կգրի, իսկ այնուհետև կնստի պարապելու: Շատ եա մնաց այս քանի օրը. ժամանակն անցնում է, իսկ գործերը, նամակները, ֆրանսերենը չեն սպասում:

Սակայն հակառակի պես տանն ուտելու ոչինչ չգտնվեց:

— Էհ, Վերնի*, ես ու դու այսօր քաղցած կմընանք, եթե նստենք տանը:

Շոյելով հավատարիմ շան գլուխը՝ նա հագնվեց, վերցրեց հրացանն ու դուրս եկավ տանից: Դըրսում մայիսյան արևն էր շողում: Սիբիրյան կարճատև, աննկատելի գարունը կարծես խտացել էր այդ օրվա մեջ: Հավերժական անտառների կանաչը շողում էր կարմանալի պայծառությամբ, ու այդ համատարած կանաչության մեջ, որպես արծաթե հեղեղ, հոսում էր լայնատարած Ենիսեյը: Արևից, գարնան գույներից, այդ ամբողջ հեքիաթային պայծառ շրջապատից, կարծես, Կովկասն էր բուրում: Ու դրանից էլ արյունը հզոր հոսանքով խայտաց նրա բազուկներում, սիրտը վարկեց ուժեղ ու համաչափ:

—Այսօր հաջողակ որս կունենանք, Վերնի, և ես քեզ մի կուշտ կկերակրեմ:—Կարծես հասկանալով տիրոջը, շունը հնազանդորեն մռլտաց, թափահարեց թավ պոչը, առաջ ընկավ:

Եվ որսն իսկապես հաջող էր: Մակույկը հըմտորեն վարելով Ենիսեյի հանգիստ ջրերի վրա, նա արդեն ցանկանում էր ափ վերադառնալ, երբ, չգիտես որտեղից, հողմարշավեց քամու առաջին հոսանքը: Երկինքն արագորեն ծածկվեց գորշավուն, թանձր ամպերի մռայլ կանգ:վածներով, ու մոլեգնեց քամին:

Տարերքը դյութեց որսորդին: Թողնելով թիերը, նա ամբողջ հասակով կանգնեց կատաղաբար օրորվող մակույկի մեջ ու հմայված սկսեց դիտել շրջապատը: Անտառների կանաչը մթագնել էր: Հողմը ամպերի սարեր էր գլորում ծառերի գըլխով, ծվեն-ծվեն պատառոտում դրանք, ցրում Ենիսեյի անսահման ջրերի վրա: Գետը, որ քիչ առաջ հանդարտ էր, արդեն ծառս էր լինում քամու ուժգին հոսանքից, ալեկոծվում: Փրփրաքաշ ալիքները կարնվում էին իրար, արշավում գետի հոսանքն ի վար, փշրվում ափերի վրա ու խուլ որոտով պայթում: Ալիքներն արդեն ցատկում էին մակույկի վրա, լցվում նրա մեջ, տաշեղի պես նետում այս ու այն կողմ:

Տարերքը մարդկային ցասման պոռթկում էր հիշեցնում նրան: Թվում էր, որ ոչ թե քամին է մռընչում, այլ ծառս եղած մարդկային բանակներն են որոտընդոստ գոչյունով գրոհում հինավուրց պալատների վրա. ոչ թե ամպերն են տարուբերվում ջրերի վրա, այլ ամբոխների արյունով օծված դըրոշներն են ծածանվում: Թող ավելի ուժգի՛ն պայթի փոթորիկը, թող ամպրոպը որոտա՛ ու շառաչե՛ն հողմերը... Միևնույն է, եթե ոչ այսօր, ապա վաղն անպայման կփողփողան այդ դրոշները... Կատաղի մի ալիք, կարծես, զաղտագողի մոտենալով, հանկարծ իր կատարին առավ մակույկը ու նետեց իր հզոր հոսքի ստորոտում առաջացած վիհի մեջ: Հավատարիմ Վերնին աղեկտուր կաղկանձեց. դրությունը դարձավ վտանգավոր, կյանքի համար սպառնալից: Այնժամ նա ձեռքն առավ թիակները և փորձեց լողալ դեպի ափ: Սակայն ուշ էր արդեն: Քամու հզոր հոսանքը մակույկը քշում էր գետի ընթացքն ի վար: Գետի հատակից բարձրացող վիթխարի ալիքները սպառնում էին խիզախ որսորդի հետ միասին կուլ տալ փխրուն մակույկը: Սակայն վարորդի հմուտ ձեռքի ամեն մի շարժումը մակույկին ստիպում էր խուսանավել, ճեղքել ալիքները, անկումներից հետո կրկին վեր բարձրանալ:

Օրը կիսվել էր արդեն, երբ, վերջապես, նրան հաջողվեց մոտենալ ափին: Մինչ այդ նրա սիրտը բաբախում էր ուժգին ու համաչափ, բազուկներն աշխատում էին անդող, սակայն երբ մոտեցավ ափին, ուժերը կարծես դավաճանեցին: Մի՞թե... Փոթորկի դեմ տարած հաղթանակից հետո նա ուժ չի՞ ունենա տուն վերադառնալու... Կամքի և ուժերի հզոր մի լարումով որսորդը ափ ելավ: Քամին դեռ մոլեգնում էր... թանձրամած ամպերով ծածկված երկինքը կարծես նստել էր գետնին: Շըրջապատն այնպես էր ծածկվել թանձր մառախուղով, որ նա չնկատեց նույնիսկ իրեն մոտեցող երիտասարդ ձկնորսին:

— Իսկ մենք,— ասաց ուրախացած ձկնորսը,— մենք գյուղում մտածում էինք, որ դուք չեք փրկվի...

— Ուրեմն ինձ ու իմ շանը կործանված էիք համարում,— որսորդը խոսում էր շնչասպառ լինելով, բայց ամուր, հաստատուն ձայնով:— Դե, ոչ. մեր կարգի մարդիկ այսքան շուտ չեն հեռանում աշխարհից, թեկուզ այն դժոխք էլ լինի...

— Դու ընկեր Սպ... Սպանդարյանն ես, չէ՞,— ջահել օստյակը* կասկածամտորեն շուրջը նայեց, կարծես վախենալով, որ իրեն կլսեն,— մեր մարդիկ՝ ձկնորսներն ու որսորդները, քեզ սիրում են, հավատում քեզ...

Սպանդարյանը ժպտաց:

— Ես չեմ հասկանում, բայց որ գալիս են քեզ մոտ, քո տունը, կարծես թեթևացած սրտով են ետ դառնում: Դու, ի՞նչ է, կարո՞ղ ես ապագան գուշակել...

Սպանդարյանը գորովանքով նայեց երիտասարդի միամիտ, հավատ ներշնչող դեմքին, ձեռքը դըրեց նրա ուսին:

— Մենք բոլորս մի մեծ ուսուցիչ ունենք. այ, նա կարողանում է ապագան գուշակել: Դե, մենք էլ նրա աշակերտներն ենք, սովորել ենք նրանից: Մեր ուսուցչին ասում են Լենին, լսե՞լ ես:

Երիտասարդը գլխով արեց, ժպտաց.

— Օ՛,— երկյուղածությամբ ասաց նա,— լսել եմ, մեր մեծերը սիրով են խոսում նրա մասին, գիտեմ:

— Ահա այդ Լենինն է գուշակում ապագան և որքա՛ն ճիշտ է գուշակում:

Վայրի անտառների այդ ջահել որդին դուր եկավ Սպանդարյանին: Ինչքա՛ն միամիտն է նա, աշխարհի գործերին անտեղյակ, տանջվող, հուսացող այդ տղան: Ահա նա այս փոթորկի միջով ութ վերստ ճանապարհ է անցել Ենիսեյի ափերով, հետևել իր մակույկի ընթացքին ու, վերջապես, գտել է իրեն: Ինչո՞ւ. ո՞վ է ինքն այդ տղայի համար: Գուցե որոգա՞յթ է, կամ, գուցե, իր հավատարիմ ձկնորսնե՞րն են զաղտագողի ուղարկել, որ օգնի իրեն: Պետք է պարզել:

— Գնանք, տղա՛ս, գնանք, իսկ դու, եթե ուզում ես, կարող ես մեկ-մեկ այցելել ինձ: Գուցե մենք միասի՛ն որսի գնանք, հը՞...

***

Ավելի քան մեկ տարի էր անցել այն օրից, երբ Սպանդարյանին խիստ հսկողության տակ փոխադրեցին Մոնաստիրսկոյե, Տուրուխանյան երկրի այն կետը, որը գրեթե շփվում է բևեռային շրջագծին:

Օրերը ծանր ու տաղտկալի էին անցնում Մոնաստիրսկոյեում, ուր կային ընդամենը մի քանի տասնյակ մարդիկ, մի քանի աքսորական և մի խումբ պահակներ: Դեռ լավ է, որ Սվերդլովը հեռու Կուրեյկայից եկավ վերջերս. այստեղ է Վերա Լազարևնան**: Թե չէ կարելի էր ձանձրույթից ու անգործությունից բոլորովին թուլանալ: Աքսորական ընկերների հետ հանդիպումներն ու զրույցները, տեղացիների ոչ հաճախակի այցելությունները, Կովկասից ստացվող թերթերն ու գրքերը, կապը Լենինի ու Կրուպսկայայի հետ թեթևացնում էին մեռյալ երկրի ձանձրույթն ու տաղտուկը: Ո՛չ, չըպետք է տեղի տալ: Աքսորը, նույնիսկ մարտադաշտից այսքան հեռու, դեռ կործանում չէ: Թեև այստեղ իսկական կյանք չկա, բայց պետք է ստեղծել այն, ապրել Ռուսաստանյան պայքարի արձագանքներով և նույնը կրկնել այստեղ, մասնակցել ընդհանուր պայքարին: Չէ՛ որ կոմունիստները, ընդհանրապես, լավատես են: Այ, կգա ժամանակը, մշուշը կցրվի, վրա կհասնի արցունքների ծովի

* Վերնին Ս. Սպանդարյանի շունն էր աքսորավայրում։

* Օստյակներ — Տուրուխանյան երկրամասում ապրող ժողովուրդ։

** Շվեյցեր Վերա Լազարևնա (1887—1950) հին բոլշևիկուհի, աքսորված էր Ս. Սպանդարյանի հետ։

արյան օվկիանոսների, միլիոնավոր խորտակված կյանքերի հատուցման ժամը:

Եվ Սպանդարյանը պատրաստվում էր այդ պայքարին: Եթե չլիներ ստոր դավաճանությունը, նա վաղուց արդեն դեն նետած կլիներ աքսորականի հագուստը, բայց քանի դեռ ազատությունը շղթայված է, պետք է համբերությամբ մաշել դրանք ու երբ գա ժամանակը փշրել, փշրել այնպես, որ այլևս հնարավոր չլինի դրանցից նորը ձուլել:

1915 թվականի ձմռանը նա իր համար մի նոր զբաղմունք գտավ՝ վարժություն դահուկներով: Թեև օր-օրի վատթարացող առողջությունը թույլ չէր տալիս նրան շատ վազել, բայց նա համառորեն մարզվում էր: Չէ՛ որ բոլշևիկը պետք է ո՛չ միայն հոգեկան, այլև ֆիզիկական կոփվածք ունենա:

Այդ հեռավոր, սառուցյալ երկրից Սպանդարյանը հետևում էր նույնիսկ իր երեխաների դաստիարակությանը, օգնում նրանց՝ դառնալու հասարակությանը պիտանի մարդիկ, ունենալու կամքի ուժ, պրոլետարական հումանիզմ և ինտերնացիոնալիզմ, ապրելու հասարակական շահերով և հավատալու պայծառ ապագային: Նրա սիրտը անասելիորեն ցավում էր, երբ իմանում էր, որ երեխաներից որևէ մեկը «երեք» է ստանում: Չէ՛ որ հայրական սրտի ամբողջ քնքուշ սիրով էր սիրում նրանց և երազում էր, որ նրանք դառնան հիանալի մարդիկ, յուրացնեն մարդկության ստեղծած կուլտուրան:

Իսկ ինքը կարդում ու պարապում էր շատ: Չընայած անասելի զրկանքներին, աքսորի դաժան պայմաններին, նա փիլիսոփայություն և քաղաքատնտեսություն էր ուսումնասիրում, սովորում ֆըրանսերեն, կարդում դրսից եկող թերթերն ու գրքերը, գաղափարական պայքար մղում լիկվիդատորների, օպորտունիստների ու ամեն գույնի շովինիստների դեմ: Նա աքսորականների շրջանում իմպերիալիստական պատերազմում լենինյան պարտվողական քաղաքականություն էր պրոպագանդում, մարքսիզմը պաշտպանում ամեն տեսակ ռեվիզիոնիզմից:

Նուրբ ու զգայուն էր այդ երկաթե կամքի տեր մարդու սիրտը: Ամեն մի անարդարություն վըշտացնում ու կայրացնում էր նրան:

Մոնոստիրսկոյե էր բերվել աքսորականների մի նոր խումբ: Դա թեև տխուր ու մռայլ իրողություն էր, բայց, այնուամենայնիվ, ուրախալի էր, որ ցարական դահիճները պինակիցներին չէին գըլխակահարել: Չէ՛ որ աքսորը դեռ վերջնական կործանում չէ, և այստեղ էլ կարելի է ուժերը համախմբել, մասնակցել պայքարին:

Հոգնած ու ջարդված աքսորականները իրավացիորեն պահանջել էին մարդկայնորեն վարվել իրենց հետ: Սակայն գազազած պահակները դաժանորեն ծեծել էին նրանց: Զայրացած Սպանդարյանը պրիստավից պահանջեց պատժել պահակներին: Նրա խորհրդով աքսորականները բողոքի հեռագիր ուղարկեցին Պետական դումային, որը, սակայն, մնաց անպատասխան: Սպանդարյանին ըսպառնացին քշել երկրի ամենահեռավոր ծայրամասը: Սակայն սպառնալիքը չսասանեց կոփված բոլշևիկի երկաթյա կամքը:

***

1915 թվական, հուլիսի 5: Շղթաների զրնգոցի և զինված պահակների հսկողությամբ Մոնոստիրսկոյե մտավ աքսորականների մի նոր խումբ: Նրանց դիմավորելու էին դուրս եկել Սվերդլովը, Սպանդարյանը և մյուս աքսորյալները: Հուլիսյան այդ օրը սակայն մռայլ էր ու անհրապույր: Ենիսեյի վրա արշավում էր քամին՝ է՛լ ավելի մռայլելով ամռան գունատ օրը: Վերջապես, շոգենավից ափ դուրս եկավ աքսորյալների խումբը: Այն բաղկացած էր չորրորդ Պետական դումայի բոլշևիկյան ֆրակցիայի անդամներից: Նրանց Սիբիր՝ ցմահ աքսորի էին ուղարկել, դումայի ամբիոնից ցարիզմի և պատերազմի դեմ բոլշևիկյան պրոպագանդա մղելու համար: Բոլշևիկյան ոգին նրանց մեջ խիզախ ու անվիշում էր մնացել նաև ցարական դատարանում: Երկչոտություն էր ցուցաբերել միայն Կամենևը: Մի քանի օր անց աքսորական բոլշևիկները որոշեցին լսել «հնգյակի» հաշվետվությունը՝ իր գործունեության և դատարանում դրսևորած վարքագծի մասին: Խորհրդակցությանը մասնակցելու համար հեռավոր Կուրեյկայից այստեղ էր եկել նաև Ստալինը: Զեկուցեց Գ. Պետրովսկին:

Մթնշաղ էր իջել Մոնոստիրսկոյե գյուղի վրա: Սիբիրյան ամառվա կարճ օրը ձուլվում էր Ենիսեյից ու մոտակա անտառներից գյուղի վրա իջնող խավարին: Ճարպամարխը հազիվ լուսավորում էր փոքրիկ սենյակը, ուր նստած էին Կենտկոմի անդամները, աքսորական բոլշևիկները և դումայի «Բոլշևիկյան հնգյակը»: Սպանդարյանի գունատ դեմքին հոգնություն ու թուլություն էր երևում: Սակայն նա կամքի հզոր լարումով հաղթահարում էր թուլությունը: Նրա աչքերում կրակ էր բոցկլտում, արծվենի հայացքով նա դիտում էր նորեկներին, և ամեն անգամ նրա հայացքը կայրույթով էր կանգ առնում Կամենևի վրա, որը դատարանում իրեն պահել էր Կենտկոմի անդամին ոչ վայել, երկչոտությամբ հրաժարվել էր բոլշևիկյան պարտիայի քաղաքականությունից: Այժմ էլ, բացատրություն տալիս, նա աշխատում էր խուսափել ճշմարտությունը խոստովանելուց:

— Ես, ընկերնե՛ր, այլ կերպ վարվել չէի կարող,— փորձում էր արդարանալ Կամենևը,— ինձ պետք էր արդարանալ:

Խորհրդակցության մասնակիցները նրան լսում



էին կայրույթով: Կամենևի երկչոտությունն ակնհայտ էր բոլորի համար: Դատարանում, հետո այստեղ, փորձել խուսանավել՝ նախ կաշին փըրկելու և ապա խայտառակությունը ծածկելու համար... Մի՞թե այդ ամենը համատեղելի է բոլշևիկի անվան հետ:

Սպանդարյանը, որը Կամենևին էր նայում կայծակող աչքերով ու կկվանքով, ելավ տեղից: Նրա ձայնը հնչեց բարձր, հաստատուն:

— Դուք, ընկեր Կամենև, պարզապես ինչպես դատարանում, այնպես էլ այստեղ, ձեզ պահում եք լիբերալ ադվոկատի պես: Դուք վախենում եք ճշմարտության երեսին բաց աչքերով նայել: Պատկերացնում եմ. լինել բոլշևիկ և երկչոտությամբ հրաժարվել պարտիայի քաղաքականությունից... Ի՞նչ է դա, մարդկային հոգու թուլությո՞ւն, թե դավաճանություն... դա պարզապես դավաճանություն է: Ահա ձեր ընկերները բարձր են պահել իսկական բոլշևիկի իրենց արժանապատվությունը, և խորհրդակցությունը կարձանագրի այդ: Իսկ դո՞ւք... Մեր ճանապարհները տարբեր են, մենք չենք կարող նույն ճանապարհով քայլել: Եվ ո՞ւմ եք դուք ցարական դատարանում վկայակոչել՝ մենշևիկ Իորդանսկուն. ամոթ և խայտառակություն... ձեզ ընկեր կոչելն իսկ ցածր է բոլշևիկի արժանապատվությունից...

Նայելով հուզմունքից ու վրդովմունքից շառագունած նրա դեմքին, Շվեյցերը կարմանում էր: Որտեղի՞ց է այսքան ուժ այս հյուծված մարդու մեջ, այդ ինչպիսի՞ անսպառ կրակ ու եռանդ կա Սուրենի հոգում, այդ կրակված, անդադրում հոգում: Երևում էր, որ խոսելու համար նա լարել է բոլոր ուժերը առանց մնացորդի: Նրա կրակոտ ելույթը լիովին մերկացրեց Կամենևին:

Դրսում բոլորովին մութ էր: Խոր գիշեր էր արդեն, երբ խորհրդակցությունը վերջացավ: Կիսախավար սենյակում մնացին Սվերդլովը, Ստալինը, Սպանդարյանը, Պետրովսկին, Շվեյցերը: Նայելով Պետրովսկու մաշված, ճանապարհի և բանտի դաժան պայմաններից գունատված դեմքին, Սվերդլովն ասաց.

— Հարկ չկա հարցնելու, թե ինչքան են տանջել ձեզ: Այդ մասին մենք գիտենք: Մենք գիտենք նաև Լենինի մասին: Բայց ոչի՛նչ, Դուք պատմեցեք, թե ինչպես է Վլադիմիր Իլյիչը, պատմեցեք Պետերբուրգի, ընկերների մասին...

— Լենինը դեռ տարագիր է, արտասահմանում: Կենտկոմը նրան արգելել է վերադառնալ,— Պետրովսկին պատմում էր ցածրաձայն, բայց ոգևորված,— իսկ Պետերբուրգը սպասում է Լենինին: Ռևոլյուցիայի ալիքը բարձրանում է, Լենինի կանխատեսությամբ...

— Այո՛, հեռու չէ օրը,— Սպանդարյանը կրկին աշխուժացավ,— շուտով կպայթի իններորդ ալիքը: Բայց այդ ինչո՞ւ են վայրահաչում, թե Իլյիչը «ձեռք է մեկնում նրանց», «խորհրդակցում է նրանց հետ» «համաձայնության» մասին... Մենք այստեղ չենք հավատացել և չենք հավատա այդ ստահոդ լուրերին: Պատկերացնել Լենին... և Երմանսկիներ, Վոլսկիներ... Երբե՛ք...

Պետրովսկին ժպտաց, հաստատուն տոնով ասաց.

— Երբե՛ք, դա պրովոկացիա է միայն...

— Այդ մասին ես իմացել եմ Լարինի հոդվածներից, և ահա խնդրել եմ ուղարկել նրա հասցեն, որպեսզի կապերս խզեմ նրանից: Իսկ ահա մի ուրիշ նամակ ինձ արծվի թևեր տվեց: Այդ նամակը ես ստացա Պետերբուրգի մի խումբ բանվորներից: Նրանք ինձ ուղարկել էին նաև 2 ռ. 20 կոպեկ: Ինքնըստինքյան հասկանալի է, որ այդ չնչին գումարը ինձ համար ոչ մի նշանակություն չունի, բայց որքան մխիթարական է և ինչքան բարոյական ուժ է տալիս այդպիսի ուշադրությունը:

— Իլյիչը, ընկեր Տիմոֆեյ, շատ է մտածում քո մասին: Նա և Նադեժդա Կոնստանտինովնան նամակներ են գրում ծանոթներին՝ որպեսզի օգնենք քեզ, Օլգա Վյաչեսլավովնային և հորդ: Նրա վիճակը նույնպես ծանր է,— Պետրովսկու ամեն մի խոսքից հետո Սպանդարյանի դեմքը պայծառանում էր, բայց երբ լսեց հոր մասին, մեկեն մռայլվեց:

— Հա՛յրս: Ինչպիսի՜ն ես դու, հա՛յր: Նա բարեկամնե՛րս, հրաշալի սիրտ ունի և խելոք է, բայց գնաց այլ ճանապարհով: Ես դեռ շատ տարիներ առաջ վիճում էի նրա հետ, մեր մեջ տարաձայնություններ կային: Եվ ահա հենց նրա «բարեկամները»՝ տիրացուները, ծախեցին նրան: Հորս ես ափսոսում ու խղճում եմ:

Նա մի պահ լռեց, ապա կրկին պայծառացած ասաց.

— Վլադիմիր Իլյիչը նույնիսկ այցելել է հորս, զրուցել հետը, օգնել: Այո՛, Իլյիչի օգնությունը ես միշտ զգացել եմ: Եվ ինչո՞ւ միայն ես. մեզ՝ աքսորյալներիս և մեր բոլոր զինակիցներին միշտ էլ ոգևորել ու ջերմացրել են նրա խորհուրդներն ու օգնությունը:

Սակայն ուժերն արդեն դավաճանում էին նրան: Նա խոսում էր դանդաղ և նվաղած ձայնով:

— Մեր Տիմոֆեյը շատ վատ է, ես սաստիկ վախենում եմ նրա կյանքի համար,— Սվերդլովի ականջին շշնջաց Վերա Լազարևնան,— մի՞թե իսկապես անհնար է նրան փրկել...

— Այո, վատ է: Նրան պահում է միայն հավատը,— մտախոհ ասաց Սվերդլովը,— հուսանք, որ այդ կրակե հավատն ու երկաթե կամքը նրան կպահեն մեզ համար...

Լուսադեմին միայն խորհրդակցության վերջին

ժամանակիցները ցրվեցին: Սպանդարյանին տուն ուղեկցելիս Սվերդլովն ասաց.

— Սուրեն, սիրելիս, դու քեզ շատ ես հյուծում: Պետք է ուժերը խնայել...

— Բայց ի՞նչ եմ անում ես: Գրեթե ոչինչ: Ինձ մաշում են այս անգործությունն ու ձանձրույթը: Ա՛յ, եթե ես հիմա Կովկասում կամ Պետերբուրգում լինեի, այս անիծյալ հիվանդությունը երբեք չէր համարձակվի մտնել իմ սիրտը:

— Հավատում եմ, բարեկա՛մս, այնուամենայնիվ լավ պահիր քեզ...

Իրարից բաժանվելիս Սպանդարյանը ամուր սեղմեց Սվերդլովի ձեռքը, շշնջաց.

— Ես չեմ հավատում որ կմեռնեմ, առավել ևս չեմ ուզում ցույց տալ մերոնց ու նրանց: Բայց եթե ես մեռնեմ այստեղ... երբ դու հանդիպես Իլյիչին, հիշի՛ր ինձ, ասա՛, որ ես մինչև վերջ հավատում և սիրում էի նրան ու Նադեժդա Կոնստանտինովնային, ասա, որ թեև մեռած, ես ողջունում եմ ռևոլյուցիան...

Հետագա օրերն ու ամիսները համոզեցին ընկերներին, որ իսկապես այդքան թույլ, հիվանդ սիրտ ունեցող մարդուն պահում են երկաթյա կամքն ու հավատը միայն: Նա երբեք չէր կորցնում հոգու արիությունն ու մտքի պարզությունը: Նրա բոլոր խոսքերն ու մտքերը հագեցած էին կյանքի արշալույսի նկատմամբ լուսեղեն հավատով:

Այնուամենայնիվ անհանգստությունն ու վախը նրա կյանքի համար, աքսորական ընկերներին ստիպեցին ինչ գնով էլ լինի իրավունք ձեռք բերել նրան քաղաք՝ հիվանդանոց տեղափոխելու համար:

***

Այդ կրակե մարդը մեկ անգամ միայն արժանացավ ցարական կառավարության «ողորմածությանը»: Նրան թույլատրվեց պառկել Կրասնոյարսկի բժշկական ընկերության հիվանդանոցում այն ժամանակ, երբ նրա սրտի վարկերն արդեն հաշված էին:

Սենյակը, ուր պառկած էր Սպանդարյանը, հարմարավետ էր, լուսավոր: Պատուհանի առջև փռված էին Սիբիրյան անծայրածիր հեռաստանները: Մենության պահերին նա երազում էր, հիշում իր անցած կյանքն ու ընկերներին, այն գործը, որի համար նա պայքարում էր այդպես կրքոտ ու անդավաճան:

Ո՛չ, իզուր չէր ապրել: Անցնելով կյանքի արյունոտ քառուղիներով, նա աշխարհի գործերի մեջ ու մարդկանց սրտում կրակե այնպիսի հետք է թողել, որը չեն ջնջի ոչ բանտը, ոչ աքսորը: Ու եթե փորձեն հիշել... Բայց մի՞թե հնարավոր է այդ ամենը հիշել: Ուսանողական տարիներից մինչև այն պահը, երբ ցարական շղթան բանտեց ապատ ապրելու և գործելու մարդկային մեծ իրավունքը, ինչե՛ր է արել նա այդ շղթաները փշրելու համար: Գաղափարական պայքարի բոցերում, կազմակերպական աշխատանքի բովում թրծվեց նրա հոգին ու դարձավ ողջակեզ՝ ազատության պայքարում:

...Ու հիմա... Օ՛, որքա՜ն կարճատև է կյանքը: Բայց ո՛չ. այդ պահին նա ամենից քիչ մահվան մասին էր մտածում: Եվ ի՞նչ է մահը, երբ կան կյանք ու պայքար, երբ դեռ այնքան գործեր են սպասում նրան...

...Սակայն ինչ էլ լինի, թող չվշտանան ո՛չ Օլգան, ո՛չ կավակները և ո՛չ էլ ընկերները, որոնց հետ նա նոր կյանքի հիմքերն էր դնում... Թող հավատան կյանքի հաղթանակին և ուրախ լինեն. չէ՞ որ իր տրամադրությունը կայտառ է, ուրախ ու լավ: Կեցցե՛ կյանքը...

...Ամբողջ գիշեր չէր քնել: Ու թեև սարսափելի թուլություն էր զգում, բայց նրա միտքը սթափ էր ու պայծառ: Սրտի վարկերը հազիվ էր զգում կրծքի տակ՝ դանդաղ, թույլ, կարծես ընդհատումներով... կոպերը դավաճանորեն ծանրանում, փակվում էին: Այս ի՞նչ է, քո՞ւնն է համառորեն իջնում աչքերին... Վերջին մի ճիգով բարձրացրեց ծանրացած կոպերը, նայեց շուրջը: Ինքնաբերաբար պատուհանից դուրս նայեց: Այնտեղ, հեռու հորիզոնում, արշալույսն արդեն շառագունում էր: Թույլ, ծանրորեն երկրի վրա կախված ամպերի թանձր կանգվածների վրա խաղում էր վառվող հրացոլքը: Ինչ-որ ջերմ մի հոսանք անցավ նրա սառչող մարմնով, կրծքի տակ խայտաց կյանքի վերջին կայծը, և... կոպերը փակվեցին: Այնպես հանկարծակի փակվեցին կամքի ահռելի ուժով պահվող կապարի ծանրություն ունեցող այդ կոպերը: Ինչո՞ւ, ինչո՛ւ հենց հիմա, երբ գիշերվա տանջալից մղձավանջից հետո առավոտն է բացվում...

Իսկ առավոտը, հիրավի, բացվում էր: Հորիզոնի շիկացած եզրածիրը լույսի հեղեղ էր թափում սառած հեռաստանների վրա:

**Ռ. ԱԲԱՅԱՆ**

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԽԻԶԱԽ ՄԱՐՏԻԿԸ



Կան մարդիկ, որոնք խոր հետք են թողնում ո՛չ միայն ժամանակակիցների հիշողության մեջ, այլև նրանց կյանքը հերոսական լեգենդ է դառնում գալիք սերունդների համար: Այդպիսին էր Գրիգորի Կոնստանտինովիչ Օրջոնիկիձեն՝ մեր պարտիայի լենինյան գվարդիայի այդ պայծառ դեմքերից մեկը, անընկճելի բոլշևիկը, մասսաների անդուլ կազմակերպիչը, պարտիայի և ժողովրդի սիրելին:

Օրջոնիկիձեն միշտ կանգնած էր պրոլետարական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության ամենապատասխանատու դիրքերում: Նրա կյանքը հանդարտ վառվող մի կրակ չէր: Այն հրարձակ ջահ էր, որը բորբոքում էր սրբազան ատելություն դեպի ճնշողներն ու շահագործողները և այրում մարդկանց սրտերը կոմունիզմի վսեմ իդեալների հաղթանակի անսասան հավատով:

Օրջոնիկիձեն պայքարում տատանում և վախ չգիտեր: Երբ բանը վերաբերում էր բանվոր դասակարգի և աշխատավորների ամենակենսական շահերին, նա իր ամբողջ էությամբ նետվում էր պայքարի հորձանուտը, բաց ճակատով ընթանում դժվարություններին ու վտանգներին ընդառաջ, ցուցաբերում տոկունություն և հաստատակամություն, խիզախություն և արիություն: Այդ անձնավորության մեջ զարմանալի ներդաշնակությամբ միահյուսված էին մարտիկն ու կառուցողը: Նրա խոսքի և գործի միջև չկար ոչ մի խզում:

Անսպառ եռանդի ու տիտանական կամքի այնպիսի մոնոլիտ գործիչներ, մասսաների իսկական ղեկավարներ, ինչպիսին Օրջոնիկիձեն էր, հանդես են գալիս դեռևս «փոթորկից առաջ», երբ դեռ նոր են կզացվում համաժողովրդական ցասման խուլ որոտները: Իսկ երբ պայթում է ահեղ ու փրկարար փոթորիկը, մասսաների գլուխն անցած՝ առաջնորդում են նրանց դեպի գրոհ, հնի կործանման և նորի կառուցման դժվարին ուղիներով:

Օրջոնիկիձեն իր ամբողջ կյանքում ընթացավ մեծ Լենինի ուղիով, պրոլետարական ռևոլյուցիոն գումարտակների առջևից: Վ. Ի. Լենինը բնութագրելով Օրջոնիկիձեին՝ ասել է. «Նա շատ հավատարիմ ու գործունյա ռևոլյուցիոներ է»: Մի՞թե կարող է ավելի բարձր գնահատական լինել պրոլետարական ռևոլյուցիոների համար, քան գնահատականն Իլյիչի, որը գիտեր թափանցել մարդկային հոգու գաղտնարանները, ճանաչել մարդուն, տարբերել իր կյանքը ժողովրդին նվիրաբերած ասպետին ռևոլյուցիայի պատահական ուղեկիցներից:

Գ. Կ. Օրջոնիկիձեն, 17 տարեկան հասակում 1903 թվականին մտնում է ՌՍԴԲՊ շարքերը և հաստատակամորեն կանգնում լենինյան, բոլշևիկյան դիրքերում: Իր ռևոլյուցիոն գործունեության հենց առաջին քայլերից Օրջոնիկիձեն ընտրում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների տատասկոտ ուղին: Հենց այդ ժամանակ նա հանդիպում է ռևոլյուցիայի լեգենդար հերոս Կամոյին: Միայն այս անունը բավական է պատկերացնելու համար այն դպրոցը, որն անցավ պատանի Օրջոնիկիձեն: Աշխատելով Կամոյի անմիջական ղեկավարությամբ, նա ստանում է իր ռևոլյուցիոն առաջին մկրտությունը: Հետագայում այդ նշանավոր ռևոլյուցիոներներին տեսնում ենք միասին ո՛չ միայն ընդհատակում, այլև քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում, Անդրկովկասում Սովետական իշխանության հաղթանակի և նրա ամրապնդման համար մղվող պայքարում: Սերգոն միշտ երախտագիտությամբ էր հիշում Կամոյին, որի հետ կապված էր մեծ բարեկամությամբ ու եղբայրությամբ:

Երիտասարդ բոլշևիկը պրոպագանդիստական աշխատանք է կատարում Թիֆլիսի երկաթուղային արհեստանոցներում, թռուցիկներ տարածում, ակտիվ մասնակցում է բանվորական գործադուլների և մասսայական ցույցերի կազմակերպմանը:

1905 թվականի ռևոլյուցիայի փոթորկոտ օրերին պարտիան Օրջոնիկիձեին ուղարկում է Արևմտյան Վրաստան: Սերգոն պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանք է ծավալում Վրաստանի արևմտյան գավառներում: Ապա մի որոշ ժամանակ նա աշխատում է Բաթումիում և այնուհետև՝ Աբխազիայում, ուր ծառայում է Գուդաուտիի գյուղական հիվանդանոցում: Օրջոնիկիձեն մեծ ժողովրդականություն է վայելում գյուղացիների ամենալայն խավերում: Նա մերթ դիմում է նրանց ագիտատորի բոցաշունչ խոսքով, մերթ որպես գյուղացիների պատվիրակ համարձակորեն կալվածատերերին է ներկայացնում նրանց արդարացի պահանջները: Բազմամարդ միտինգներում և ժողովներում նա մերկացնում է մենշևիկների վախկոտությունն ու դավաճանությունը, մասսաներին կոչում զինված ապստամբության: Օրջոնիկիձեն կազմակերպում է «Կարմիր հարյուրյակներ», սպառազինում նրանց:

Դեկտեմբերյան մի մութ գիշեր, կատաղի փոթորկի և անձրևի ժամանակ, ալեկոծ ծովով Գուդաուտիի մի խումբ բոլշևիկներ Սերգոյի գլխավորությամբ զենք են փոխադրում Գագրայից: Նավակը կանգ է առնում ամայի ծովափին: Արագ դատարկում են նավակը և սկսում զենքի տեղափոխումը: Այդ պահին ոստիկանությունը հայտաբերում է նրանց ու ձերբակալում: Կալանավորված է նաև Սերգոն: Դա նրա երկրորդ ձերբակալությունն էր: Քննությունը տևում է մի քանի ամիս: Սակայն Սերգոն այնպես է խճճում քննիչներին, որ նրանք դժվարանում են մեղադրանքը հաստատել: Սուխումիի բոլշևիկյան կազմակերպության ջանքերով 1906 թվականի մայիսին Սերգոն երաշխավորությամբ ազատվում է կալանքից: Բայց նա այլևս չի կարող մնալ Աբխազիայում: Կարճ ժամանակ պարտիական աշխատանք կատարելով Թիֆլիսում, անլեգալ կերպով մեկնում է Բեռլին: Չորս ամիս հետո նա վերադառնում է Ռուսաստան: 1907 թվականի մարտին Սերգոյին տեսնում ենք Բաքվում:

Բաքվում դասակարգային հակասությունների ու ազգային ներհակությունների պայմաններում, տակավին երիտասարդ Օրջոնիկիձեն ձևավորվում է որպես մեր պարտիայի ականավոր գործիչներից մեկը: Սերգոն աշխատում է Ստալինի, Շահումյանի, Սպանդարյանի, Ջափարիձեի նման ականավոր ռևոլյուցիոներների ղեկավարությամբ: Շփվելով Բաքվի պրոլետարիատի լայն մասսաների հետ, Օրջոնիկիձեն դառնում է նրանց ճանաչված ու սիրելի ղեկավարներից մեկը:

Սերգոն Բալախանու՝ Բաքվի արդյունաբերական այդ խոշոր շրջանի, պարտիական կազմակերպիչն է: Այստեղ նույնպես նրա գոյության լեգալ ձևը իր մասնագիտությունն է: Նա աշխատում է որպես բուժակ Շ. Ասադուլաևի հանքերում և այնտեղ էլ ապրում: Սերգոն իր ողջ էությամբ ձուլվում է նավթաշխարհի մարդկանց հետ: Նա գիտե ամեն մի բանվորի խոհերն ու տրամադրությունները: Նրան սիրով ընդունում են բանվորական ընտանիքներում և հանրակացարաններում: Աշխատանքի մարդը, լիներ ռուս թե վրացի, ադրբեջանցի թե հայ, հարազատ էր Սերգոյին: Նա ատում էր նացիոնալիզմն ու շովինիզմը, ամենուրեք հանդես գալով որպես աշխատավորների միջազգային համերաշխության ու եղբայրության մունետիկ: Այդ ամրակուռ լենինյանը իր ռևոլյուցիոն բնավորության ամբողջ ուժով բոլշևիզմի սկզբունքային դիրքերից մերկացնում և ջախջախիչ հարվածներ է հասցնում մենշևիկներին, դաշնակցականներին, նացիոնալիստական մյուս պարտիաներին, խլում տարբեր ազգությունների բանվորներին նրանց քայքայիչ ազդեցությունից և համախմբում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո:

Ջափարիձեի, Սպանդարյանի, Օրջոնիկիձեի և մյուս բոլշևիկների ջանքերով 1907 թվականի մայիսի 1-ին շատ հանքերում դադարեցվում է աշխատանքը: Ոչ լրիվ տվյալներով այդ օրը 22 հազարից ավելի բանվորներ գործադուլ են հայտարարում: Բալախանիում Սերգոյի առաջնորդությամբ ցույցի են դուրս գալիս 3 հազար նավթագործներ: Ոստիկանությունը մեծ դժվարությամբ ցրում է միտինգը: Տեղի են ունենում տասնյակ ձերբակալություններ: Կալանավորվում է նաև Սերգոն: Ոստիկանությունը չճանաչելով նրան՝ որոշ ժամանակ անց ազատում է կալանքից:

Օրջոնիկիձեն ակտիվ մասնակցել է երրորդ Պետական դումայի ընտրական կամպանիային և այն մեծ պայքարին, որ Բաքվի բանվորները, բոլշևիկների ղեկավարությամբ, մղեցին նավթարդյունաբերողների հետ կոլեկտիվ պայմանագիր կնքելու համար: Այդ բուռն օրերին, չնայած ուժեղացող քաղաքական ռեակցիային, շրջանների, ինչպես նաև Բաքվի կոմիտեի ղեկավարությունն անցնում է բոլշևիկների ձեռքը: Բաքուն դառնում է բոլշևիզմի ամուր պատվարը, նրա միջնաբերդը Անդրկովկասում:

Ոստիկանությունը հայտաբերում և ձերբակալում է Բաքվի բոլշևիկյան կոմիտեն: Բանտ է նետվում նաև Օրջոնիկիձեն: 1908 թվականի մարտին Սերգոն ցմահ աքսորի է դատապարտվում դեպի Սիբիրի հեռավոր շրջանները: Ցարական



կառավարությունը որոշում է նրա հետ մաքրել իր հին հաշիվները: Սերգոյին փոխադրում են Բաթումի, այնտեղից էլ Սուխումի: Այստեղ Օրջոնիկիձեին դատում են նաև 1905 թվականին Գուդաուտի զենք փոխադրելու համար և միայն 1909 թվականին նրան ուղարկում են աքսորավայր: Սակայն երկու ամիս անց նա փախչում է աքսորից և անլեգալ վերադառնում Բաքու, որպեսզի շարունակի պարտիական աշխատանքը:

Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը որոշում է օգնել Իրանի ռևոլյուցիոն-դեմոկրատական ուժերին: 1909 թվականի աշնանը Օրջոնիկիձեն մի խումբ ընկերներով մեկնում է Իրան: Այստեղ նա միշտ մասսաների հետ է և բացառիկ ժողովրդականություն է վայելում աշխատավորների և դեմոկրատական տարրերի ամենալայն շրջաններում: Ռևոլյուցիոն բանակի շարքերում, որպես նրա ղեկավարներից մեկը, Սերգոն մասնակցում է Արդեբիլ քաղաքի գրավմանը: Միտինգներում և աշխատավորների ժողովներում նա մերկացնում էր ցարիզմի գաղութային քաղաքականությունը, ցույց տալիս, որ Իրանում ռեակցիայի տիրապետությունը հենվում է անգլիական իմպերիալիզմի և ցարական սվինների վրա: Ռեշտում, Էնզելիում Օրջոնիկիձեն կազմակերպում է քաղաքական ինտերնացիոնալիստական ակումբներ, ուր հանդիպում էին իրանցի, ադրբեջանցի, և հայ դեմոկրատները, տարածում է բոլշևիկյան գրականություն, մասնակցում առաջին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ստեղծմանը Իրանում: Օրջոնիկիձեն Իրանից կապ է հաստատում Փարիզի բոլշևիկյան կենտրոնի հետ, ստանում և Ռուսաստան է փոխադրում բոլշևիկյան գրականություն: Ն. Կ. Կրուպսկայան իր հուշերում պատմում է, որ այդ ժամանակ Սերգոյի հետ նամակագրություն է սկսվում: Սերգոյին առանձնապես հետաքրքրում էր Իլյիչի դիրքը պլեխանովականների, լիկվիդատորների և վպերյոդականների նկատմամբ:

1910 թվականի աշնանը Օրջոնիկիձեն մեկնում է Փարիզ և կայարանից ուղղակի գնում Վլադիմիր Իլյիչի մոտ: Այդ օրվանից, գրում է Ն. Կ. Կրուպսկայան, նա դարձավ մեր ամենամոտ ընկերներից մեկը:

Սերգոն Փարիզ եկավ այն ժամանակ, երբ, ինչպես ինքն է գրել, Իլյիչի գլխավորած բոլշևիկյան խումբը գնդակոծվում էր բոլոր կողմերից: Ակտիվ մասնակցելով պարտիայի ամրապնդման համար մղված պայքարին, նա միաժամանակ սովորում է Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Փարիզի մերձակա ավանում ստեղծված պարտիական դպրոցում:

Սակայն Սերգոն շուտով ընդհատում է ուսումը: Ստանալով Վ. Ի. Լենինի չափազանց պատասխանատու հանձնարարությունը՝ ղեկավարել առաջիկա պարտիական կոնֆերանսի նախապատրաստման և հրավիրման դժվարին աշխատանքը, 1911 թվականի հուլիսին նորից վերադառնում է Ռուսաստան: Իրեն հատուկ եռանդով նա լծվում է գործի և փայլուն կերպով կատարում Վ. Ի. Լենինի հանձնարարությունը:

Սերգոն շտապում է Փարիզ՝ Լենինին զեկուցելու Ռուսաստանում իր կատարած աշխատանքի մասին: Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց ՌՕԿ-ի՝ Ռուսաստանում գործող պարտիական կենտրոնի, ստեղծումը: «...գլխավորն արված է: Դրոշը պարզված է,— գրել է Լենինը:— Ամբողջ Ռուսաստանի բանվորական խմբակները ձգվեցին դեպի նա և այժմ այդ դրոշն անկարելի է տապալել կոնտրռևոլյուցիոն ոչ մի գրոհով»:

1912 թվականի հունվարի 18—30-ը տեղի ունեցավ Պրագայի պարտիական պատմական կոնֆերանսը, որին Օրջոնիկիձեն մասնակցում էր որպես Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության պատգամավոր: Կոնֆերանսը լսեց Օրջոնիկիձեի ընդարձակ զեկուցումը ՌՕԿ-ի գործունեության մասին և միահամուռ հավանություն տվեց Ռուսաստանի պարտիական կազմակերպությունների համախմբման գործում հանձնաժողովի կատարած բեղմնավոր աշխատանքին: Կոնֆերանսը Օրջոնիկիձեին ընտրեց Կենտկոմի անդամ: Ստեղծվեց Կենտկոմի ռուսական բյուրո, որի կազմի մեջ մտան Օրջոնիկիձեն, Ստալինը և Սպանդարյանը:

Կոնֆերանսի աշխատանքների ավարտումից հետո Օրջոնիկիձեն վերադառնում է Ռուսաստան պարտիական կազմակերպությունների գործունեությունը ղեկավարելու համար: Թիֆլիսում գաղտնի կերպով կազմակերպում է բոլշևիկյան կարևոր փաստաթղթերի տպագրությունը, որոնք տասնյակ հազարավոր օրինակներով տարածվում են ամբողջ երկրում: 1912 թվականի ապրիլին Օրջոնիկիձեն մեկնում է Պետերբուրգ, որտեղ և ձերբակալվում է: Ոստիկանական դեպարտամենտը ցնծության մեջ է: Իր ձեռքումն է այն անձնավորությունը, որին վաղուց որոնում էր: Ժանդարմները շղթայակապ Օրջոնիկիձեին փակում են Շլիսելբուրգի ամրոցում՝ ցարական բռնակալության այդ սարսափելի կնդանում: Ռևոլյուցիոներների համար բանտը եղել է համառ ուսուցման վայր: Շլիսելբուրգի ամրոցի տաժանակիր ռեժիմի պայմաններում Օրջոնիկիձեն ուղղակի կլանում է գրքերը, օգտագործում բոլոր հնարավորությունները ինքնակրթության համար:

1915 թվականին Օրջոնիկիձեն էտապով ուղարկվում է աքսորավայրը՝ Յակուտիա: Այստեղ աքսորված մյուս բոլշևիկների հետ նա ակտիվ ռևոլյուցիոն աշխատանք է ծավալում տեղի բնակչության մեջ:

1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո Օրջոնիկիձեն վերադառնում է Պետրոգրադ: Վ. Ի. Լենինի առաջարկով Օրջոնիկիձեն մտցվում է պարտիայի Պետրոգրադի կոմիտեի և Պետրոգրադի Սովետի գործադիր կոմիտեի կազմի մեջ: Սերգոն հասունացող պատմական մեծ իրադարձությունների կենտրոնում է: Մասսաների կազմակերպչի բոցաշունչ խոսքը հնչում է մայրաքաղաքի փողոցներում և հրապարակներում, գործարաններում ու զորանոցներում: Նա համախմբում է բանվորներին և զինվորներին պարտիայի, Լենինի դրոշի քուրջը, նախապատրաստում նրանց գալիք գրոհների:

Հուլիսյան օրերին կոնտրռևոլյուցիան մենշևիկների և էսեռների աջակցությամբ հարձակման է անցնում ժողովրդի դեմ: Ռեակցիան զազրելի պրովոկացիա է տարածում Լենինի մասին և պահանջում դատաստան տեսնել պրոլետարիատի առաջնորդի հետ: Պարտիայի Կենտկոմը որոշում է ինչ գնով էլ լինի պահպանել Վ. Ի. Լենինի կյանքը: Պարտիայի և ռևոլյուցիայի համար այդ ծանր օրերին Օրջոնիկիձեն մեկն էր այն ընկերներից, որոնց Կենտկոմը հանձնարարել էր ապահովել Վլադիմիր Իլյիչի անվտանգությունը: Առաջնորդը անցնում է ընդհատակ: Պարտիայի VI համագումարում Օրջոնիկիձեն զեկուցում է Վ. Ի. Լենինի բուրժուական դատարան չներկայանալու հարցի մասին: «Նրանց համար կարևոր է ռևոլյուցիոն պարտիայի շարքերից խլել որքան կարելի է շատ առաջնորդներ,— հայտարարում է համագումարում Օրջոնիկիձեն:— Մենք ոչ մի դեպքում չպետք է նրանց ձեռքը տանք ընկ. Լենինին»: Համագումարը միահամուռ պաշտպանում է այդ առաջարկը:

1917 թվականի սեպտեմբերին պարտիայի Կենտկոմը Օրջոնիկիձեին կարճ ժամանակով ուղարկում է Անդրկովկաս: Սերգոն Պետրոգրադ է վերադառնում նոյեմբերի 6-ին, երբ սկսվել էր զինված ապստամբությունը: Նա շտապում է Սմոլնի՝ ռևոլյուցիայի շտաբը: Գիշերը ռազմառևոլյուցիոն կոմիտեն տեղեկություն է ստանում, որ Կերենսկու հրամանով դեպի Պիտեր է շարժվում մեքենայացված մի գումարտակ: Սերգոյին հանձնարարում են նստել ավտոմեքենա և գնալ զորամասին ընդառաջ: Գումարտակը Պետրոգրադ պետք է մտնի որպես ռևոլյուցիայի զորամաս: Տեղի է ունենում Սերգոյի և զինվորների հանդիպումը, որոնք միտինգում հայտարարում են, որ երբեք չեն դավաճանի բանվորներին ու գյուղացիներին: Գումարտակն անցնում է բոլշևիկների կողմը: Զինվորների պատգամավորները զրահապատ մեքենաներով նոյեմբերի 7-ի գիշերը հասնում են Պիտեր: Այդ պահին Սմոլնիում տեղի էր ունենում Սովետների II համագումարը: Գումարտակի ներկայացուցիչը համագումարում, որոտալի ծափահարությունների ներքո, հայտարարում է, որ իրենք այստեղ են եկել՝ պայքարելու Սովետների իշխանության համար:

Հոկտեմբերյան զինված ապստամբությունը հաղթանակեց: Սերգոն այն ընկերների մեջ էր, որոնք այդ պատմական օրերին Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ հերոսական աշխատանք էին կատարում պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու համար:

Սկսվում է Սերգոյի հերոսական ուղին քաղաքացիական պատերազմի բոցերի միջով: Պարտիայի և Սովետական պետության քաղաքական, ռազմական ականավոր գործչի այդ ուղին լի է հերոսական սխրագործություններով ու մաքառումներով, պարտությունների դառնությամբ և հաղթանակի բերկրանքով: Կազմակերպելով բանվորների և չքավոր գյուղացիների պայքարը բուրժուազիայի և կալվածատերերի դեմ, Օրջոնիկիձեն իր ամբողջ եռանդն ու ուժերը գործադրում էր կարգապահ և մարտունակ Կարմիր Բանակի ստեղծման համար, որն ահռելի ուժ էր դառնում ժողովրդի թշնամիների դեմ:

Քաղաքացիական կռիվներում Սերգոյի ուղին սկսվում է Պետրոգրադից մինչև Ուկրաինա, այնտեղից անցնում Դոն, հասնում մինչև Ցարիցին, Կուբան, Հյուսիսային Կովկաս: Ապա մարտական այդ ուղին շարունակվում է նորից բարձրանալ դեպի հյուսիս, հասնում մինչև Բելոռուսիա, այնտեղից իջնում է հարավային ռազմաճակատ՝ Դենիկինի դեմ և այստեղից դարձյալ Հյուսիսային Կովկաս:

Օրջոնիկիձեն՝ մեծ Լենինի պատվիրակը, ժողովուրդների եղբայրության ու համերաշխության դրոշակակիրը, իր շուրջն է համախմբում բազմացեղ Կովկասի զավակներին, հաղթական անցնում է Կովկասի լեռներով, ազատություն բերելով նրա տանջված ժողովուրդներին: Անդրկովկասում Սերգոն Կիրովի և Միկոյանի հետ միասին ղեկավարում է Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ազատագրման պայքարն իմպերիալիզմի վարձկանների՝ մուսավաթականների, դաշնակցականների և մենշևիկների արյունալի լծի դեմ, դնում է Անդրկովկասի ժողովուրդների անխորտակելի բարեկամության ու եղբայրության ամուր հիմքերը:

1920 թվականի դեկտեմբերի 1-ին Բաքվի Սովետի հանդիսավոր նիստում Օրջոնիկիձեն ազդարարում է Սովետական Սոցիալիստական Հայաստանի ծնունդը: Դիմելով Հայաստանի կոմունիստներին՝ նա ասում է. «Բայց թող նրանք պատվով գնան դեպի սքանչելի սոցիալիստական կարգերը տանող ուղիով, մի ուղի, որը ծածկված է ոչ թե վարդերով, այլ տատասկներով և թող նրանք իմանան, որ մեր ամբողջ եռանդը, մեր բոլոր ուժերը կնվիրենք նրանց օգնելու գործին»:



Սովետական Ռուսաստանը եղբայրական օգնության ձեռք է մեկնում բազմաչարչար Հայաստանին: Իր սուղ միջոցներից բանվորա-գյուղացիական Ռուսաստանը խոշոր օգնություն է ցույց տալիս Հայաստանի աշխատավորներին սովից ու կործանումից փրկելու համար: Հայաստան են ուղարկվում հացով, արդյունաբերական ապրանքներով բեռնված տասնյակ ու տասնյակ գնացքներ, ռեսպուբլիկայի կառավարությանը տրամադրվում է զգալի քանակությամբ վալյուտա ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար: Այս բոլորը կատարվում է Օրջոնիկիձեի ուղղակի միջամտությամբ և օգնությամբ:

Օրջոնիկիձեն գլխավորելով նախ ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոն, իսկ հետո պարտիայի երկրային կոմիտեն, Ս. Մ. Կիրովի և Ալ. Մյասնիկյանի հետ մեծ աշխատանք է կատարում Անդրկովկասում լենինյան ազգային քաղաքականության կիրառման, բոլշևիկյան ուժերը համախմբելու ուղղությամբ: Անհրաժեշտ էր հաշվի առնել յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկայի ազգային ու տնտեսական զարգացման յուրահատկությունները: Անհրաժեշտ էր ամրապնդել պարտիական կազմակերպությունները, տոգորել նրանց ողջ աշխատանքը պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով: Օրջոնիկիձեն սկսում է հետևողականորեն իրագործել Լենինի ցուցումները Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների քաղաքական և տնտեսական միասնության մասին: Հանդես գալով Վրաստանի Կոմպարտիայի առաջին համագումարում՝ Օրջոնիկիձեն ասել է.

— Սովետական ռեսպուբլիկաները, որոնք կանգնած են միջազգային իմպերիալիզմի հարձակման ահավոր վտանգի առաջ, իրենց փրկությունը կարող են գտնել միմյանց հետ սերտ միավորման մեջ: Անտանտան Վրաստանից, Հայաստանից, Ադրբեջանից ուզում էր ստեղծել Բալկաններ, իսկ մենք ստեղծում ենք շահերի միասնությամբ կոդված աշխատավոր ժողովուրդների եղբայրական ընտանիք:

Շուտով Բաքվում տեղի է ունենում Անդրկովկասի Սովետների առաջին համագումարը, որը հռչակում է Անդրկովկասի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների ֆեդերացիան և ընտրում ֆեդերացիայի ղեկավար օրգաններ: Եվ այսպես, քայլ առ քայլ Անդրկովկասի ժողովուրդները, սովետական մյուս ժողովուրդների հետ, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ընթանում են դեպի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծումը, դնելով մեր Հայրենիքի անկախության, նրա հզորության ու փառքի հիմքերը:

1926 թվականի նոյեմբերի 3-ին պարտիայի Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումը Սերգո Օրջոնիկիձեին հաստատում է ԿՎՀ-ի նախագահ, ՍՍՌՄ Կենտգործկոմի որոշմամբ նա նշանակվում է ԲԳՏ ժողկոմ և ՍՍՌՄ Ժողկոմսովետի նախագահի տեղակալ:

Դա մի ժամանակաշրջան էր, երբ պայքարը պարտիայի շարքերի լենինյան միասնության համար սուր բնույթ էր ընդունել և բացառիկ կերպով բարձրացել էին ԿՎՀ-ի դերն ու նշանակությունը: Պարտիան գիտեր, որ Սերգոն՝ այդ հին, փորձված ռևոլյուցիոները, Լենինի հավատարիմ աշակերտն ու զինակիցը, աչքի լույսի պես կպահպանի բոլշևիկյան շարքերի միասնությունը: Պարտիան գիտեր նաև Սերգոյի ուղղամտությունն ու անկեղծությունը, նրա համեստությունն ու անձնական բարոյական մաքրությունը: Եվ Օրջոնիկիձեն լիովին արդարացրեց պարտիայի բարձր վստահությունը:

Օրջոնիկիձեն, գլխավորելով ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Վերահսկիչ Հանձնաժողովը, անհաշտ պայքար է մղում պարտիայի թշնամիների դեմ, մերկացնում տրոցկիստների, զինովևականների, կապիտալիզմի աջ ռեստավրատորների դավաճանական ստոր գործունեությունը, պահպանում բոլշևիկյան պարտիայի լենինյան միասնությունը: Որպես ԲԳՏ ժողկոմ Օրջոնիկիձեն իր ամբողջ եռանդը նվիրում է սովետական պետական ապարատի ամրապնդման, բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ մղվող պայքարին:

Իր կյանքի վերջին շրջանում, մոտ յոթ տարի (1930 թ. նոյեմբեր—1937 թ. փետրվար) Օրջոնիկիձեն աշխատում է որպես Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդի նախագահ և ապա՝ Ծանր արդյունաբերության ժողովրդական կոմիսար: Նա հաստատակամորեն և վճռականությամբ կենսագործում է մեր պարտիայի լենինյան գլխավոր գիծը երկրի սոցիալիստական ինդուստրացման վերաբերյալ, պայքարում ծանր ինդուստրիայի ստեղծման համար: Մեր Հայրենիքի աշխատավորները Օրջոնիկիձեին սիրով անվանում էին երկաթակուռ ժողկոմ, ծանր արդյունաբերության կոմանդարմ: Սերգոյի անվան հետ են կապված Սովետական Միության սոցիալիստական ինդուստրացման խոշոր հաջողությունները:

***

Իր ուժերի ու տաղանդի ծաղկման ամենաբուռն շրջանում, դեռ նոր լրացրած հիսուն տարին, մահը նրան խլեց մեր շարքերից: Սակայն նրա հիշատակը ապրում է ժողովրդի սրտում: Աշխատավոր մարդու երջանկությանը նվիրեց իր կյանքը այն մարդը, որին բոլորը սիրով Սերգո էին անվանում:

ՀՐ. ՄԻՐԶՈՅԱՆ

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՍՈՎԽՈԶՆԵՐԸ

## ԲԱՑ ՃԱԿԱՏՈՎ

Կոտայքի կաթնաանասնապահական սովխոզն ունի 3200 հեկտար օգ-
տագործելի հողատարածություն, որից 1000 հեկտարը Ջրաղբյուրի տեղամա-
սի անբերրի ղուերն են։ Դրանք թերևս էական արդյունք չեն տալիս։ Սովխոզի
կոլեկտիվը որոշել է օրգանական պարարտանյութերի միջոցով աստիճանաբար
բերրի դարձնել այդ տարածությունը։ Անցյալ տարի գոմաղբով պարարտաց-
վեց 60, այս տարի կպարարտացվի 100 հեկտար հողատարածություն։

Անասնապահության շեշտակի վերելքը կապահովվի այն ժամանակ, երբ
կստեղծվի կերի կայուն բազա։ Սովխոզի կոլեկտիվը ձեռնամուխ լինելով այդ
գործին, երկու-երեք տարվա ընթացքում 250 հեկտարով ավելացրել է ցա-
նովի խոտերի ցանքատարածությունը։ Ամեն տարի գարնանը, առվույտի ցան-
քի առաջին հարը և աշնանը, վերջին (չորրորդ) հարը օգտագործվում է որպես
կանաչ կեր։ Այդ մեծ չափով նպաստում է կովերի կաթնատվության բարձ-
րացմանը, հատկապես գարնան սկզբին և աշնանը, երբ արոտավայրերում
խոտը պակասում է։ Առվույտի ցանքատարածությունը լավ մշակելու շնորհիվ
յուրաքանչյուր հեկտարից ստանում ենք 300—350 ցենտներից ոչ պակաս կա-
նաչ զանգված և 100 ցենտներ չոր խոտ։ 1959 թվականին մենք կարողացանք
կուտակել 1800 տոննա չոր խոտ և անասուններն ապահովեցինք լավորակ
կոշտ կերով։

Սովխոզի անասունների կերաբաժնում հյութալի կերն ավելացնելու նպա-
տակով տարեցտարի ընդարձակվում է եգիպտացորենի ցանքը։ Միայն այս
տարի սիլոսի համար կցանվի 60 հեկտար եգիպտացորեն։

Սակայն մեր սովխոզը չունի խոտհարքի ընդարձակ տարածություն, խոտը
հնձվում է փոքր ու քարքարոտ խոտհարքներում։ Չնայած այդ դժվարին պայ-
մաններին, մեր կոլեկտիվի ազնիվ ու կազմակերպված աշխատանքի շնորհիվ
յուրաքանչյուր մետրի վրա խոտ է հնձվում, հավաքվում և դիզվում։

Անասունները կերով ապահովելու նպատակով սովխոզի կոլեկտիվը պայ-
քարում է յոթնամյակում բազմամյա խոտի տարածությունը 600 հեկտարի հաս-
ցնելու համար։ Միայն այս տարի բազմամյա խոտի տարածությունն ընդար-
ձակվելու է 80 հեկտարով։

Մեր սովխոզում տարեցտարի աճում է անասունների գլխաքանակը, գըլ-
խավորապես սեփական հոտի վերարտադրության հաշվին. այդ պայմաններ
է ստեղծում կատարելու և գերակատարելու անասնաբուծական մթերքների
արտադրության առաջադրանքները։



Անասունների գլխաքանակի աճը չորս տարում

| Անվանումը | 1957 թ. | 1958 թ. | 1959 թ. | 1960 թ. (նախատեսված է) |
|---|---|---|---|---|
| Խոշոր եղջերավոր . | 913 | 951 | 1259 | 1330 |
| Այդ թվում կովեր | 325 | 307 | 359 | 440 |
| Մանր եղջերավոր . | 2028 | 2711 | 3450 | 3700 |
| Խոզեր . . | 342 | 500 | 504 | 650 |

Այս աղյուսակից երևում է, որ վերջին երեք տարվա ընթացքում զգալի-
րեն ավելացել է խոշոր և մանր եղջերավոր անասունների ու խոզերի գլխա-
քանակը։ Անասունների գլխաքանակի աճն ու նրանց նկատմամբ ցուցաբերված
լավ խնամքը պայմաններ են ստեղծում զգալի չափով ավելացնելու մսի, կա-
թի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։

Մսի արտադրության աճը սովխոզում

| Մթերքների տեսակը | 1957 թ. (ցենտ.) | 1958 թ. (ցենտ.) | 1959 թ. (ցենտ.) | 1960 թ. պետք է արտադրվի (ցենտ.) |
|---|---|---|---|---|
| Արտադրվել է միս . . | 521 | 846 | 1755 | 2260 |
| Հանձնվել է պետությանը . | 406 | 779 | 1568 | 2200 |
| Որից խոզի միս . . | 100 | 173 | 407 | 650 |

1959 թվականին 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրվել է
60 ցենտներ միս, որից խոզի միս՝ 23 ցենտներ։ Մեր սովխոզի փորձը ցույց
է տալիս, որ խոզաբուծությունը մսի արտադրությունն ավելացնելու լավա-
գույն միջոցն է։ Սովխոզում խրախուսելի գործ է կատարում խոզաբուծական
բրիգադան։ 1959 թվականին պետությանը հանձնված 252 գլուխ խոզի յու-
րաքանչյուրի քաշը հասավ միջին հաշվով 161 կիլոգրամի։ Բրիգադայում լավ
են աշխատում Սիմոնյան Թելլոն, Աղագյուլյան Սիրուշը, Ավագյան Մայրա-
նուշը և ուրիշներ։ Նրանք դարձել են պրոֆեսիոնալ խոզապահներ և նրանց
հոգատար ու ստեղծարար աշխատանքի շնորհիվ սովխոզը տարեցտարի
կրկնապատկում է խոզի մսի արտադրությունը։

Խոզաբուծությունն ավելի արագ կզարգանա (իսկ դա առանձնապես Հա-
յաստանի համար շատ անհրաժեշտ է), եթե այդ կարևոր գործով վերադաս
օրգանները զբաղվեն այնպես, ինչպես հարկն է։ Ցեղը չայլասերելու և խոզերի
գլխաքանակի աճն ապահովելու համար Հայաստանի Անասնապահական-
մթերման գրասենյակը պետք է պլանավորված ձևով, ամեն տարի ներմուծի
անհրաժեշտ քանակությամբ ցեղական վարազներ և վաճառի դրանք խոզա-
բուծական ֆերմաներին։

Սովխոզում նկատելի գործ է կատարված նաև մսի ինքնարժեքի իջեցման
բնագավառում։ Օրինակ, եթե 1956 թվականից մինչև 1958 թվականը մեկ
ցենտների ինքնարժեքը կազմում էր 861—955 ռ., ապա 1959 թվականին 682
ռուբլի, իսկ խոզի մսի ինքնարժեքը (մեկ ցենտների) 1958 թվականին եթե
կազմում էր 1054 ռուբլի, ապա 1959 թվականին կազմեց 874 ռուբլի։

1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ բրդի արտադրությունը սովխոզում աճել է 80 տոկոսով։

Սովխոզի մասնագետների, անասնապահների, կթվորների աղնիվ ու անգուլ աշխատանքի շնորհիվ վերջին երկու տարվա ընթացքում որոշակի հաջողություն է ձեռք բերված կաթի արտադրությունն ավելացնելու գործում։ Եթե 1956 թվականին արտադրվել է 5397 ցենտներ, 1958 թվականին 7694 ցենտներ, ապա 1959 թվականին՝ 9600 ցենտներ կաթ։

Անցյալ տարի սովխոզը մեծ հաջողությունների հասավ կաթի յուղայնությունը բարձրացնելու գործում. տարեկան կաթի միջին յուղայնությունը կազմեց 4 տոկոս։

Անցյալ տարի սովխոզը յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվին ստացել է 300 ցենտներ կաթ։ Տարեցտարի իջնում է նաև կաթի ինքնարժեքը։ Եթե 1956 թվականին մեկ կիլոգրամ կաթի ինքնարժեքը եղել է 1ռ. 95 կոպ., ապա 1959 թվականին՝ 1 ռ. 07 կոպ.։

Կաթի արտադրության ավելացման գործում հսկայական դեր խաղաց վարձատրության նոր ձևը՝ կթվորներին ըստ կաթի յուղայնության վարձատրելը։ Դրա շնորհիվ ոչ միայն բարձրացավ կաթի յուղայնությունը, այլև՝ քանակը։ Շատ և բարձրորակ կաթ ստանալու համար կթվորները հետևողական կերպով տաք ջրով մասաժ են անում կովերի կուրծը և կթում մինչև վերջին կաթիլը։

Անցյալ տարի կթվորուհիներ Վարդուշ Սիմոնյանը և Քնարիկ Հովհաննիսյանը միայն մեկ ամսում տարբեր յուղայնությամբ նույն քանակի (3800 կիլոգրամ) կաթ արտադրելու համար տարբեր գումարով աշխատավարձ են ստացել։ Առաջինի խնամած կովերի կաթի յուղայնությունը եղել է 4,1 տոկոս, նա ստացել է 402 ռուբլի, երկրորդինը՝ 3,5 տոկոս, ստացել է 341 ռուբլի։ Իհարկե, այս գումարի մեջ չի մտնում մյուս աշխատանքների համար նրանց ստացած վաստակը։

Կաթի արտադրության և անասունների գլխաքանակի ավելացման համար ամենագլխավորը՝ կովերի ստերջության վերացումն է։ Պետք է ասել, որ մեր մասնագետների, անասնապահների, կթվորների ու սերմնավորման տեխնիկի լավագույն աշխատանքի շնորհիվ կովերի ստերջությունը վերացված է։ Օրինակ, 1959 թվականին 359 կովից ստացել ենք 353 հորթ։ Դա արդյունք է այն բանի, որ սովխոզում կիրառվում է արհեստական սերմնավորում՝ կազմած պլանի համաձայն։ Կովերի բեղմնավորումն ապահովելու, ինչպես նաև առողջ հորթեր ստանալու համար շահագրգռված են թե՛ մասնագետները, թե՛ կթվորները, որովհետև դրա համար լրացուցիչ վարձատրություն են ստանում։ Մատղաշները լավ խնամելու և պահպանելու համար կազմակերպված է հատուկ բրիգադա։ Հորթերը ծնվելու օրվանից անմիջապես առանձնացվում են և հետագայում պահվում ըստ հասակի, որը նրանց արագ և առողջ աճեցնելու լավագույն պայմաններից մեկն է։ Հորթապահները վարձատրվում են ըստ քաշաճի։

Անցյալում սովխոզը վնասով էր փակում տնտեսական տարին։ 1956 թվականին այդ վնասը հասավ 935000 ռ.։ Մսի և կաթի արտադրությունն ավելացնելու, աշխատանքը ճիշտ կազմակերպելու շնորհիվ վերջին տարիներին սովխոզը դարձել է հասութաբեր։ Միայն 1959 թվականին գերպլանային օգուտը հասավ 79 հազար ռուբլու։



Անասնաբուծության և դաշտավարության բնագավառում ձեռք բերած հաջողություններն արտադրության պրոցեսների զգալի մասի մեքենայացման արդյունքն են։ Ներկայումս սովխոզի դաշտերում գործում են 3 կոմբայն, 12 տրակտոր և գյուղատնտեսական մի շարք այլ մեքենաներ։ Հողի մշակումը, հասկավոր կուլտուրաների բերքահավաքը լիովին կատարվում է մեքենաների միջոցով։ Մեքենայացված են նաև անասունները կերակրելու և ջրելու, ախոռներից գոմաղբը դուրս բերելու աշխատանքները։ Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու, ցանքատարածությունների բերքատվությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու համար անհրաժեշտ է արտադրության մի շարք ճյուղեր կոմպլեքսային մեքենայացման ենթարկել։

Սովխոզը բազմաճյուղ տնտեսություն է։ Չնայած այստեղ հիմնականը անասնապահությունն է, սակայն տնտեսության համար պակաս կարևոր չեն նաև օժանդակ ճյուղերը՝ այգեգործությունը, ծխախոտագործությունը, մեղվաբուծությունը և այլն, որոնցից սովխոզը շոշափելի եկամուտ է ստանում։

Տնտեսության բազմաճյուղ լինելը հնարավորություն է տալիս սովխոզի բանվորներին լրիվ ապահովել աշխատանքով, վերացնել աշխատուժի հոսունությունը։ Մեր սովխոզն ունի իր անվանի մարդիկ, արտադրության շատ առաջավորներ։ Անցյալ տարի Ջարիկ Ավետիսյանն իր խնամած 14 կովից միջինը (յուրաքանչյուր կովից) ստացել է 3512 կիլոգրամ կաթ։ Նա պլանից ավելի հանձնեց մոտ 13 տոննա կաթ։ Այդպիսի ցուցանիշներ ունեն նաև Սեդա Գևորգյանը, Լաուրա Գևորգյանը, Անահիտ Ասլանյանը, Հայկուշ Հակոբյանը, Հայկուշ Խանգելդյանը, Թեգուշ, Արաքսյա, Վիկտոր Հովհաննիսյանները, Թամարա Ռուստյանը, Արևշատ Մանուկյանը, Կիրակոս Հովհաննիսյանը և ուրիշներ։ Այդ առաջավորները, ինչպես նաև սովխոզի ամբողջ կոլեկտիվն անցյալ տարի սոցիալիստական պարտավորություն վերցրին՝ զգալիորեն գերակատարել մսի, կաթի արտադրության պետական առաջադրանքները։ Համառ պայքարով մեր կոլեկտիվը պատվով կատարեց իր հայրենասիրական պարտքը և հաջողությամբ նվաճեց առաջին բնագիծը, որը յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու լավագույն գրավականն է հանդիսանում։

**1959 թվականի պետական առաջադրանքը, վերցրած պարտավորությունը և կատարումը**

| Մթերքի տեսակը | Պետական առաջադրանքը | Վերցրած պարտավորությունը | Կատարումը |
|---|---|---|---|
| Կաթ (ցենտ.) | 9000 | 9600 | 9600 |
| Միս (ցենտ.) | 1542 | 1700 | 1755 |
| Խոտ (տոննա) | 1268 | 1500 | 1800 |

Մեր սովխոզի բանվորներն ու մասնագետները ջանասիրաբար և ազնվորեն աշխատելով արտադրության մեջ, ակտիվորեն մասնակցում են հասարակական բարիքների ստեղծմանը և վարձատրվում ըստ արժանվույն։ Շատերն ամսեկան վաստակում են 700—800 ռուբլի։ Անցյալ տարի սովխոզի բանվորներից Գ. Պողոսյանն իր ընտանիքով վաստակել է մոտ 30 հազար ռուբլի։ Շ. Գևորգյանի ընտանիքը՝ 32 հազար ռուբլի։ Այդ ազնիվ վաստակով նրանք

կուլտուրական կյանքով ապրելու լավագույն պայմաններ են ստեղծում իրենց ընտանիքի համար։

Մտնելով ՍՄԿՊ XXI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, սովխոզի կոլեկտիվը որոշեց յոթնամյակը կատարել հինգ տարում և 1963 թվականին արտադրել 4400 ցենտներ միս, 24000 ցենտներ կաթ, ցուցանիշներ, որոնք նախատեսված են 1965 թվականի համար։ Սովխոզի ոչ մի մասնագետ և ոչ մի բանվոր չի մոռացել այդ հանդիսավոր խոստումը և համառորեն պայքարում է այն կենսագործելու համար։

1960 թվականին՝ յոթնամյակի երկրորդ տարում, կոլեկտիվը պարտավորվել է կաթի համախառն արտադրանքն ավելացնել (2600 ցենտներով) և պետությանը հանձնել 12000 ցենտներ կաթ։ Սովխոզի կոլեկտիվը կոնկրետ պարտավորություններ է ստանձնել նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը մեծ չափով ավելացնելու համար։ Մեզ մոտ արդեն պայմաններ են ստեղծված 1960 թվականին, 1957 թվականի համեմատությամբ ավելի արտադրել միս՝ 4,5, կաթ՝ մոտ 2 անգամ, ձու 3 անգամ (15 հազարի դիմաց 45 հազար), բուրդ 40 տոկոսով, հատիկային կեր՝ 50 տոկոսով։ Կավելանա նաև կոշտ և հյութալի կերի արտադրությունը։ Այս է մեր նպատակը, որին անպայման կհասնենք։

Սովխոզի բոլոր բանվորների ու անասնապահների շրջանում ծավալվել է սոցիալիստական մրցություն՝ այդ պարտավորությունները պատվով կատարելու համար։

Մրցության արդյունքներն ամփոփվում են ամիսը մեկ անգամ ըստ բրիգադների, իսկ ամբողջ սովխոզում՝ եռամսյակը մեկ անգամ։ 1959 թվականին սոցիալիստական պարտավորությունների կատարման համար 3 անգամ դրամական պարգևի արժանացան մոտ 150 բանվոր-ծառայող։

Մեր սովխոզի աշխատողները բաց ճակատով մտնելով սոցիալիստական մրցության մեջ, ջանք ու եռանդ չեն խնայի յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ՝ հինգ տարում կատարելու համար։

ԱՎ. ԲԶՆՈՒՆԻ
Կոտայքի կաթնաանասնապահական
սովխոզի դիրեկտոր

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## ՋԱՆԱՍԵՐ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԳՈՐԾԸ

Երևան-էջմիածին ասֆալտապատ ճանապարհով երբ ուղևորվում ես Շահումյան ավանը, մինչև նրա կենտրոնը հասնելը ավտոբուսի տոմսավաճառը հայտարարում է.

— Կանգառ։ Նոր Մալաթիա։

Նոր Մալաթիան Շահումյան ավանի հարավային թաղամասն է. այն հիմնադրել են Սովետական Հայաստան ներգաղթած հին մալաթիացիները՝ բոլորովին ամայի վայրում։ Այդ թաղամասն այժմ իր լայն և ուղիղ փողոցներով, երկհարկանի գեղեցիկ տներով, արդյունաբերական ու կուլտուրական օջախներով, պուրակներով ու պարտեզներով չի տարբերվում քաղաքատիպ վայրերից։ Այստեղ է գտնվում Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսությունը, որի համբավը տարածված է ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։

Կոլտնտեսության վարչության գրասենյակի առջև կանգնած ընկերներից ցանկացանք իմանալ՝ նախագահն այնտե՞ղ է։

— Ո՛չ,— պատասխանեց մեկը։

— Իսկ պարտկազմակերպության քարտուղա՞րը։

— Նա էլ այստեղ չէ։

— Գուցե տա՞նն են։

— Մեր նախագահն ու քարտուղարը տարվա այս եղանակին, երբ գարունն է բացվել և աշխատանքն է եռում, տանը չեն նստում, իսկ գրասենյակում էլ քիչ են լինում։ Նրանք մտահոգված են վար ու ցանքով, այգիների մշակությամբ։

Պատշգամբում, ցուցափեղկին փակցված օրվա թերթի մոտ հավաքված մի խումբ կոլտնտեսականներ զրուցում էին ասիական երկրները ընկեր Ն. Ս. Խրուշչովի ուղևորության շուրջը, հավանություն տալիս Սովետական կառավարության ղեկավարի այցելությանը։ Այսօրվա կոլտնտեսականն ունի լայն մտահորիզոն, քաղաքական ու կուլտուրական գիտելիքներ։ Նա մտահոգված է ո՛չ միայն ներկոլտնտեսային կյանքով, այլև հետաքրքրվում է մեր Հայրենիքի ներքին գործերով ու միջազգային հարցերով։

Գրասենյակում հաշվետար-գանձապահ Արտաշես Հարությունյանը ու հաշվետար Մաքրուհի Ոսկանյանը լարված աշխատում էին։ Կոլտնտեսական-

ները երբեմն-երբեմն նրանց կտրում էին գործից, իրենց աշխօրերի և վաստակած գումարի մասին տեղեկանքներ վերցնելու համար։ Հարությունյանը, որ ներքուստ զայրանում էր, բարկությունը զսպելով բաց էր անում ցուցակն ու պատասխանում.

— Դուք, ընկե՛ր Ամալյա Ավագյան, մենակ վաստակել եք 15700 ռուբլի։ Ձեր ընտանիքը,— պատասխանում է մեկ ուրիշին,— 22 հազար ռուբլի է վաստակել... Բավարարվա՞ծ եք։

Կոլտնտեսության հաշվապահ Հայկազ Խտրյանը (Սիրիայից Հայրենիք է վերադարձել 1947 թվականին) հատված առ հատված նորից էր ստուգում թվերն ու հանրագումարի բերում արտելի ծախսերը, եկամուտն ու հարստությունը։ Նա ինձ ծանոթացրեց իրենց տնտեսության հետ. կոլտնտեսության հողային տարածությունն ընդամենը 529 հեկտար է, որից խաղողի այգիներ՝ 160 հեկտար։ Կոլտնտեսությունում համախմբված են 257 ընտանիք (զգալի մասը Ապարանից, Ղափանից և լեռնային այլ շրջաններից փոխադրվածներ)՝ 360 աշխատող ձեռքերով, որոնք իրենց ամբողջ եռանդը գործադրում են յոթնամյակի հոյակապ ծրագիրը ժամկետից շուտ կատարելու համար։

Այստեղ աշխատանքը յուրաքանչյուրի համար փառք ու պատիվ է։ Ամեն ոք պայքարում է մայր հողից առատ բերք, հանրային հոտից ու նախրից ավելի շատ անասնաբուծական մթերքներ ստանալու, կոլտնտեսության ունեցվածքը ավելացնելու և փչացումից պահպանելու համար։ Կոլտնտեսականների գործադրած ազնիվ ջանքերը հիանալի արդյունք տվեցին. Նրանց բեղմնավոր աշխատանքը 7,5 միլիոն ռուբլու եկամուտ բերեց։

Երբ հաշվապահի հետ միասին նայում էինք տարեկան հաշվեկշիռը, ներս մտավ կոլտնտեսության նախագահ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Արտաշես Մեժլումյանը։ Ողջունելով գրասենյակում գտնվողներին, նա խնդրեց հաշվետարին՝ ստորագրելու բերել միայն կարևոր գրությունները, պատճառաբանելով, որ այդ օրը ֆերմայում չի եղել և շտապում է այնտեղ։ Չնայած մտադիր էի շարունակել զրույցս հաշվապահ Խտրյանի հետ, բայց նախագահի հրավերից հետո որոշեցի նրա հետ գնալ ֆերմա։

Կովաբուծական ֆերմայի մաքուր բակում տարածված էր եգիպտացորենից պատրաստված սիլոսի հոտը։ Երկու կոլտնտեսական այն լցնում էին վագոնիկի մեջ և օդային ուղիով փոխադրում գոմը անասուններին կերակրելու համար։ Նույն եղանակով էլ գոմից դուրս էր բերվում գոմաղբը։ Անասնապահների համար ամենադժվարին աշխատանքը, գոմաղբը դուրս տանելը, մեքենայացված է։

Ընդարձակ ու լուսավոր գոմում իրար կողքի կանգնած են խատուտիկ ու գեր կովերը։ Մսուրներում ամեն կով ունի իր ջրի ինքնախմոցը. կովը բնազդաբար դնչով սեղմում է զսպանակը, ինքնահոսով կաթսայիկի մեջ լցվում է ջուրը. ջուրը հոսում է այնքան ժամանակ, քանի դեռ կովը չի հագեցրել իր ծարավը։ Գոմում ամենուրեք զգացվում է խնամող ձեռքը։ Մաքուր են և պատերն ու հատակը և այնտեղ գտնվող անասունները։

— Գեղեցիկ կովեր են, ասես պատկերներ լինեն,— չկարողանալով զսպել հիացմունքս՝ ասացի ընկեր Մեժլումյանին։

— Գեղեցկության հետ միասին առատ էլ կաթ են տալիս,— պատասխանեց անասնաբույժ Ալբերտ Ահարոնյանը.— անցյալ տարի յուրաքանչյուր կո-



վից միջին հաշվով ստացել ենք մոտ 4 տոկոս յուղայնությամբ 4534 կիլոգրամ կաթ։

Բայց այդ միջինն է։ Կոլտնտեսությունում կան շատ կթվորուհիներ, անասնապահներ, որոնք իրենց անձնվեր աշխատանքով ավելի բարձր ցուցանիշներ ունեն և պայքարում են՝ կարճ ժամանակում իրականացնելու Կոմունիստական պարտիայի առաջադրանքը՝ մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ առաջիկա տարիներին հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։

Անվանի կթվորուհի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Աշխեն Ավետիսյանն իր խնամած 10 կովից ստացել է 56 հազար կգ կաթ, ամեն մի կովից՝ մոտ 5600 կիլոգրամ։

— Այդ հավասար է որոշ կոլտնտեսությունների մի քանի կթվորուհու արտադրած ամբողջ կաթին,— կատակում է ընկերներից մեկը։

Սակայն այդ փայլուն ցուցանիշները չեն հանգստացնում մեր օրերի հերոսուհուն։ Նա միշտ նայում է առաջ, որոնում նոր մեթոդներ ու միջոցներ՝ ավելի շատ բարիքներ արտադրելու համար։ Նա ձգտում է յոթնամյակի տեմպերին համընթաց իր հետ տանել և մյուսներին։ Աշխենի նախաձեռնությամբ կոլտնտեսությունում սկսվել է մի հիանալի շարժում՝ պայքար յուրաքանչյուր կովից 5000 կիլոգրամից ոչ պակաս կաթ ստանալու համար։ Այդ շարժման գաղափարը համակել է բոլորին՝ թե անասնապահներին, թե դաշտավարներին։ Ավետիսյանը սովորեցնում է իր ընկերուհիներին, թե ինչ պետք է անել շատ կաթ ստանալու համար։

Ի նշանավորումն կանանց միջազգային օրվա 50 ամյակի՝ աշխատանքում աչքի ընկնող նվաճումների համար Ա. Ավետիսյանին շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Կոլտնտեսությունում Աշխեն Ավետիսյանը եզակի չէ։ Ահա Սիրուն Ալեքսանյանը։ Նա անցյալ տարի իր խնամած յուրաքանչյուր կովից ստացել է 5441 կիլոգրամ կաթ։ Արաքսյա Գրիգորյանը խնամում է 10 կով և տարվա ընթացքում յուրաքանչյուրից ստացել է 5079 կիլոգրամ կաթ։ Գովասանքով են խոսում նաև Գոհար Կարապետյանի մասին։ Նա միջահասակ, համակրելի դիմագծերով կին է. հագնված է հասարակ, բայց խնամքով. ձյունաթույր թաշկինակի տակից երևում են գեղեցիկ, պսակաձև հարդարած մազերը։ Կթում է կովերը և դույլ-դույլի հետևից լցնում կաթով։ Ընտանիքով նա այստեղ է փոխադրվել Ապարանից և ակտիվորեն մասնակցում է հանրային բարիքներ արտադրելու մեծ գործին։ Ողջ մայրական գորովով խնամում ու դաստիարակում է իր հինգ երեխաներին։

— Գոհարը ո՛չ միայն մեր լավագույն կթվորուհիներից է, այլև մեր կոլկոլտնտեսության սոխակն է,— այս ու այն կողմից ասում են նրա լիրիկական ու հայրենասիրական երգերով հիացած, դրանցից գեղարվեստական մեծ հաճույք ստացած նրա ընկերուհիները։

Կթվորուհիներից ետ չեն մնում և կոլտնտեսության հովիվները։ Նրանք արոտային սուղ պայմաններում իրենց վստահված հոտից լավ արդյունք են ստանում։ Անցյալ տարի Անուշավան Սիմոնյանը ամեն մի ոչխարից ստացել է 4,4 կիլոգրամ բուրդ, իսկ 100 մաքիից ստացել ու աճեցրել է 105 գառ։

Անասնապահներն ու կթվորուհիները իրենց վարիչ Սիմոն Ալեքսանյանի

գլխավորությամբ արտադրել են անասնաբուծական առատ մթերքներ։ 110 կովից ստացվել է 4760 ցենտներ կաթ. արտադրվել է միս՝ 779 ցենտներ, իսկ ոչխարի հոտից՝ 5435 կգ բուրդ։ Կամ, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց անցյալ տարի անասնաբուծական մթերքներ են արտադրել կաթ՝ 964 ցենտներ, միս՝ 147,5 ցենտներ, բուրդ՝ 1028 կիլոգրամ։ Մեկ կիլոգրամ կաթի ինքնարժեքը եղել է 73 կոպեկ, մեկ ցենտներ խաղողի ինքնարժեքը՝ 56 ռուբլի, մեկ ցենտներ բանջարեղենինը՝ 35,5 ռուբլի, մեկ ցենտներ տավարի մսինը՝ 595, մեկ ցենտներ ոչխարի մսինը՝ 250, մեկ ցենտներ բրդինը՝ 1416 ռուբլի։

Անասնաբուծությունից կոլտնտեսությունը ստացել է շուրջ մեկ միլիոն երեք հարյուր հազար ռուբլու եկամուտ։

— Անասունների նկատմամբ մեր ցուցաբերած խնամքի դիմաց լավ էլ հատուցում ենք ստանում,— իրավացի կերպով ասում է ընկ. Մեժլումյանը։ —Վերջին տարիների փորձով մենք համոզվել ենք, որ շատ կաթ ստանալու համար կովերի ցեղն ազնվացնելու հետ միասին անհրաժեշտ է լավ խնամել և կերակրել նրանց։

Կոլտնտեսության նախագահ ընտրվելու օրվանից Ա. Մեժլումյանը պարտիական կազմակերպության, բոլոր կոմունիստների աջակցությամբ շատ ջանքեր է գործադրել անասունների ցեղը բարելավելու, կերի կայուն բազա ստեղծելու համար։ Անցյալ տարի կոլտնտեսությունը ոչ արգավանդ հողերում եգիպտացորենի գարնան ցանքերի յուրաքանչյուր հեկտարից վերցրել է 460 ցենտներ կանաչ մասսա, իսկ Սեդրակ Թաշչյանի բրիգադան՝ 540 ցենտներ։ Լավ բերք է ստացվել նաև առվույտի ցանքերից (հեկտարից միջինը 126 ցենտներ) և արմատապտղից։

Սակայն կոլտնտեսությունն իր բազմամյա խոտաբույսերի ցանքատարածություններից ստացած բերքով և այգիների եզրերից հնձած բնական խոտով չի կարողանում ամբողջ տարին հանրային հոտն ու նախիրը ապահովել կերով։ Պակասը լրացնում է հյութալի կեր գնելով։ Այս վիճակից դուրս գալու համար յոթնամյա պլանը կազմելիս առավել ուշադրություն է հատկացված սեփական միջոցներով կերի հարցը լուծելու խնդրին, որը հնարավորություն կտա զգալի չափով իջեցնելու անասնաբուծական մթերքների արտադրանքի ինքնարժեքը։

Ստալինի անվան կոլտնտեսությունում բուսաբուծությունը հանդիսանում է հանրային եկամտի գլխավոր աղբյուրը։ Այստեղ մեծ խնամք է տարվում ամեն մի հեկտար այգու յուրաքանչյուր վազի ու ծառի նկատմամբ։

Կոլտնտեսության գյուղատնտես Հակոբ Ցաղուբյանը (միաժամանակ պարտկազմակերպության քարտուղար) Հայրենիք է վերադարձել պատերազմից առաջ և մասնագիտական կրթությունն ստացել է Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտում։ Նա ուշադիր հետևում է այգեգործության զարգացմանը։ Նրա հսկողությամբ այգիները էտվում են փորձված այգեպանների ձեռքով, ժամանակին փորվում, բուժվում և պարարտացվում են գոմաղբով ու հանքային պարարտանյութերով։ Ամենակարևորն այն է, որ այստեղ ամբողջ կոլեկտիվն է պայքարում իր աշխատանքով ու քրտինքով աճեցրած ամեն մի ողկույզի պահպանման համար։ Իսկ այնտեղ, որտեղ բոլորի միտքն ու կարողությունը զբաղված են հասարակական բարիքների արտադրությամբ, այնտեղ էլ լիություն ու առատություն կլինի։



Դրա շնորհիվ էլ կոլտնտեսության բանջարանոցներում ու այգիներում աճում է առատ բերք։ Եթե 1958 թվականին կոլտնտեսությունում խաղողի համախառն արտադրությունը եղել է 908, իսկ բանջարեղենինը՝ 318 տոննա, ապա անցյալ տարի ստացվել է բանջարեղեն՝ 335, խաղող՝ 1638 տոննա, կամ միջին հաշվով յուրաքանչյուր հեկտար խաղողի այգուց ստացվել է 126 ցենտներ բերք։

Կոլտնտեսությունում կաթի, մսի, խաղողի, բանջարեղենի ու կերի արտադրության շեշտակի վերելքն ապահովելու համար մղվող պայքարի առաջամարտիկներն են կոմունիստները։ Ամենայն խորությամբ ուսումնասիրելով պարտիայի որոշումներն ու առաջադրած լոզունգները, նրանք միաժամանակ դրանք պարզաբանում են անպարտիականներին, կազմակերպում նրանց՝ ակտիվորեն մարտնչելու այդ առաջադրանքների կենսագործման համար։ Պարտիական կազմակերպությունում հաշվի առնված 44 կոմունիստներից 42-ը անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ։ Նրանք կոլտնտեսության ֆերմաներում ու հանրային դաշտերում ո՛չ միայն սպայի ու ենթասպայի դեր են կատարում, այլ սիրով հովվություն են անում, անասուն պահում, գոմ մաքրում, էտում, այգի փորում, գոմաղբ փոխադրում, իրենց հերոսական աշխատանքով օրինակ ցույց տալիս անպարտիականներին, վայելում նրանց սերն ու համակրանքը։ Կոմունիստները կազմակերպում, ոգեշնչում և գլխավորում են կոլտնտեսականների արտադրական խանդավառությունը՝ պետական ու պարտիական առաջադրանքները անթերի կատարելու համար։

Կոմունիստ Գալուստ Ստեփանյանի ղեկավարած բրիգադան իր մշակած այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է միջին հաշվով 183 ցենտներ խաղող։ Երիտասարդ կոմունիստ Աղվան Սարգսյանը ղեկավարում է հարուստ հեկտարի համար պայքարողների օղակը, որը խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացել է 193 ցենտներ բերք և արժանացել մրցանակի։ Կոմունիստ՝ հայրենադարձ Ստեփան Ալթիկուլաչյանի օղակը ամեն տարի ապահովում է խաղողի, առվույտի, ծառապտղի բարձր բերք։ Ընդարձակվում են օղակի այգետարածությունները։ Կոմունիստ Սեդրակ Գաբրիելյանը աշխատում է հողագործության ու այգեգործության բնագավառներում։ Էտի ժամանակ նա էտվորների հետ միասին հմտորեն ձևավորում է խաղողի որդերը։ Այգեփորի աշխատանքների ժամանակ բահը ձեռքին նա խնամքով փխրեցնում է խաղողի վազերի թմբերը, մասնակցում բոլոր տեսակի աշխատանքներին, գիտակցելով, որ կոմունիստի համար չկա ավելի մեծ պատիվ, քան լավագույն աշխատանքով ու պարտաճանաչությամբ օրինակ հանդիսանալ անպարտիականների համար։

Կոլտնտեսության բոլոր բրիգադաներում և անասնապահական ֆերմայում ստեղծված են պարտիական խմբեր, որտեղ ագիտատորները զրույցների, բարձրաձայն ընթերցանությունների միջոցով մասսաներին պարզաբանում են պարտիայի ու կառավարության որոշումները, նրանց պայքարի հանում առաջադրված խնդիրներն անթերի կատարելու համար։ Դաշտային եռուն աշխատանքի օրերին պարտիական խմբերն իրենց ժողովները գումարում են հենց դաշտում և քննարկում արտադրության հետ կապված հարցեր։ Այդ ժողովները լինում են կարճատև։ Կոմունիստները հանդես են գալիս կոնկրետ առաջարկներով՝ գործն ավելի լավ կազմակերպելու, ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու համար։

Նյութական առատ բարիքներ ստեղծելու, բարձր եկամուտ ստանալու շնորհիվ տարեցտարի բարեկեցիկ է դառնում կոլտնտեսականների կյանքը։ Կոլտնտեսության ընդհանուր ժողովի որոշմամբ 7,5 միլիոն ռուբլու եկամտից անձեռնմխելի ֆոնդին բաժին է հանվել մոտ 1,4 միլիոն, կուլտուրական սպասարկման ֆոնդին՝ ավելի քան 100 հազար, փոխանցիկ ֆոնդին՝ 359 հազար ռուբլի։ Վերջին գումարն առանձնացված է այն նպատակով, որ եթե բնական աղետներ լինեն, կամ անբերրի տարի, կոլտնտեսությունը կարողանա այդ գումարը բաշխել իր անդամներին և պահպանել աշխօրերի մինիմում վարձատրության կարգը։ Բոլոր ֆոնդերի մասհանումները կատարելուց հետո ամեն մի կոլտնտեսական միջին հաշվով տարեկան վաստակել է շուրջ 14 հազար ռուբլի։

Կոլտնտեսությունում կիրառվում է վարձատրության դրամական սիստեմ՝ ամեն մի աշխատանքային օրվա համար 25 ռուբլի մինիմում։ Յուրաքանչյուր ամսվա 10—15-ը կոլտնտեսականը ստանում է նախորդ ամսվա աշխատանքի վարձատրությունը։

Այժմ բոլորը մտահոգված են մի բանով՝ իրենց արդար աշխատանքով վաստակած գումարը ծախսել ավելի բարեկեցիկ ու կուլտուրական կյանք վարելու համար։ Շատերը կառուցում են նոր բնակարաններ, իսկ ովքեր արդեն ավարտել են կառուցումը, գնում են նոր, բարձրորակ կահույք, մարդատար ավտոմեքենա և կենցաղի համար անհրաժեշտ այլ իրեր։

Կոլտնտեսականների երեխաները սովորում են տասնամյա դպրոցում։ Ավանի հիվանդանոցից, բուժարանից, ծննդատնից ձրի օգտվում են բոլոր կոլտնտեսականները։ 15 հոգի ունեն բարձրագույն կրթություն, 4 հոգի տեխնիկում են ավարտել, որոնք ավանում և ռեսպուբլիկայի այլ շրջաններում աշխատում են որպես բժիշկ, ուսուցիչ, գյուղատնտես և տեխնիկ։ Շատ բնորոշ է, որ Սադոյան Մրազը, որն ազգությամբ քուրդ է, ավարտելով Երևանի պետական մանկավարժական ինստիտուտը, հայ ժողովրդի պատմություն է ավանդում ավանի միջնակարգ դպրոցում։

Կոլտնտեսության ընդհանուր ժողովի որոշմամբ աշխատանքի մասնակցության մինիմում օրերը (տղամարդկանց համար տարեկան 230 օր, կանանց՝ 200 օր) կատարողները տարեկան ստանում են 14 օր արձակուրդ, պահպանելով միջին վարձատրությունը։ Մեծ հոգատարությամբ են շրջապատված հղի կանայք։ Նրանք ստանում են 112 օր արձակուրդ, պահպանելով վաստակած աշխօրերի միջին վարձատրությունը։

Բոլորի բնակարաններում կա ռադիոընդունիչ։ Կենցաղի մեջ են մտնում հեռուստացույցը, սառնարանը, լվացքի մեքենան, ոմանք ունեն սեփական ավտոմեքենաներ։

Թաղամասի փողոցներում բուռն թափով առաջ է գնում շինարարությունը։ Արդեն կառուցված հիանալի շատ շենքերի կողքին բարձրանում են նորերը, ավելի գեղեցիկները։

Պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Յաղուբյանի հետ միասին ես անցնում եմ մի փողոցով, որտեղ բարձրացել էր վարդագույն տուֆից, կամարաձև պատուհաններով ու դռներով, գեղեցիկ ոճով կառուցված մի երկհարկանի տուն։ Հետաքրքրությունից ես կանգ առա և հարցրի, թե ո՞ւմն է այդ փոքրիկ պալատը։

— Կոլտնտեսության նախկին հովիվ Երվանդ Վարդանյանինը։



Եվս մի քանի քայլ և մեր առջև է մի նոր, գեղեցիկ տուն։

— Դրսից շատ լավն է. բայց հետաքրքիր է ինչպե՞ս է կահավորված,— ասացի ուղեկցիս։

— Եթե կամենում եք, կարող ենք ներս մտնել։

Պատշգամբում մեզ սրտաբաց ընդունեց մի երիտասարդ կին և հրավիրեց ներս։ Դա հայրենադարձ Գևորգ Կրճիկյանի բնակարանն է։ Նա Սովետական Հայաստան է ներգաղթել Հայրենական Մեծ պատերազմից առաջ. շատ քաղաքներում ապրելուց հետո վերջնական բնակություն է հաստատել Շահումյանում և իր վաստակով կառուցել է այդ տունը, որը բաղկացած է երեք սենյակից և ունի բնակարանային բոլոր հարմարությունները։ Տուրքը իդեալական մաքրություն է։ Սենյակները կահավորված են ճաշակով ու պատերը զարդարված գորգերով։ Տանտերը՝ Գևորգը, աշխատում է կոլտնտեսությունում և միայն անցյալ տարի վաստակել է 29 հազար ռուբլի։ Նրա կինն աշխատում է մետաքսի կոմբինատում, տղան՝ Կարոն, ավարտել է էլեկտրատեխնիկական տեխնիկումը, աշխատում է Երևանի կաբելի գործարանում որպես մեխանիկ. ունի սեփական «Պոբեդա» ավտոմեքենա, որով ամեն օր գնում է աշխատանքի. հարսն ավարտել է Բժշկական տեխնիկումը։

Հիացած դուրս ենք գալիս Կրճիկյանների բնակարանից։ Նրանից ոչ շատ հեռու Գարեգին Դիլանյանի նորակառույց բնակարանն է։ Երբ բակն ես մըտնում, աչքի է զարնում այն հյուղակը, որտեղ Ապարանից փոխադրվելուց հետո ապրել է Դիլանյանների մեծ ընտանիքը։ Այսքան կարճ ժամանակամիջոցում ինչպիսի մեծ փոփոխություններ մարդկանց կյանքում, անցնում է մտքովդ։ Հյուղակի կողքին բարձրացել է երկհարկանի բնակարանը մի քանի սենյակներով (11 շնչի համար), խոհանոցով ու պատշգամբով։ Իսկ բակում բարձրացել են խաղողի վազերն ու մրգատու ծառերը։

Մի քանի տուն անցնելուց հետո, դեռևս կիսավարտ բնակարանի առաջ մեզ կանգնեցրեց միջին տարիքի բարձրահասակ մի կոլտնտեսական. նա մեզ տուն հրավիրեց։

— Տունը դեռևս պատրաստ չէ, ինչպե՞ս գանք։

— Այսօր հի՛ն տունս համեցեք, ընկեր Հակոբ, հետո էլ նո՛ր տունս կգաք։

Մեզ հրավիրողը կոլտնտեսական Պետրոս Աֆարյանն էր։ Նա Հայրենիք է ներգաղթել Սիրիայի Քեսաբ գյուղից 1947 թվականին։ Աֆարյանի ընտանիքը ներկայումս ապրում է կոլտնտեսության հատկացրած երկու սենյականոց բնակարանում։ Բայց այդ չի բավականացնում բազմանդամ ընտանիքին։ Պետրոսն աշխատում է կոլտնտեսությունում և լավ է վաստակում. միայն անցյալ տարի ստացել է 29 հազար ռուբլի։ Նրա կինը՝ Վիկտորիան, աշխատում է մետաքսի կոմբինատում։ Նրանք արդեն հնարավորություններ ու միջոցներ ունեն և կառուցում են երկհարկանի գեղեցիկ տուն։

Երբ մենք պատրաստվում էինք դուրս գալ, Աֆարյանը դուռը ծածկեց մեր առջև և խնդրեց մի քանի րոպե նստել սեղանի շուրջը։

— Ընկե՛ր Հակոբ, դաշտն ամեն օր եք գալիս, իսկ այստեղ տարին մեկերկու անգամ։ Շատ կվիրավորվենք, եթե չնստեք և իմ պատրաստած գինու համը չտեսնեք։

Տանտիրոջ սիրտը չկոտրելու համար մենք համաձայնեցինք նստել մի քա-

*նի բուպե։ Դեռ չէինք տեղավորվել, երբ ներս մտավ Պետրոսի մայրը՝ գինով լցրած սափորը և խորտիկը ձեռքին։*

*Խոսակցությունն ընթանում էր հայրենադարձության, Հայրենիքում նոր, երջանիկ կյանքի մասին։ Օրորոցի մեջ երեխային կերակրող Վիկտորիան միջամտելով զրույցին, արտահայտեց իր զգացմունքները։*

*— Եկանք Հայրենիքի կանչով, գոհ ենք մեր կյանքից։*

*— Եղբայր մը ուներ,— լրացրեց սկեսուրը,— որ միշտ կերգեր՝ երանի այն օրին, երբ կտեսնեմ ազատ Հայաստան, ուր սոխակը կդայլայլե, և ուր հայի կյանքը ապահով է մշտապես... Ան իր նպատակին չհասավ, իսկ մենք հասանք։*

*Նա հոգու խորքից, անկեղծորեն արտահայտում էր տասնյակ հազարավոր հայրենադարձների սրտից բխած զգացմունքները, հայրենադարձներ, որոնք ի դեմս Սովետական Հայաստանի գտան իրենց Հայրենիքը, ուր մարդն ապրում և ստեղծագործում է անկաշկանդ և հայրենի արևի տակ նոր կյանք կերտում։*

*Ստալինի անվան կոլտնտեսության անդամները յոթնամյակի կատարման համար մղվող պայքարում նվաճել են առաջին բնագիծը։ Նրանք հպարտ են իրենց հերոսական գործերով, բայց միաժամանակ չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումը միլիոնների հետ աշխատանքային նորանոր սխրանքների է կոչել նաև Ստալինի անվան կոլտնտեսության անդամներին, որոնք ջերմորեն արձագանքելով հարազատ պարտիայի կոչին, պայքարում են յոթնամյակի առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու համար։ Առաջին բնագիծը նվաճելուց հետո նրանք նոր պարտավորություն են վերցրել՝ բարձրանալու յոթնամյակի գագաթը։*

*Կոլտնտեսությունը պարտավորվել է 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով արտադրել 1000 ցենտներ կաթ, 156 ցենտներ միս, 12 ցենտներ բուրդ, յուրաքանչյուր մայր խոզից ստանալ 20 խոճկոր, 100 կովից՝ 100 հորթ, 100 մաքիից՝ 103 գառ, բանջարանոցների ամեն մի հեկտարից՝ 300 ցենտներ բերք։*

*Այս պարտավորությունների կատարումը յուրաքանչյուր կոլտնտեսական համարում է իր պատվի գործը։ Կոլտնտեսությունում լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Մրցում են բրիգադան բրիգադայի, օղակը օղակի, կոլտնտեսականը կոլտնտեսականի հետ։ Նրանք մրցում են նաև Ներքին Ջարբախի կոլտնտեսության հետ՝ յոթնամյակի երկրորդ տարվա արտադրական պլանները և պետությանը վաճառվող գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքը կատարելու մինչև նոյեմբերի 29-ը, արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը։*

**Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՊԱՅԾԱՌ ԳԾԵՐԸ

Հերոսական պայքարի ուղի է անցել ազատասեր հունգար ժողովուրդը: Այս տարվա ապրիլի 4-ին նա տոնում է Սովետական Բանակի կողմից իր հայրենիքը հիտլերյան ֆաշիզմի լծից ազատագրելու 15-րդ տարեդարձը: Ֆաշիզմի պարտությունը Հունգարիայի աշխատավորության համար լայն հնարավորություններ ստեղծեց լիկվիդացնելու խորթիական անարգ ռեժիմը, որը երկիրը վեր էր ածել համակենտրոնացման ճամբարի, որտեղ աշխատավոր ժողովուրդը շահագործվում էր ամենավայրագ ձևով:

Անցած 15 տարիների ընթացքում որքա՜ն բան է փոխվել Հունգարիայում, որքա՜ն հին երևույթներ ու հասկացողություններ են անցել պատմության գիրկը, և նոր կյանքի որքա՜ն նոր ծիլեր են աճել ու պարգացել: Ժողովրդական դեմոկրատիայի իրավակարգը հունգար ժողովրդի համար բացել է վերընթաց զարգացման լայն ճանապարհ: Խոշոր հաջողություններ են ձեռք բերված ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Հունգարիայի ժողովրդական տնտեսությունը քայքայված էր: Պատերազմում նա կրել էր 300 միլիարդ ֆորինտի վնաս, որն այն ժամանակվա մակարդակով հավասար էր հինգ տարվա ազգային եկամտին: Մեծ ջանքեր պահանջվեցին նրա տնտեսությունը վերականգնելու համար: Հունգար աշխատավորությունը կոմունիստական պարտիայի գլխավորությամբ հաջողությամբ իրագործեց այդ խնդիրը: Արդեն 1949 թվականին երկրի արդյունաբերությունն ավելի շատ արտադրանք էր տալիս, քան դրանից առաջ երբևիցե: Արդյունաբերության վերականգնումը տեղի էր ունենում նրա ստրուկտուրայի փոփոխման և մոդեռնիզացման հետ միաժամանակ: Զգալիորեն ընդլայնվեց այնպիսի խոշոր ձեռնարկությունների արտադրությունը, ինչպիսիք են՝ վագոնամեքենաշինական «Գանց» գործարանը, «Կարմիր աստղ» տրակտորային գործարանը, Կ. Գոտվալդի անվան էլեկտրատեխնիկական գործարանը, «Էդեշլյուտ Իպպո» էլեկտրալամպերի գործարանը և այլն: Ավարտվեց Մատրավիդեկի և Չեպելի էլեկտրացենտրալի ռեկոնստրուկցիան:

1949 թվականից ի վեր երկրում կառուցվել են ավելի քան 100 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ: Շատ ձեռնարկություններ սկսեցին թողարկել այնպիսի արտադրանք, որը մինչ այդ երկրում չէր արտադրվում. օրինակ, լեռնահանքային և շինարարական արդյունաբերության սարքավորումներ, գործիքային հաստոցներ, հսկիչ-չափիչ գործիքներ, էլեկտրատեխնիկական մեքենաներ, տրանսպորտի միջոցներ և այլն:

Հունգարիայի արդյունաբերության մեջ առանձնապես աչքի ընկնող դեր է խաղում լեռնահանքային արդյունաբերությունը: Երկրի ածխի ընդհանուր պաշարները կազմում են 3 միլիարդ տոննա: Պեչ քաղաքի մերձակայքում խոշոր չափերով արդյունահանվում է կոքսացվող քարածուխ, Դորոգում և Տատաբանյայում՝ գորշ ածուխ: Անցած տասնհինգ տարիների ընթացքում քարածխի հանույթը ավելի քան եռապատկվել է, իսկ նավթինը՝ ավելացել ավելի քան 2 անգամ: Զգալիորեն աճել է երկրի մետալուրգիական բազան:

Բոքսիտների անսպառ պաշարների առկայության բազայի վրա Հունգարիայում զարգանում է ալյումինի արդյունաբերությունը: Անցած տարիներին կառուցվել և շահագործման են հանձնվել Ալմաշֆուզիտեի կավահողային գործարանը, Այկայի ալյումինի կոմբինատը, Ինոտայի ալյումինի գործարանը, ընդարձակվել են Մադյարովարի և Այկայի կավահողային գործարանները:

1938 թվականի համեմատությամբ մոտ 5 անգամ աճել է էլեկտրաէներգիայի արտադրությունը: Արագ թափով կառուցվել և գործող ձեռնարկությունների շարքն են անցել ավելի քան երկու տասնյակ մեքենաշինական գործարաններ, դրանց թվում են Դանուբի մետալուրգիական կոմբինատի

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԼԵՆԻՆԻԶՄԻ ԱՆՄԱՀ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԱՐՄՆԱՑՈՒՄԸ

(«Մարքսիզմ-լենինիզմի հիմունքները» ուսումնական ձեռնարկի հրատարակման առթիվ)

*Մարքսիզմ-լենինիզմը մարդկային ստեղծագործ մտքի մեծագույն նվաճումն է, աշխատավորական միլիոնավոր զանգվածների կենդանի ուսմունքը։ Միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ ամբողջ աշխարհում այդ կենսառատ ու հորդահոս ակունքից իրենց կյանքի ու գործունեության ամենավեհ իդեալներն են քաղում և կյանքում այդ իդեալներն իրականացնելու ուժ ստանում։ Մարքսիզմ-լենինիզմը հասարակության անշեղ առաջընթացը հիմնավորող միակ գիտական աշխարհայացքն է, մարդկության ջողջողուն ապագայի՝ կոմունիստական հասարակարգի թեորիական կուռ պատվանդանը։ Եվ բնական է, որ մարքսիստական-լենինյան թեորիայի հիմունքները լուսաբանող ամեն մի հաջողված աշխատություն մեծապես նպաստում է միլիոնավոր մասսաների կոմունիստական դաստիարակության գործին և նոր ու նոր մարդկանց համակում կոմունիզմի վեհ գաղափարներով։*

*1959 թվականը մեր երկրի կյանքում բնորոշ եղավ ո՛չ միայն կոմունիզմի ծավալուն շինարարության տնտեսական աննախընթաց նվաճումներով, այլև մարդկանց կոմունիստական դաստիարակության և գաղափարական աշխատանքի նոր վերելքով։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և XXI համագումարների որոշումների ստեղծագործական շունչը և Կենտրոնական Կոմիտեի անդադրում աշխատանքը ամենալայն հնարավորություններ ստեղծեցին մարքսիստական-լենինյան թեորիայի հետագա զարգացման ու այդ թեորիան մասսաներին մատչելի դարձնող նոր աշխատությունների հրապարակման համար։ Այդ աշխատությունների մեջ առանձին ուշադրության է արժանի հատկապես «Մարքսիզմ-լենինիզմի հիմունքները» խորագրով վերջերս հրապարակված ուսումնական ձեռնարկը*, որը գրել են մի խումբ գիտական ու պարտիական աշխատողներ և հրապարակախոսներ՝ պարտիայի հնագույն գործիչ Օ. Վ. Կուուսինենի ղեկավարությամբ։*

*Աշխատության հեղինակային կոլեկտիվն իր առջև նպատակ է դրել հանրամատչելի ձևով շարադրել մարքսիզմ-լենինիզմի՝ որպես միասնական ու ամբողջական ուսմունքի, հիմունքները, հենվելով Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունների, ինչպես և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի որոշումների ու փաստաթղթերի վրա, որոնք ընդհանրացնում են նրա հարստագույն փորձը։*

*Հեղինակները կարողացել են հաջողությամբ լուծել այդ կարևոր խնդիրը. ուսումնական ձեռնարկը տալիս է մարքսիզմ-լենինիզմի՝ որպես միասնական ու ամբողջական ուսմունքի ամփոփ ու հանրամատչելի շարադրանքը, ընդգրկելով նրա բոլոր բաղկացուցիչ մասերը՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, քաղաքատնտեսությունը և գիտական կոմունիզմի ուսմունքը։ Այդ ամբողջ նյութը տեղավորված է գրքի հինգ բաժիններում։*

*Իրենց առջև չդնելով ակադեմիական տիպի աշխատություն ստեղծելու խնդիր, հեղինակները առավել ուշադրություն են նվիրել մարքսիզմ-լենինիզմի այն դրույթներին, որոնք ժամանակակից պայմաններում առանձնապես արդիական են և այս միանգամայն ճիշտ մոտեցումը բարերար ազդեցություն է ունեցել հարցերի դրվածքի և, ընդհանրապես, ամբողջ շարադրանքի վրա։*

*Ուսումնական ձեռնարկը գրված է մարտնչող պարտիականության դիրքերից։ Պարզ ու որոշակի լուսաբանելով մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական բնույթը, նրա հակադրությունը քարացած ու մեռյալ դոգմաներին, հեղինակները կարողացել են միաժամանակ բացահայտել բուրժուական փիլիսոփայական ու սոցիոլոգիական ամենաբազմազան ուղղությունների, ինչպես և զանազան օպորտունիստական ու ռևիզիոնիստական հոսանքների հակագիտական էությունն ու անզորությունը։ Ընդ որում այդ արվում է միշտ և ամենուրեք գիտականորեն՝ մարքսիզմ-լենինիզմին թշնամական հոսանքների հայացքները հերքվում են գիտական փաստարկներով, կյանքից, պրակտիկայից բերվող համոզիչ օրինակներով, ընթերցողի մոտ ստեղծելով համոզվածություն, որ այդ ուղղությունները կեղծ են ու սնանկ։*

*Աշխատության դրական արժանիքներից մեկն էլ շարադրանքի պարզությունն է, շարադրվող բարդ պրոբլեմների մատուցման մատչելիությունը։ Փիլիսոփայության ու քաղաքատնտեսության, սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության ամենախոր հարցերը շարադրված են պարզ ու հասկանալի, բացատրությունն ուղեկցվում է հաջող ընտրված օրինակներով, համեմատություններով, համեմվում ժողովրդական հանրահայտ ասացվածքներով ու առածներով։ Այս ամենը նպաստում է նյութի լավ ընկալմանը, չվնասելով նրա շարադրման գիտական խորությանը։*

*Ուսումնական ձեռնարկի ակնհայտ արժանիքները, որոնք չեն սպառվում վերն ասվածով, այն օգտակար են դարձնում ո՛չ միայն մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող խմբակների մասնակիցների, այլև պարտիայի ամեն մի անդամի, հատկապես յուրաքանչյուր պարտիական աշխատողի համար։*

### Ի՞ՆՉ Է ՏԱԼԻՍ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ

*Հիմնական բաժիններին նախորդող անդամ ներածական խոսքում ընդգծվում է, որ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների յուրացումը պահանջում է լուրջ և խորամիտ ուսումնասիրություն, քրտնաջան աշխատանք և ժամանակ։ Սակայն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների յուրացման համար ծախսված աշխատանքն ու ժամանակը հատուցվում են հարյուրապատիկ, քանի որ մարդու մոտ ձևավորվում է ամբողջական գիտական աշխարհայացք։ Ի հակադրություն կրոնական, իդեալիստական և այլ հետադիմական աշխարհայացքների, որոնք սահմանափակում են մարդու ստեղծագործական կարողությունը և խեղաթյուրված ձևով պատկերացնում շրջապատող աշխարհը, մարքսիզմ-լենինիզմը ամուր կանգնած է ռեալ իրականության հողի վրա և մարդկությանը վերջնականապես ազատագրում է սնահավատությունից ու դարավոր հոգևոր ստրկությունից։ Գիտականորեն, այսինքն՝ օբյեկտիվ ճշմարտությամբ բացահայտելով բնության և հասարակության զարգացման օրինաչափությունները, մարքսիզմ-լենինիզմը հնարավորություն է տալիս կանխատեսելու հասարակության կյանքում կատարվող արմատական փոփոխությունները և նրա զարգացման ուղղությունը, կանխատեսել ու գիտականորեն հիմնավորել մարդկության պատմության մեջ ամենաարդարացի կոմունիստական հասարակարգի հաղթանակի անխուսափելիությունը։*

*Նշելով, որ բոլոր երկրների ռևոլյուցիոն փորձից և ռևոլյուցիոն մտքից աճած մարքսիստական թեորիան համապատասխանում է բոլոր ճնշվածների ու շահագործվողների ազատագրական նպատակներին, հեղինակները ցույց են տալիս, որ մարքսիզմ-լենինիզմը ուժի կենսական աղբյուր է այն բոլոր մարդկանց համար, ովքեր ցանկանում են ճիշտ ըմբռնել շրջապատող աշխարհը, դառնալ նրա վերափոխման պատմական պրոցեսի գիտակից և ակտիվ մասնակիցներ։ Այդպիսի մարդկանց, հատկապես երիտասարդության համար, մարքսիզմ-լենինիզմն անգնահատելի օգնություն է հանդիսանում, որովհետև այն կրճատում է դեպի քաղաքական հասունություն տանող ուղին, օգնում երիտասարդական բուռն ավյունը ճիշտ նպատակի՝ մարդկության բարօրությանը ի սպաս դնելու գործին։*

*Եվ, իսկապես. «Ամեն ոք,— ասված է գրք-*

* „Основы марксизма-ленинизма". Учебное пособие, Госполитиздат, 1959

*Գիրքը գրել է գիտական և պարտիական աշխատողների, հրապարակախոսների կոլեկտիվը՝ Օ. Վ. Կուուսինեն (ղեկավար), Յու. Ա. Արբատով, Ա. Ս. Բելյակով, Ս. Լ. Վիգոդսկի, Ա. Ա. Մակարովսկի, Ա. Գ. Միլեյկովսկի, Ե. Պ. Սիտկովսկի, Լ. Մ. Շեյդին։ Առանձին գլուխների վրա աշխատել են նաև Կ. Ն. Բրուտենցը, Ֆ. Մ. Բուռլացկին, Ն. Ի. Իվանովը, Ի. Ս. Կոնը, Բ. Մ. Լեյբզոնը, Ն. Վ. Մատկովսկին, Յու. Կ. Մելվիլը, Դ. Ե. Մելնիկովը, Լ. Ա. Մենդելսոնը, Ց. Ա. Ստեփանյանը, Ս. Գ. Ստրումիլինը։*

վող աշխատանքի հանրայնացումը,— ահա սոցիալիզմի անխուսափելի վրա հասնելու գլխավոր նյութական հիմքը»,— նշում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 21, էջ 76—77)։

Կապիտալիզմի քաղաքատնտեսությանը նվիրված բաժնում հակիրճ շարադրելով կապիտալիզմի տնտեսական կատեգորիաների ու դրանց զարգացման մարքսիստական-լենինյան վերլուծությունը, հեղինակները կարողացել են հստակ ցույց տալ հենց այն տնտեսական հիմքը, որի հիման վրա անխուսափելի է դառնում նոր, սոցիալիստական հասարակական-տնտեսական կարգի հաստատումը։ Բաժնում առանձնապես մեծ ուշադրություն է հատկացված իմպերիալիզմի՝ կապիտալիզմի բարձրագույն ու վերջին ստադիայի, վերլուծությանը, ընդ որում X գլուխն ամբողջությամբ նվիրված է իմպերիալիզմի ժամանակակից էտապի վերլուծությանը։

Բնութագրելով կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի բնորոշ գծերը, հեղինակներն առանձնապես կանգ են առնում իմպերիալիզմի ներկա յուրահատուկ երևույթի՝ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի բնորոշ գծերի՝ տնտեսության ռազմականացման, կապիտալիստական ազգայնացման հարցերի վրա և պարզորոշ ցույց տալիս, որ արդի կապիտալիզմը ոչ միայն չի կարող խուսափել ընդհանրապես կապիտալիզմին յուրահատուկ խոցերից՝ տնտեսական ու քաղաքական ճգնաժամերից, դասակարգային պայքարի հետագա սրումից, մի բևեռում հարստության և մյուս բևեռում աղքատության կուտակումից, այլև ավելի ցավագին ու խորն է դարձնում այդ խոցերը, անհետաձգելի դարձնելով դրանց վերացումը սոցիալիստական ռևոլյուցիայի հիման վրա նոր հասարակական կարգեր հաստատելու միջոցով։

Կապիտալիստական հասարակության վերլուծությամբ՝ նրա ծագումից մինչև վերջին աստիճանը, պարզորոշ ցույց է տրվում բուրժուական աշխարհում վերջին տարիներս ծայր առած «ժողովրդական կապիտալիզմի», «կապիտալիզմի անճգնաժամային զարգացման» և այլ խաբուսիկ անունների տակ հանդես եկած հակագիտական թեորիաների սնանկությունը։ Իմպերիալիզմի զարգացման արդի էտապի գիտական ուսումնասիրությունը հնարավորություն է տվել հեղինակներին միանգամայն համոզիչ կերպով հերքել նաև ռեֆորմիստների ու արդի ռևիզիոնիստների հնարանքները կապիտալիզմի ներկա աստիճանից առանց սոցիալիստական ռևոլյուցիայի սոցիալիզմին անցնելու մասին։ Արդի մոնոպոլիստական կապիտալիզմը, որը վերաճում է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, այսինքն՝ կապիտալիստական մոնոպոլիաների ուժը միացնում է պետության ուժի հետ՝ պետությունը ենթարկելով խոշորագույն կապիտալիստական մոնոպոլիաներին, ո՛չ միայն չի կարողացել հաղթահարել բուրժուական հասարակության անլուծելի հակասությունները, այլև ավելի է խորացրել դրանք, և նրան սպասում են ավելի մեծ ու խոր դժվարություններ, քան մինչև այժմ։ Ինքը՝ իմպերիալիզմն ի վիճակի չէ ո՛չ կասեցնել և ոչ էլ առավել ևս, լուծել այդ հակասություններն ու դժվարությունները, և անխուսափելիորեն իր տեղը պետք է զիջի նոր, ավելի առաջավոր հասարակարգին՝ սոցիալիզմին։

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԹԵՈՐԻԱՆ ՈՒ ՏԱԿՏԻԿԱՆ

Գրքի չորրորդ բաժինը և՛ իր ծավալով, և՛ հարցերի ընդգրկումով ամենախոշոր բաժինն է։ Միջազգային կոմունիստական շարժման թեորիայի ու տակտիկայի շարադրանքը գրքում սկսվում է բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական դերի բացահայտումով։ Լուսաբանելով բանվոր դասակարգի պատմական զարգացումը, հասարակության զարգացման մեջ նրա դերի ու նշանակության անընդհատ աճը, հեղինակները կարողացել են բացահայտել բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերի ընդհանրությունը, բանվոր դասակարգի ղեկավար դերը ֆեոդալիզմի, կապիտալիզմի, իմպերիալիզմի, ինչպես և գաղութակալության դեմ աշխատավոր մասսաների մղած պայքարում։ Առանձին գլուխներ են նվիրված Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի՝ որպես մարդկության պատմության մեջ արմատական շրջադարձի, լուսաբանմանը. ցույց է տրված մարքսիստական-լենինյան պարտիայի դերը բանվորների դասակարգային պայքարում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և սոցիալիստական երկրների եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների հարուստ փորձի հետ միասին, ձեռնարկի մեջ ընդհանրացվում է նաև կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների դասակարգային պայքարի փորձը։ Գրքում լայնորեն լուսաբանվում են բանվորների դասակարգային պայքարի դժվարությունները, խոչընդոտները, որոնք ծառանում են նրա առաջ ո՛չ միայն տիրապետող բուրժուական դասակարգերի քաղաքական, տնտեսական ու գաղափարական ճնշման, այլև բանվորական շարժման մեջ բուրժուական ազ-



դեցության ներթափանցման հետևանքով։ Այդ ազդեցության ամենավտանգավոր արտահայտությունը՝ օպորտունիզմի, ռեֆորմիզմի տարածումն է, որի էությունը բանվորական շարժումը կապիտալիստական կարգի հետ «հաշտեցնելու» ձգտումն է։ Բանվորական շարժմանը մեծ վնաս է հասցնում նաև բուրժուական նացիոնալիզմի գաղափարների տարածումը։ Ձեռնարկում ցույց է տրվում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների անդուլ պայքարը այդ բուրժուական ազդեցության հաղթահարման, մարքսիզմ-լենինիզմի հողի վրա բոլոր երկրների բանվորների դասակարգային միասնության և ինտերնացիոնալ համախմբման համար։

Բանվոր դասակարգի ազատագրական պայքարի անընկուն ղեկավարն ու ոգեշնչողը մարքսիստական-լենինյան պարտիան է՝ դասակարգի ավանգարդը, նրա ամենագիտակից, ամենակազմակերպված ու կոփված ջոկատը։ Առանց այդպիսի պարտիայի բանվոր դասակարգն ի վիճակի չէ գլուխ բերելու իր ազատագրության գործը և կառուցելու նոր հասարակություն։ Ձեռնարկի մեջ հանգամանորեն բացահայտված է մարքսիստական-լենինյան պարտիայի դերը և գլխովին մերկացված են պարտիայի դերի նսեմացման ռևիզիոնիստական բոլոր փորձերը։

Առանձնահատուկ արժեք ունի գրքի XX գլուխը, որը նվիրված է սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու տարբեր ձևերի լուսաբանմանը։ Ընդգծելով այդ հարցի մասին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հանճարեղ դրույթները, ընդհանրացնելով պարտիայի հետհոկտեմբերյան ժամանակաշրջանի պատմական հարուստ փորձը, հեղինակները կրկին անգամ ընդգծում են այն դրույթը, որ կապիտալիստական հասարակության դասակարգային անտագոնիզմի խորացումը անխուսափելի է դարձնում պրոլետարական ռևոլյուցիան։ Դրա հետ միաժամանակ շեշտվում է այն միտքը, որ դեպի պրոլետարական ռևոլյուցիա կարող են տանել ճնշված և դժգոհ մասսաների ամենաբազմազան շարժումները, եթե միայն բանվոր դասակարգի գիտակից ավանգարդը կարողանա այդ շարժումները փոխադրել ռևոլյուցիոն պայքարի ռելսերի վրա։ Բացահայտելով ժամանակակից դեմոկրատական շարժումների որոշ առանձնահատկությունները զարգացած կապիտալիստական երկրներում (նրանց հանդես գալը բուրժուազիայի ղեկավար շրջանների, իմպերիալիզմի, մոնոպոլիաների տիրապետության դեմ), հեղինակները նշում են, որ այդ շարժումների մեջ բոլոր դեմոկրատական և առաջադիմական ուժերի պայքարը մոնոպոլիաների դիկտատուրայի դեմ ավելի ու ավելի էական է դառնում. այն կարող է տարբեր ձևեր ընդունել՝ կախված այն բանից, թե որքան է սրվել ժողովրդին ու մոնոպոլիային անջատող անտագոնիզմը և ինչպիսին է ներքին ու միջազգային դրությունը։ «Չի բացառված,— նշված է ձեռնարկում,— որ որոշակի պայմաններում իմպերիալիստական բուրժուազիայի քաղաքականության դեմ ուղղված դեմոկրատական շարժումները կարող են վերածվել դեմոկրատական ռևոլյուցիաների:

Այդ ռևոլյուցիաները կլինեին հակամոնոպոլիստական, որքանով որ նպատակ կունենային տապալել խոշորագույն մոնոպոլիաների իշխանությունը։ Նրանց շարժիչ ուժերը կլինեին բանվոր դասակարգը, գյուղացիությունը, քաղաքային բնակչության միջին խավերը, դեմոկրատական մտավորականությունը։ Խոսքն, այլ բառերով ասած, կվերաբերեր դեմոկրատական ժողովրդական ռևոլյուցիային, ռևոլյուցիա, որի մեջ կմասնակցեին ժողովրդի ամենալայն խավերը» (էջ 509)։

Հեղինակներն այնուհետև ցույց են տալիս, թե ինչպես բուրժուա-դեմոկրատական կամ դեմոկրատական ռևոլյուցիան կարող է վերաճել պրոլետարական ռևոլյուցիայի և պարզաբանում են պրոլետարական ռևոլյուցիայի իրականացման այն ամենաբազմազան ձևերը, որ բացահայտել է Վ. Ի. Լենինը, և որոնք իրենց հետագա զարգացումն են գտել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և XXI համագումարներում ընկ. Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումներում ու համագումարների որոշումներում։ Դրա հետ միաժամանակ ձեռնարկում ցույց են տրված պրոլետարական ռևոլյուցիաների այն հիմնական օրինաչափությունները, որոնք պարտադիր են բոլոր երկրների համար, որոնք շրջանցել չի կարելի։ Ձեռնարկում հիմնավորապես մերկացված են արդի ռևիզիոնիստների՝ պրոլետարական ռևոլյուցիայի ընդհանուր օրինաչափությունները ժխտելու խղճուկ ճիգերը։

Ձեռնարկի այս բաժնում շարադրված հարցերը չափազանց կարևոր նշանակություն ունեն ո՛չ միայն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների խոր յուրացման, այլև կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների, բոլոր ժողովուրդների դեմոկրատական խավերի պայքարի համար։

կուլտուրան հավասարապես իրենց արտացոլումն են գտնում «Մեր նշանաբանն է Առաջ» թերթի էջերում։ Հանրահայտ է, թե զարգացման ինչպիսի բարդ ուղի անցավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ազգային անկախություն նվաճած այդ փոքր երկիրը։ Պրեզիդենտ Շամունի և նրա գործակիցների հանցավոր քաղաքականությունը 1958 թվականին երկիրը կանգնեցրեց փակուղու առաջ։ Այդ ժամանակ էր, որ Լիբանանի վրա կախվեց իմպերիալիստական տիրապետության ահավոր վտանգը։ Երկրի դեմոկրատական խավերը զգացին այդ վտանգը և համարձակորեն բարձրացրին ժողովրդական ապստամբության դրոշը։ Այդ օրերին էր, որ պրեզիդենտ Շամունը և արտաքին գործերի մինիստր Շարլ Մալիքը ամերիկյան զորքերին «հրավիրեցին» Լիբանան։ Այդ օրերին «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը համարձակորեն մերկացնում էր ռեակցիայի ջատագովներին։ Թերթը գրում էր, որ ամերիկյան իմպերիալիստների նպատակն է Լիբանանում հաստատել իրենց տիրապետությունը, կառուցել այնտեղ հրթիռային կայաններ ընդդեմ Սովետական Միության և Սովետական Հայաստանի, որ յուրաքանչյուր լիբանանահայ հայրենասերի սրբազան պարտականությունն է անխնա պայքար մղել այդ ռազմամոլ քաղաքականության դեմ։ 1958 թվականի մայիսին թերթը գրում էր, որ Լիբանանի կառավարող շրջանների այդ դավաճանական քայլը նշանակում է «երկրի դռները բանալ օտար գրավման ուժերու առաջ», որը կատարվում էր «իշխանավորներու աթոռները պահելու համար»։ Այժմ, երբ երկրում վերահաստատվել է խաղաղությունը, թերթը նույն հետևողականությամբ հանդես է գալիս հանուն Լիբանանի տնտեսական ու քաղաքական կյանքի դեմոկրատացման, պահանջում է, որպեսզի Լիբանանի կառավարությունը հեռու մնա ռազմական բլոկներին հարելու քաղաքականությունից, լայնորեն զարգացնի տնտեսական կապերը անխտիր բոլոր երկրների հետ։

«Այսօր, հերոսական իր ըմբոստութենեն տարի մը ետք,— գրում է թերթը 1959 թվականի մայիսի 10-ի համարում,— Լիբանանի ժողովուրդը ավելի քան երբեք վճռած է պաշտպանել և ընդարձակել իր այդ նվաճումները, ավելի ամրապնդել, անձեռնմխելի դարձնել իր ազգային գոյությունն ու անկախությունը, զորացնել իր եղբայրական գործակցությունը արաբական ազատ ժողովուրդներուն հետ, ինչպես նաև վառ պահել իր բարեկամական կապերը Լիբանանի բարեկամ բոլոր ժողովուրդներու հետ, առաջին հերթին արաբներու մեծ բարեկամ Սովետական Միության հետ»։

Բոլորին հայտնի է, որ Սովետական Միությունը, 1946 թվականից սկսած, երբ Անվտանգության խորհրդում քննարկվում էր Լիբանանին անկախություն տալու հարցը, միշտ հավատարիմ լենինյան արտաքին քաղաքականության իր սկզբունքներին, պաշտպանում է Լիբանանի և արաբական մյուս երկրների ազգային-ազատագրական պայքարը ընդդեմ իմպերիալիստական ամեն տեսակ ոտնձգությունների ու միջամտությունների։ Ինչպես գրում է թերթը, «լիբանանցի ժողովուրդը իր աչքի լույսին պես կգուրգուրա լիբանանո-սովետական բարեկամության վրա և ջանք չի խնայեր այդ ճշմարիտ բարեկամության ամրապնդման համար»։

Հետաքրքրությունների լայն շրջանակ ունեցող այնպիսի մի թերթ, ինչպիսին «Մեր նշանաբանն է Առաջ»-ն է, չի կարող սահմանափակվել սոսկ Լիբանանի ներքին կյանքի լուսաբանումով։ Թերթի էջերում ընթերցողը հարուստ նյութ կարող է գտնել այն բոլոր հրատապ հարցերի մասին, որոնք այժմ հուզում են արաբական աշխարհը։ Յուրաքանչյուր համարում «Արաբական աշխարհ» խորագրի տակ թերթը հրապարակում է իր սեփական թղթակցությունները, ինչպես նաև արտատպում է համաշխարհային առաջադիմական մամուլի կարևոր հոդվածները արաբական ժողովուրդների ազգային ազատագրական պայքարի ներկա վիճակի և հեռանկարների մասին։ Թերթի միջոցով Մերձավոր Արևելքի և մյուս գաղութների հայ ընթերցողները ծանոթանում են «Պրավդա», «Իզվեստիա» թերթերի, «Նովոյե վրեմյա» շաբաթաթերթի էջերում հրապարակվող հոդվածներին։

Իրաքում ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի առաջին օրերից սկսած «Մեր նշանաբանն է Առաջ» թերթն իր ջերմ, բարեկամական հոդվածներով ու ելույթներով քաջալերում է Իրաքի բոլոր դեմոկրատներին ներքին և արտաքին ռեակցիայի դեմ մղած նրանց պայքարում, հրապարակախոսական կրքոտությամբ ու համարձակությամբ խարանում ու մերկացնում է Իրաքի երիտասարդ ռեսպուբլիկայի բոլոր թշնամիներին։ 1959 թվականի հուլիսին, երբ Իրաքի ազատասեր ժողովուրդը տոնում էր պայքարով և արյամբ նվաճած իր ռեսպուբլիկայի առաջին տարեդարձը, թերթը գրել է. «Այսօր, հուլիս 14-ի հաղթանակեն տարի մը ետք, Իրաքյան դեմոկրատական հանրապետությունը կանգնած է բոլոր փոթորիկներուն դիմաց՝ ավելի հզոր և ավելի ամրակուռ քան երբեք։ Կասկածե վեր է, որ իմպերիալիստներն ու անոնց գործակատարները կդավեն և պիտի շարունակեն դավել Իրաքի դեմ։ Կասկածե վեր է, որ անոնք պիտի դիմեն ամեն միջոցի և հատկապես իրաքյան ազգային ուժերը պառակտելու դավադիր փորձին, զոր արդեն ի գործ կդնեն վերջին շրջանին։ Սակայն նույնքան բացահայտ է, որ Իրաքի ժողովուրդը ունի գիտակցությունը այդ վտանգին և անընդհատ կխտացնե իր շարքերը՝ ազգային միասնականության կարգախոսին տակ։ Նույնքան բացահայտ է, որ Իրաքի ժողովուրդին, բանակին և վարչապետ Աբդել Քերիմ Կասեմի ազգային կառավարության միասնական հզոր ճակատը ապահով գրավական մըն է, որ Իրաքյան հանրապետությունը պիտի միշտ առաջ ընթանա խաղաղության, դեմոկրատիայի և բարգավաճման ուղիին մեջ՝ հուլիս 14-ի փառապանծ դրոշին տակ»։

Ժամանակակից մարդկությանը հուզող գլխավոր հարցը դա խաղաղության հարցն է։ Համաշխարհային դեմոկրատական մամուլի համար չի կարող լինել ավելի ազնիվ ու պատվավոր գործ, քան անդուլ պայքարը հանուն բոլոր երկրների խաղաղասեր ուժերի գործողությունների միասնության, ընդդեմ «սառը պատերազմի» ջատագովների, ընդդեմ խաղաղության ու ժողովուրդների բարեկամության բացահայտ ու ծպտյալ թշնամիների։ Իր այդ կոչման բարձր գիտակցությամբ է, որ «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը լայնորեն լուսաբանում է խաղաղության պայքարի պրոբլեմները, սփյուռքահայ աշխատավորներին պարզաբանում է այն մեծ ճշմարտությունը, որ մարդկությանը սպառնացող բնաջինջ պատերազմը կարող է կանխվել, պատերազմը հասարակության կյանքից կարող է վերացվել, եթե բոլոր պետությունները ընդունեն խաղաղ գոյակցության սկզբունքը, ձեռնամուխ լինեն սպառազինությունների կրճատման ծրագրի իրականացմանը և միջազգային վիճելի հարցերը լուծեն միայն բանակցությունների միջոցով, խաղաղ ճանապարհով։ Այն օրերին, երբ Սովետական Միության Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը գտնվում էր ԱՄՆ-ում, երբ այդ պատմական ուղևորությունը իր վրա էր բևեռել ամբողջ համաշխարհային մամուլի ուշադրությունը, «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը, բացահայտելով խաղաղության ծարավի սփյուռքահայ աշխատավոր մասսաների մտքերն ու խոհերը, գրում էր.

«Աշխարհի բոլոր խաղաղատենչ մարդիկը, առանց ցեղային կամ գաղափարական խտրության, ի սրտե ողջունեցին վարչապետ Նիկիտա Խրուշչովի այցելությունը Միացյալ Նահանգներ, անոր մեջ տեսնելով մեծ նպաստ մը միջազգային լարվածության մեղմացման և համաշխարհային խաղաղության ամրապնդման։ Երկրագնդի բոլոր ժողովուրդները և առաջին հերթին նույն ինքն Ամերիկայի ժողովուրդը, Խրուշչով—Այզենհաուեր փոխ-այցելությունները նկատեցին մեծ քայլ մը դեպի վախճանը ցուրտ պատերազմին, որ տասնյակ տարիներե ի վեր մարդկությունը կպահե անդունդի եզրին։ Ու մարդկությունը, ամբողջ մարդկությունը, խոր գոհունակությամբ տեղեկացավ ընդհանուր ու լիակատար զինաթափության սովետական ծրագրին, զոր Ն. Խրուշչով ներկայացուց ՄԱԿ-ի ներկա նստաշրջանին՝ նոր հորիզոններ բանալով խաղաղատենչ բոլոր ժողովուրդներուն առջև»։

Նա, ով անկեղծորեն շահագրգռված է համաշխարհային խաղաղության հաղթանակով, չի կարող չուրախանալ Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական ճամբարի համաշխարհային պատմական հաղթանակներով, որոնք իսկական գրավականն են համաշխարհային խաղաղության։ Այդ է պատճառը, որ «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը, իր բազմահազար ընթերցողների հետ միասին ցնծությամբ դիմավորեց սովետական գիտության նվաճումները տիեզերքի նվաճման ուղղությամբ։ Ամբողջ սփյուռքը, եթե չհաշվենք դաշնակցության խմբակին, որը բարոյական ոչ մի իրավունք չունի սփյուռքի մաս կազմելու, սահման չճանաչող հպարտության զգացումով դիմավորեց այն լուրը, որ սովետական տիեզերական հրթիռը հասել է լուսին։

«Սովետական դրոշը կծածանի Լուսնին վրա, — գրել է թերթը իր 1959 թ. սեպտեմբերի 19-ի համարում,— ու յուրաքանչյուր մարդ, անպատմելի հույզերով և անսահման հիացումով անգամ մը ևս նայեցավ դեպի սովետներու մեծ երկիրը, որ միայն քառասնամյակի մը ընթացքին, երեկվան հետամնաց Ռուսաստանեն փոխակերպվեցավ մարդկության առաջապահ Սովետական մեծ Միության, դառնալով դրոշակակիրը մարդկային ստեղծագործ մտքին ու գիտության վիթխարի նվաճումներուն։ Ու բոլորին հետ ու բոլորին առաջ, սփյուռքահայ մարդը ևս հպարտությամբ նայեցավ դեպի Մոսկվա ու Երևան, գիտակցելով, որ սովետական այդ հաղթանակը հաղթանակն է նաև իր մայր հայրենիքին, որուն գիտնականները իրենց պատկառելի բաժինն ունին այս մեծ իրագործումին մեջ... Ու մինչ Սովետական դրոշը կծածանի լուսնին վրա, ՍՍՌՄ-ի վարչապետ Ն. Խրուշչովը բարձր կռնի խաղաղության դրոշը Միացյալ Նահանգներու մեջ»։

Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներում ապրում են մոտ կես միլիոն հայեր։ Յուրա-

թերթում գրում էր, որ իր կարծիքով «միջազգային կացությունը բոլորովին տարբեր պատկեր մը ներկայացուցած պիտի ըլլար 1959-ին, եթե «խորհրդային «դրախտավայրին» վարիչները համը առած ըլլային ամերիկյան հյուլեյական ռումբին 1945-ին»։ Ատոմային պատերազմ սանձազերծելու ջղագար կոչ է այս։ Սփյուռքահայ առաջադիմական մամուլը անարգանքի սյունին գամեց Ժ. Միսաքյանին և իր գործակիցներին։ «Մենք կամբաստանենք զանոնք,— գրում է «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը,— իբրև հայ ժողովրդին դեմ նոր արկածախնդրություններ ծրագրող հայրենադավ ոճրագործներ... Կ'ամբաստանենք զանոնք իբրև ամերիկյան իմպերիալիզմի վարձկան գործակալներ, որոնք կհանդիսանան թշնամիները նույն ամերիկյան իմպերիալիզմի դեմ մարտնչող արաբ ժողովուրդներուն և իրենց արկածախնդրական ծրագրներով կվտանգեն ապահովությունը սփյուռքի և հատկապես Արաբական Արևելքի հայ զանգվածներուն... Հայոց հնադարյան և վերածնված ժողովուրդը կնայի դարերուն՝ հավերժական մեր Արարատին պես։

Մեր Արարատին պես հավերժական է ու ամրանիստ Սովետական հարազատ մեր Հայաստանը։

Իսկ դաշնակ արկածախնդիր ղեկավարնե՞րը... Այո, հայոց նորագույն պատմության մեջ պիտի հիշվին անոնք ևս։ Պիտի հիշվին այնպես, ինչպես այսօր մենք կհիշենք... Վասակները հայրենադավ»։

Թերթում հրապարակվող հոդվածները, հաղորդագրությունները, տեսությունները լրացվում են ճոխ իլյուստրացիաներով և ներքին ու արտաքին ռեակցիայի դեմ ուղղված ծաղրանկարներով։ Այդ ծաղրանկարներից մեկը հրապարակվել է Իրաքում տեղի ունեցած ռևոլյուցիոն իրադարձությունների օրերին։ Ահա մի շիրմաքար։ Նրա վրա գրծված է «Աստ հանգչի Պաղտատի ուխտը։ Մեռած 1958 թ.»։ Շիրմաքարի մոտ կանգնած անձնավորությունը աղեկտուր լալիս է։ Ստորև կարդում ենք. «Ֆոստեր Դալլեսը՝ սգավոր»։

«Մեր նշանաբանն է Առաջ» թերթին նվիրված այս տեսության մեջ մենք կանգ առանք նրա գործունեության մի քանի կողմերի վրա։ Մեզ մնում է ասել, որ այն հրատարակում են, կամ իրենց ակտիվ աշխատակցությամբ թերթին օգնում են Լիբանանի հայ առաջադեմ շատ հրապարակախոսներ ու գրողներ, որոնց թվում՝ Հ. Մատեյանը, Գ. Ագդարյանը, Գեղամ Սևանը, Հ. Աղբաշյանը, Ա. Դարյանը, Հ. Լաչինյանը, Թ. Թորանյանը, Պ. Հակոբյանը։ Այդ նրանք են, որ իրենց ձեռքում ամուր են պահում հայ առաջադիմական մամուլի լավագույն ավանդությունների էստաֆետան։ 1957 թվականին թերթի խմբագիր Գ. Ագդարյանը այցելեց Սովետական Հայաստան։ «Ես միայն հայրենի հողի վրա զգացի երջանկություն բառի բուն նշանակությունը,— գրել է նա այդ օրերին։— Աշխարհի ամենաերջանիկ մարդկանցից մեկն եմ ես այժմ և ես իմ երիտասարդ եղբայրներին ու քույրերին սրտի խորքերից ասում եմ, որ միշտ կմնամ պատնեշի վրա, խաղաղության համար մղվող պայքարի առաջին գծում»։

Պատնեշի վրա է «Մեր նշանաբանն է Առաջ» թերթը և մենք ամբողջ սրտով հաջողություն ենք ցանկանում նրան այն խոր և անսասան հավատով, որ նա միշտ կմնա պատնեշի վրա»

Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Արտաշատի շրջանի Վ. Արտաշատ գյուղից Ց. Վարդանյանը, Ա. Հարությունյանը, Պ. Թամրազյանը խնդրել են խմբագրությանը՝ պատասխանել այն հարցին, թե ի՞նչ է նշանակում կապիտալ, արդյոք ՍՍՌՄ-ում գոյություն ունե՞ն կապիտալ կուտակումներ, թե՞ ոչ։

Ստորև պատասխանում ենք այդ հարցին

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿԱ՞ ԱՐԴՅՈՔ ԿԱՊԻՏԱԼ

Կապիտալը բուրժուական հասարակարգին հատուկ այն կարևորագույն տնտեսական կատեգորիան է, որն արտահայտում է վարձու բանվորների շահագործումը կապիտալիստների կողմից։ Կապիտալի ծագման պատմական նախադրյալները ապրանքային արտադրությունը և զարգացած ապրանքա-դրամական հարաբերություններն են։ Մինչև կապիտալիզմը գոյություն են ունեցել առևտրական ու վաշխառուական կապիտալ, սակայն կապիտալը որպես հասարակական արտադրական հարաբերություն ծագում և տիրապետող է դառնում ապրանքային արտադրության այն աստիճանի վրա, երբ աշխատուժը վերածվում ապրանքի, երբ միլիոնավոր արտադրողներ կապիտալիստական մրցման ու կեղեքման հետևանքով վերջնականապես զրկվում են արտադրամիջոցներից և իրենց գոյությունը պահպանելու համար, լոկ իրավականորեն «ազատ» այդ մարդիկ հարկադրված իրենց աշխատուժը վաճառում են կապիտալիստներին։ Մարքսի մեծագույն ծառայությունն էլ հենց այն էր, որ նա բացահայտեց կապիտալիստական հասարակության ծագման, զարգացման ու խորտակման օրենքները՝ նշելով, որ կապիտալի կողմից կյանքի կոչված պրոլետարական դասակարգը կապիտալի վրա հենվող հասարակության գերեզմանափորն է։

Մարքսը կապիտալ էր համարում այն արժեքը, որը հավելյալ արժեք է արտադրում բանվորի գործադրած հավելյալ աշխատաժամանակի հաշվին։

Քաղաքատնտեսության մեջ Մարքսի խոշոր ծառայություններից մեկն այն է, որ նա կարողացավ գիտականորեն բացահայտել կապիտալի էությունը, ցույց տալով, որ բուրժուական հասարակարգում մարդկանց միջև եղած հարաբերությունները մթագնած են և արտաքնապես հանդես են գալիս որպես իրերի միջև եղած հարաբերություններ. ուստի թվում է, թե ամեն մի իր ինքնըստինքյան կապիտալ է։

Մարքսը, քննադատելով բուրժուական տընտեսագետների այդ հակագիտական տեսակետը, ցույց տվեց, որ «Կապիտալը բնավ իր չէ, այլ հասարակության մի որոշ պատմական ֆորմացիայի պատկանող հասարական արտադրական որոշակի հարաբերություն է, որ ներկայացված է իրի մեջ և այդ իրին սպեցիֆիկ հասարակական բնույթ է տալիս» (Կապիտալ, հատ. III, մաս II, էջ 354)։

Այս ասածներից հետևում է, որ բոլոր հասարակարգերի արտադրողական ուժերի բաղկացուցիչ մասը կազմող արտադրության միջոցները կապիտալ են դառնում միայն այն ժամանակ, երբ դրանց միջոցով հասարակության փոքրամասնությունը կազմող մի խումբ մարդիկ շահագործում են միլիոնավոր ընչազուրկ, վարձու բանվորների։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո արտադրության միջոցների սոցիալիստական ազգայնացման և մանր արտադրողների աստիճանական կոոպերացման ճանապարհով լիկվիդացվեց արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը

և ստեղծվեցին հասարակական-սոցիալիստական սեփականության երկու ձև՝ պետական-համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականություն։ Վերոհիշյալ ռևոլյուցիոն վերափոխումների հետևանքով վերացվեցին կապիտալիստական շահագործական հարաբերությունները և առաջ եկան նոր, շահագործումից ազատ, փոխադարձ օգնության և ընկերական համագործակցության, սոցիալիստական արտադրա-հարաբերություններ։ Մեր էկոնոմիկայում դադարեցին գործել կապիտալիզմին հատուկ տնտեսական օրենքներն ու մի շարք կատեգորիաներ, այդ թվում կապիտալը, աշխատուժ ապրանքը, հավելյալ արժեքը և այլն։

Սակայն սոցիալիստական տնտեսության ներկա էտապում դեռ մեզ մոտ պահպանվել են մի շարք տնտեսական կատեգորիաներ, որոնք գործում են նաև կապիտալիզմի ժամանակ։ Այդ տնտեսական կատեգորիաներից են՝ փողը, արժեքը, ռենտան, շահույթը, տոկոսը և այլն։ Վերոհիշյալ տնտեսական կատեգորիաները կապիտալիզմի պայմաններում արտահայտում են մարդու կողմից մարդու շահագործման հարաբերություններ։ Արդյոք դա նշանակո՞ւմ է, թե դրանք նույն բովանդակությամբ գործում են նաև մեր էկոնոմիկայում. իհարկե, ոչ։

Կապիտալիստական հասարակարգում ռենտան, շահույթը, տոկոսը բուրժուազիայի հիմնական շերտերի՝ հողասեփականատերերի, ձեռնարկատերերի և բանկիրների եկամուտների տեսակներն են, որոնց աղբյուրը հավելյալ արժեքն է, իսկ վերջինս առաջանում է միլիոնավոր աշխատավորների շահագործման միջոցով։ Մինչդեռ սոցիալիզմի ժամանակ ռենտան, շահույթը և տոկոսը մարդու կողմից մարդու շահագործման հարաբերություններ չեն արտահայտում։ Մեզ մոտ ռենտան ստեղծվում է շահագործումից ազատ մարդկանց կոլեկտիվ աշխատանքի միջոցով, նա հողի վարձակալության վճարի ձև չի ընդունում և նրանից բաժին են ստանում կոլտնտեսությունները, կոլտնտեսականները և սոցիալիստական պետությունը։

Սոցիալիստական ձեռնարկությունների մաքուր եկամուտը մեզ մոտ հանդես է գալիս շահույթի ձևով, որն իր էությունը ամբողջովին փոխել է և մարդու կողմից մարդու շահագործման հարաբերություններ չի արտահայտում։ Եթե կապիտալիզմի ժամանակ շահույթը յուրացնում է բուրժուազիան, որից աշխատավորությունը ոչ մի բաժին չունի, ապա մեզ մոտ այդ շահույթի հաշվին ընդլայնվում է արտադրությունը, ստեղծվում են հասարակական զանազան ֆոնդեր, որոնք ծառայում են աշխատավորների բարեկեցության ու կուլտուրայի բարձրացման նպատակին։ Սրանից հետևում է, որ չնայած մեզ մոտ շահույթ տերմինը գործածվում է, բայց իր էությամբ այն ոչ մի կերպ չի կարելի համեմատել կապիտալիստական շահույթի հետ։

Մեր մամուլում լայն կիրառում են գտել կապիտալ շինարարություն, վերանորոգում, ներդրում հասկացությունները։

Սրանից ոմանք այն թյուր կարծիքին են, որ մեզ մոտ, իբր թե գոյություն ունի կապիտալ։ Կապիտալ տերմինը այստեղ օգտագործվում է փոխաբերական իմաստով, իբրև նոր հասկացություն։ Այժմ պարզենք, թե որն է կապիտալ շինարարություն, կապիտալ վերանորոգում, կապիտալ ներդրում հասկացությունների էությունը։ Կապիտալ շինարարությունն իր մեջ ընդգրկում է գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրակայանների, երկաթուղային գծերի, ջրանցքների, հանքերի, կամուրջների, բնակելի տների, հիվանդանոցների, դպրոցների և այլ արտադրական ու ոչ-արտադրական օբյեկտների կառուցումն ու վերակառուցումը։ Դրա հետ միասին կապիտալ շինարարության ծախսերը իրենց մեջ ընդգրկում են նաև տեխնոլոգիական, էներգետիկ, բեռնման և տրանսպորտային սարքավորումների արժեքը։

Այն դրամական միջոցները, որոնք հատկացվում են կապիտալ շինարարության համար, կոչվում են կապիտալ ներդրումներ։

Մեզ մոտ, գրականության մեջ, երբեմն գործածվում է՝ «մարդը ամենաթանկարժեք կապիտալն է» միտքը։ Այստեղ մարդու նկատմամբ կապիտալ բառը օգտագործվում է փոխաբերական իմաստով, ցույց տալով, որ սոցիալիստական հասարակարգում, ի տարբերություն կապիտալիզմի, ամենից բարձր, ամեն մի հարստությունից ու նյութական բարիքներից վեր՝ մարդն է կանգնած, որի աշխատանքով են ստեղծվում բոլոր տեսակի նյութական բարիքները։

Վերոհիշյալից պետք է եզրակացնել, որ յուրաքանչյուր տնտեսական կատեգորիայի, տերմինի, հասկացության էությունն անմիջապես չի կարելի բնութագրել ըստ նրա արտաքին դրսևորման ձևի, այլ անհրաժեշտ է թափանցել դրանց բովանդակության մեջ, բացահայտել դրանց բնույթը և պարզել, թե դրանք ի՛նչ կոնկրետ պայմաններում են հանդես եկել և հասարակական-արտադրական ինչպիսի՛ հարաբերություններ են արտահայտում։

Վ. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՐՈՆԻԿԱ

## ՀԵՐԹԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐ

Հունվարի 29—30-ը Երևանում, ՀԿՊ Կենտկոմի Գիտության, կուլտուրայի և ուսումնական հաստատությունների բաժինը հրավիրեց ռեսպուբլիկայի բուհերի հասարակական գիտությունների ամբիոնների դասախոսների հերթական սեմինարը։ Սեմինարին մասնակցեցին նաև Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Տնտեսագիտական ինստիտուտի, փիլիսոփայության սեկտորի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի գիտական աշխատողները։

Սեմինարի պլենար նիստի օրակարգն էր. 1. «ՍՄԿՊ պատմության նոր դասագրքի մասին» (զեկուցող՝ ձեռնարկի հեղինակային կոլեկտիվի անդամ, պատմական գիտությունների դոկտոր Ա. Պ. Կուչկին)։ 2. «Մարքսիստական փիլիսոփայության հիմունքներ ուսումնական ձեռնարկի մասին» (զեկուցող՝ ձեռնարկի հեղինակային կոլեկտիվի անդամ, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, պրոֆեսոր Մ. Ա. Դիննիկ)։

Սեկցիոն նիստ, նվիրված ռեսպուբլիկայի բուհերում հասարակագիտական առարկաների դասավանդման փորձին։ 1. «ՍՄԿՊ պատմության դասավանդման մասին» (զեկուցող՝ Հայկական Գյուղատնտեսական ինստիտուտի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնի վարիչ, դոցենտ Ս. Պետրոսյան)։ 2. «Քաղաքատնտեսության առարկայի դասավանդման մի քանի հարցերի շուրջը» (զեկուցող՝ Հայկական Մանկավարժական ինստիտուտի դասախոս, դոցենտ՝ Մ. Եգանյան)։ 3. «Գիտական սոցիալիզմի, էսթետիկայի և էտիկայի դասավանդման մասին» (զեկուցող՝ Պետհամալսարանի դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի ամբիոնի վարիչ՝ պրոֆ. Հ. Գաբրիելյան)։ 4. «Հասարակական գիտությունների դասավանդման մի քանի հարցերի մասին» (զեկուցող՝ ՍՄԿՊ Կենտկոմի Գիտության և ուսումնական հաստատությունների բաժնի վարիչի տեղակալ պրոֆ. Դ. Մ. Կուկին)։

Ներածական խոսքով սեմինարը բացեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը։ Նա իր ելույթում սեմինարի մասնակիցների ուշադրությունը հրավիրեց «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի վերջին որոշման վրա, որտեղ ընդգծված է հասարակական գիտությունների ամբիոնների մեծ անելիքները կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում աշխատավորության կոմունիստական դաստիարակության, կոմունիստական աշխարհայացքի ձևավորման, երիտասարդությանը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, մարքս-լենինյան իդեոլոգիայով դաստիարակելու, ՍՄԿՊ արտաքին և ներքին քաղաքականության հարցերին տիրապետելու գործում։ Ընկ. Թովմասյանը ընդգծեց այդ որոշման այն միտքը, որ պարտիական պրոպագանդայի գլխավոր թերությունը մնում է կյանքից, կոմունիզմի կառուցման պարկտիկայից նրա դեռևս չհաղթահարված կտրվածությունը։

Թեև վերջին տարիներում նկատվում է որոշակի տեղաշարժ դեպի ժամանակակից թեմատիկան, այնուամենայնիվ այդ թերությունը մնում է նաև բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքներում։ Ընկ. Թովմասյանը նշեց ՍՄԿՊ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի Կոմունիստական Պարտիայի պատմության հարցերի գիտական մշակման կարևոր նշանակությունը։

Իր զեկուցման մեջ պրոֆ. Ա. Պ. Կուչկինը հանգամանորեն կանգ առավ ՍՄԿՊ պատմության նոր դասագրքի այն առանձնահատկությունների վրա, որոնցով այն տարբերվում է նախկին դասագրքերից։

Իր զեկուցման մեջ պրոֆեսոր Մ. Ա. Դիննիկը սեմինարի մասնակիցներին պատմեց «Մարքսիստական փիլիսոփայության հիմունքները» ուսումնական ձեռնարկի ստեղծման, նրանում կատարված փոփոխությունների մասին։ Հեղինակային կոլեկտիվը ձգտել է հաղթահարել որոշ հարցերի դոգմատիկ մեկնաբանումները։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1960 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցեր, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, արտասահմանյան կոմունիստական շարժման մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակի առթիվ տպագրում է հոդվածներ, հիշողություններ, ակնարկներ։*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Տարեկան — 30 ռուբլի

Կես տարին — 15 ռուբլի

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, ՆՏ կայաններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»